# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

## Նախիջեւան
## Naxijevan

Ervand Lalayan's studies on the district of Naxijevan, extracted from *Azgagrakan Hande's* XI (1904), pp. 240-336; XII (1904), pp. 109-174; XIII (1906), pp. 199-226; and XV (1907), pp. 133-163, in 243 pdf pages. Compiled and indexed by Robert Bedrosian, September, 2015.

---

### **XI** գիրք **(1904)**



---

### **XII** գիրք **(1904)**

Օրդուբադի կամ Վերին Ագուլիսի ոստիկանական շրջան և կամ Գողթն. Ազգագրական տեղեկութիւններ. Բնակարան. XII գիրք (1904), էջ 109-111

Զգեստ և զարդ. XII գիրք (1904), էջ 111-117

Լալայեան, Ե. Ընտանեկան բարք. Ամուսնութիւն և հարսանիքի սովորութիւններ. XII գիրք (1904), էջ 117-135

Տղաբերք և կնունք. XII գիրք (1904), էջ 135-142

Ընտանեկան կեանք. XII գիրք (1904), էջ 142-143

Թաղումն և մեռելոց. XII գիրք (1904), էջ 143-150

Նշանաւոր տօներ. XII գիրք (1904), էջ 150-154

Ձեռագիրներ. XII գիրք (1904), էջ 155-174

---

## **XIII** գիրք **(1906)**

Նախիջևանի ոստիկանական շրջան կամ Նախճաւան. XIII գիրք (1906), № 1, էջ 199-226

---

## **XV** գիրք **(1907)**

Նախիջեւանի ոստիկանական շրջան կամ Նախճաւան. XV գիրք (1907), Յունուար, էջ 133-163

---

# ՆԱԽԻՋԵՒԱՆԻ ԳԱՒԱՌ

## Ա. ՄԱՍՆ

# ԳՈՂԹՆ

ԿԱՄ

# ՕՐԴՈՒԲԱԴԻ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

---

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

*Ի նկատի առնելով, որ ներկայ տարում լրանում է հայկական տառերի գիւտի հազար հինգ հարիւրամեակը՝ ես շտապեցի նկարագրել այն գաւառակը, որ այդ հանճարեղ միտքն է ներշնչել սուրբ Մեսրոպին, ներկայացնել այն, այժմ շատերից մոռացուած, վայրը՝ Մարմանիսը՝ ուր անձանձրոյթ քարոզել եւ ուսուցել է հայ ազգի երախտաշատ Ուսուցիչը, նկարել այն փոքրիկ մենաստանը, ուր ազգի լուսաւորութեան համար աղօթել է լուսամիտ Քարոզիչը, որպէսզի գոնէ այսպիսով կարողանամ խնկարկել հայերիս ազգային Երախտաւորի սրբացած յիշատակը։*

---

## Ա Ղ Բ Ի Ւ Ր Ն Ե Ր

Ճանապարհորդութեանս միջոցին առաջնորդուել եմ յաւերժայիշատակ Հայր Ալիշանի «Սիսականով», իսկ աշխատութիւնս կազմելիս օգտուել եմ նաև հետևեալ անտիպ և տպուած երկերից.

Անտիպ.

1. *Զաքարիա Ագուլեցու օրագրութիւնը.* ԺԷ. դարում գրուած այս յիշատակարանը (տես եր. 272) այժմ տպագրում է պ. Ա. Քալանթար, որ հաճեց սրբագրութեան թերթերը տալ ինձ օգտուելու։

2. *Տէր Յակոբ Տէր Անդրէասեան քահանայի տետրը,* ուր կան պատմական և ազգագրական նիւթեր։ Արժանապատիւ քահանան Ներքին Ագուլիսումն է ապրել 75 ձիգ տարիների ընթացքում և նոյն տեղումն էլ վախճանուել է ութսունական թուին։ Կատարելով միաժամանակ թէ քահանայի, թէ ուսուցչի և թէ տեղական բժշկի պաշտօն, արժանայիշատակ Տէր Յակոբը շարունակ շփուել է իւր և միւս մօտիկ գիւղերի բնակիչների հետ և շատ բան ծերունիներից լսելով՝ զանազան ժամանակներում գրի է առել։ Այս աշխատութեան մի օրինակը ինձ տուեց նրա թոռ՝ Պ. Լևոն Սարգսեանը, և մի ուրիշը՝ որդին՝ Պ. Մխիթար Տէր Անդրէասեանը։

Այս միևնոյն անձնաւորութիւնն է, որ հաղորդել է Ս. Սարգըսեանին նրա «Զօկերի լեզուն» աշխատութեան երկրորդ մասում զետեղուած նիւթերի մեծագոյն մասը [1])։

3. *Պ. Սարգիս Հախնազարեանի տետրը,* ուր կայ Վ. Ագուլիսի, նամանաւանդ սրա տնտեսական դրութեան մասին բաւականաչափ տեղեկութիւններ։ Պ. Հախնազարեան (որի մասին տես եր. 283). իւր մտաւոր կրթութեամբ և կատարած հասարակական դերով միանգամայն ձեռնհաս է եղել ճիշտ տեղեկութիւններ հաւաքելու։ Պարոնը յօժարութեամբ տուեց ինձ իւր այդ աշխատութիւնն օգտուելու։

4. *Յակոբ Անապչեանի տետրը:* Այս յարգելի ծերունին նա մի բարեկամի ուղղած նամակների ձևով համեմատել է Ներքին Ագուլիսի անցեալ և ներկայ կեանքը։ Այս աշխատութեան մէջ զուտ ազգագրական տեղեկութիւններ, փաստեր քիչ լինելու պատճառով՝ շատ նիւթ չկարողացայ քաղել։

---

[1]) Սարգսեան. Զօկերի լեզուն, Բ. մաս II.

*Խորին շնորհակալութիւնս եմ յայտնում վերոյիշեալ բոլոր անձերին։*

*Տպագրուած.*

*Առաքել Դավրիժեցի—Պատմութիւն.*

*Ջամչեան· Պատմութիւն Հայոց.*

*Ինճիճեան, Հնախօսութիւն և Ստորագրութիւն հին Հայաստանեայց.*

*Շահխաթունեանց, Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ.*

*Ս. Սարգսեան, Ագուլեցոց բարբառը, Մոսկուա, 1883 թ.*

Статистическое описаніе Нахичеванской провинціи, напечатанное съ Высочайшимъ соизволеніемь. Спб. *1833.*

Взглядъ на Армянскую область. Изъ путевыхъ записокъ Н. Нефедьева. Спб. *1839.*

Dubois de Montpéreux, Voyage autour du Caucase, Paris *1839—1843.* t. IV.

Геологическое описаніе части Нахичеванскаго уѣзда Эриванской губ. изслѣдованной въ *1868* г. командированными съ разрѣшенія Намѣстника Кавказскаго, Горными Инженерами княземъ Цулукидзе, Халатовымь и Архиповымъ.

Историческій памятникъ состоянія Армянской области въ эпоху ея присоединенія къ Россійской имперіи Шопена, Спб. *1852.*

Ордубадъ въ промышленномъ отношеніи Черноярскаго (Кавк. Календарь *1868* г).

Изслѣдованіе о діалектахъ Армянскаго языка, К. Патканова Спб. *1869.*

Три магала, Нахичеванскій, Ордубадскій и Даралагезскій Зелинскаго. (Сборникъ свѣдѣній о Кавказѣ т. VII. *1880* г).

Нахичевань и Нахичеванскій уѣздъ Никитина (Сборн. матеріаловъ для описанія мѣстностей и племенъ Кавказа, вып. П *1882* г).

Экономическій бытъ государственныхъ крестьянъ въ Ордубадскомъ участкѣ, Нахичеванскаго уѣзда, П. Н. Ягодынскаго, въ I томѣ Матеріалахъ для изученія экономическаго быта государственныхъ крестьянъ Закавказскаго края. Тифлисъ *1885* г.

Chantre, A travers de l'Arménie russe. Paris *1893.*

Каникулярная поѣздка по Эриванской губерніи и Карс-

ской области В. Дѣвицкаго (Сборн. Мат. для описанія мѣстностей и племенъ Кавказа. вып. XXI.

Аракcская равнина (въ предѣлахъ Эриванской губерніи) Коммерческое обслѣдованіе Р. И. Даниловича· Тифлисъ *1897*.

Памятная книжка Эриванской губерніи на *1902* и *1904* гг. изданія Эриванскаго губернскаго статистическаго комитета. Эривань. *1902* и *1904* г.

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*Նախիջևանի գաւառը կազմում է Երևանեան նահանգի արևելահարաւային մասը և տարածւում է* 38° 48′—39° 45′ *հիւսիսային լայնութեան և* 62° 44′—63° 55′ *արևելեան երկարութեան միջև. Նրա սահմաններն են՝ հիւսիսից՝ Դարալագեազի լեռները, որ բաժանում են նրան Շարուր-Դարալագեազի գաւառից, արևելքից՝ Ղարաբաղի լեռները, որ բաժանում են նրան Զանգեզուրի գաւառից, հարաւից և հարաւ-արևմուտքից՝ Արաքս գետը, որ կազմում է Պարսկաստանի սահմանագիծը, և հիւսիս-արևմուտքից՝ Շարուրի հարթութեան հարաւային մասը։*

*Ամբողջ գաւառը բռնում է* 4036 *քառ. վերստ կամ* 423780 *դեսիատին տարածութիւն* [1]), *այնպէս որ սոյն, Երևանեան նահանգի վեց գաւառների մէջ իւր ընդարձակութեամբ երրորդ տեղն է բռնում. (ա. Նոր-Բայազէտի գաւառն է՝* 5145 *ք. վ., երկրորդը՝ Աղէքսանդրապոլինը՝* 4120 *քառ. վերստ)։*

*Գաւառը բաժանուած է չորս ոստիկանական շրջանների՝ ա. Ալիաբադի, բ. Ջաղրու, գ. Աբրակունիսի և դ. Օրդուբադի կամ Վերին Ագուլիսի։ Այս վերջինը կազմում է մեր այժմեան հետազօտութեան վայրը։*

---

[1]) Памятная книжка Эриванской губ. 1902 г.

# ՕՐԴՈՒԲԱԴԻ ԿԱՄ ՎԵՐԻՆ-ԱԳՈՒԼԻՍԻ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

### ԵՒ ԿԱՄ

# Գ Ո Ղ Թ Ն

---

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ

---

### ԲՆԱԳՐՈՒԹԻՒՆ



*յս, Օրդուբադի կամ Վերին Ագուլիսի ոստիկանական շրջանը բռնում է նախկին Գողթն գաւառը և իր տարածութեամբ՝* 1450 *ք. վերստ կամ* 152250 *դեսեատին՝ շատ աւելի մեծ է քան նոյն գաւառի միւս ոստիկանական շրջանները* [1].

*Երկիրը եռանկիւնաձև է, որի մի եզրը, հարաւից քերում է Արաքս գետը, որ Ռուսաստանի և Պարսկաստանի միջև սահմանագիծ է կազմում, երկրորդ եզրը՝ արևմուտքից, բռնում է Դարալագեազի լեռնաշղթայի Դար-դաղ կոչուած ճիւղով, որ բաժանում է այս շրջանը նոյն գաւառի միացած մասից, իսկ երրորդ եզրի վրայ,*

---

[1]) *Ալիաբադի շրջանը՝* **967** *քառ. վերստ*
*Ջաղրու.* » **969** » »
*Ապրակունիսի* » **859** » »

*արեւելքից, բարձրանում են նոյն լեռնաշղթայի Դար-դաղ և Սոյուգ-դաղ ճիւղերը, որ բաժանում են Նախիջեւանի գաւառը Գանձակի նահանգի Զանգեզուրի գաւառից։*

*Այս շրջանի մակերեւոյթը բաւական թեքուած է հիւսիս-արեւելքից դէպի հարաւ՝ Արաքս գետը, սակայն շրջանի արեւմտեան մասի թեքութիւնը շատ աւելի քիչ է քան արեւելեանը։ Թեքութեան չափը կարելի է իմանալ մակերեւոյթի բարձր և ցածր կէտերի ամենամեծ տարածութեան հետ ունեցած յարաբերութեամբ։ Այսպէս՝ ըստ Աբիխի, Դարալագեազի լեռնաշղթայի միջին բարձրութիւնը հասնում է* 10,000 *ֆ. ծովի մակերեւոյթից, Արաքսի հովտի ցածր մասը ունի* 2500 *ֆուտ բարձրութիւն, իսկ այս երկու բարձրութիւնների միջի ամենամեծ տարածութիւնը ձգւում է* 40 *վերստ, հետեւապէս և միջին թեքութիւնը հաւասար է* 187 *ֆուտի իւրաքանչիւր վերստի վրայ։*

*Շրջանի ամբողջ մակերեւոյթը կտրտուած է լեռների ճիւղերով, որոնք գրեթէ ձգւում են միմեանց զուգահեռական։ Այս ճիւղերի մէջ տարածւում են նեղ և երբեմն բաւական խոր հովիտներ։ Արեւելեան կողմում այս հովիտներն այնքան նեղ են և թեք, որ կրճի են նմանւում* [1]։

*Երկրաբանների կարծիքով այս շրջանը ևս, որպէս Արաքսի հովտի մի մաս, ջրի տակ ծածկուած է եղել, որովհետև մի ժամանակ Արաքսի երկարութեամբ տարածուած է եղել լճերի մի ամբողջ շարք։ Եւ դէպի գետի ընթացքը ուղղահայեաց ձգուող ճիւղերը մի ժամանակ կազմել են հսկայական ամբարտակներ այս լճերի միջև, և սրանց միջով ջուրը մի լճից միւսն է լցուել։ Այս ամբարտակները, որոնց գագաթներին դեռ մինչև այսօր էլ կան խորշեր, հետզհետէ քանդուելով՝ լճերի մակերեւոյթը ցածրացել է և նրանք կամաց կամաց դարձել են մի երկար գետ, որ յետոյ աստիճանաբար փորել է իւր այժմեան նեղ հունը։ Վերջապէս Օրդուբադից ցած, ուր երբեմն Դարուայ*

---

[1] Экономическій бытъ государственныхъ крестьянъ въ Ордубадскомъ участкѣ Ягодынскаго.

և Քեամքիւհ լեռները միացած են եղել, երկրաշարժի ազդեցութեամբ պատառուել են, և ջուրն սկսել է ուժգնակի հոսել դէպի իւր և Կուրի ընդհանուր գետաբերանը, որ նոյնպէս երբեմն եղել է Կասպից ծովի յատակը [1]. Այս պատառուած անցքը, որ յայտնի է Քարաւազք Արաքսի անունով, և որի միջով ձգւում է Օրդուբադից Մեղրի տանող ճանապարհը, վերին աստիճանի գեղարուեստական տեսք ունի.

Արաքսի հովիտը մի ժամանակ ջրի տակ ծածկուած լինելուն մի ապացոյց ևս կարող են ծառայել այն յիսունի չափ ժժմակները, որ ես գտայ իմ ճանապարհորդութեան միջոցին այս հովտում. Սրանց մեծ մասը Stringocephalus Burtini Defr. տեսակից են պալէօզեան խմբի դեւոնեան սիստեմի.

Մեր ուսումնասիրութեան շրջանը հարթաքանական (геогностическій) կազմութեամբ բաղկացած է կաւոտ և աւազոտ մարնայից (мергелій), կրաքարի համախմբումների (конгломератъ) շերտերից, որոնց վրայ երբեմն կուտակուած են խճաքարեր. Շատ տեղերում այս շերտերը կաւճային կազմութիւն ունենալով հրաբխային զանգուածների ազդեցութեամբ փոփոխութեան են ենթարկւում.

Գետերը.—Գետերը մեծ մասամբ իջնում են Ալանգեազի լեռնաշղթայի լանջերից և հոսելով դէպի հարաւ՝ թափւում են Արաքսի մէջ. Սրանք բոլորն էլ սաստիկ արագընթաց են և աղմկարար. Այս շրջանում ընդամէնը եօթը հեղեղատ կան, որոնցից միայն չորսը կարելի է գետակ կոչել. Սրանցից.

Գիլան-չայը գտնւում է շրջանի արևմտեան մասում և ամենաերկար գետակն է. սա յառաջանում է Սաղկարսուի և Այրի-չայի միախառնմամբ Թիլլաք գիւղի մօտ, ընդունում է իւր մէջ Բատաչայը, Տեխ-չայը և Բիլև-չայը, անցնում է 19 գիւղերի մօտով, ոռոգելով 889 հացահա-

---

[1] Матеріалы для воен. обоз. Эрив. губ. Ив. Озаревскаго.

տեկի, 43 բրնձի, 132 բամբակի արտեր, 280 այգի և պարտէզ, 97 արւոյտի և 133 այլ մշակելի տեղեր։

*Ցղնայի, կամ Ջանանաքի, կամ Ուրմիս, կամ Ռաստոփի եւ կամ Դիւզգոմ-չայ.*—այս չորս անունն էլ կրում է անցնելով այդ գիւղերի մօտով։ Սկիզբն է առնում Եաղլուդարա լերան մէջտեղից, անցնում է վեց գիւղերի մօտով և ոռոգում 382 հացահատիկների, 8 բամբակի, 14 արւոյտի արտերը և 108 այգիներ ու պարտէզներ։

*Վանանդ-չայ*, սկիզբն է առնում Փաղմարի լեռից, անցնում է 15 գիւղի մօտով և ոռոգում է 660 հացահատիկների, 147 բամբակի, 94 արւոյտի արտեր և 280 այգի ու պարտէզ։

*Ագուլիսի-չայ*, սկիզբն է առնում Նիգիդէհ գիւղի մօտ միախառնուող երեք առուակներից, որ բղխում են Խօշլուճաղից, անցնում է 6 գիւղի մօտով, և ոռոգում 25 հացահատիկների արտ, 231 այգի ու պարտէզ։

*Օրդուբադու-չայ*, սկիզբն է առնում Սոխուզ-դաղից և անցնելով Օրդուբադ քաղաքի և 3 գիւղերի մէջով, ոռոգում է 294 հացահատիկների, 12 բրնձի, 254 արւոյտի արտեր և 704 այգիներ ու պարտէզներ։

Միւսները աննշան վտակներ են, որ կը յիշենք գիւղերը նկարագրելիս։

Այս գետակների ու վտակների ջրի քանակութիւնը տարուայ զանազան ժամանակներում սաստիկ տարբերւում է. այս կախուած է ինչպէս լեռների ձիւների հալուելուց, նոյնպէս և անձրևներից։ Անձրևային եղանակը սովորաբար վերջանում է մայիսին և հէնց այս ժամանակից գետակների ջուրը սկսում է արագութեամբ պակասել, մի քանի վտակներ, ինչպէս Կարճուանը, յուլիսին կամ օգոստոսին բոլորովին չորանում են։ Աշնան, երբ սկսւում են անձրևները, գետակները կրկին բարձրանում են։ Սակայն երբեմն էլ ամառը, երբ սարերում սաստիկ անձրևներ են տեղում, գետակները բարձրանում են և հեղեղում շրջակայքը, փոսեր են բաց անում և տանում մեծ քանակու-

թեամբ ցեխ՝ քարերի, ծառերի և այլ պատահած իրերի հետ, եւ այսպիսով ահագին վնասներ պատճառում բընակիչներին։ Ամենից աւելի սարսափելի է եղել 1884 թ. մայիսի 21-ի հեղեղը, Ագուլիսի հովտում, որ մօտ 50 հոգի զոհ է տարել և 500,000 րուբլու վնաս պատճառել։

Օրդուբադի ոստիկանական շրջանի հողը շատ զանազանակերպ է. մի քանի տեղերում աւազոտ է, խիճ և մեծ քարեր խառնուած, միւսներում կաւային, փոքր ինչ աւազախառն, մի քանի տեղ էլ պատահում են տղմախառն և աղախառն հողեր։ Լեռների հողերն աւելի բազմազան են։ Շատ տեղեր, թէև հողը միանգամայն համապատասխանում է երկրագործութեան պահանջներին, սակայն և այնպէս՝ գրեթէ ամբողջ տարին զուրկ են մնում բուսականութիւնից, որովհետև հնարաւորութիւն չկայ ոռոգելու։

Բարձր լեռների վրայ, ուր գիւղացիները քշում են իրենց տաւարներն արածելու, բուսականութիւնը չափազանց միակերպ է։ Այստեղ աճում են միայն կաղանչան (молочай), զուխրակ (душица), վայրի սոխ, և ձիագի (хвощъ), խոտանման (злаковыя) և բակլայի բոյսեր բոլորովին չեն հանդիպում։ Ծառերը շատ քիչ, այն էլ միայն սարերի գագաթներին են պատահում։ Այստեղ աճում են ծառանման ցրանի (можевельникъ, juniperus), լաստենի (ольха), կենի (тисъ), և կեչի (береза, betulus), և ուրիշներ [1])։

Բոլորովին ուրիշ տեսք ունին ջրարբի տեղերը։ Սրանք բռնում են հովիտների ցած մասերը, գետակների ափերը, և մանաւանդ Արաքսի հովիտը։ Սրանք մի մի սքանչելի օազիսներ են ներկայացնում իրենց հարուստ բուսականութեամբ և միայն սրանց պատճառով է որ Գողթնին տուել են «գեղեցիկ» և «գինեւէտ» մակդիրները։

Կլիման.—Օրդուբադի ոստիկանական շրջանը բոլոր կողմերից լեռներով շրջապատուած լինելով՝ բաւական մեղմ և միապաղաղ կլիմայ ունի։ Այստեղ եղանակները կանո-

[1]) Ягодынскій. յ. գ. եր. 608.

նաւոր կերպով յաջողւում են միմեանց և ձմրան այնքան զգալի կերպով չի յաջողւում ամառը, որ հարկաւոր լինի պաշտպանել խաղողի վազերը՝ ծածկելով հողով, ինչպէս այդ անում են Արարատեան դաշտում։

Այս ոստիկանական ամբողջ շրջանում միայն մի տեղ, Օրդուբադում, կայ օդերեւութաբանական կայարան, սակայն այստեղ էլ միայն նստուածքներն են չափւում, իսկ օդի բարեխառնութիւնը՝ ոչ։ Ուստի եւ ստիպուած ենք բաւականանալ միայն հետեւեալ երկու աղիւսակներով, որոնք ցոյց են տալիս մթնոլորտային նստուածքների քանակութիւնը եւ այն օրերի թիւը, երբ տեղի են ունեցել այդ նստուածքները։ Տարեկան միջին բարեխառնութիւնը, դատելով Կովկասի օդերեւութաբանական քարտէզով, հասնում է + 12,2 Ց.)։

*Մթնոլորտային նստուածքների քանակութիւնը*
(Միլիմետր)

| Թուին | Յունուար | Փետրուար | Մարտ | Ապրիլ | Մայիս | Յունիս | Յուլիս | Օգոստոս | Սեպտեմբ. | Հոկտեմբեր | Նոյեմբեր | Դեկտեմբ. | Տարեկան |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1899 | 15 | 21 | 23 | 20 | 62 | 9 | 0 | 0 | 10 | 16 | 55 | 16 | 247 |
| 1900 | 7 | 8 | 34 | 12 | 55 | 25 | 24 | 21 | 1 | 9 | 27 | 10 | 232 |
| 1901 | 17 | — | — | — | 59 | 52 | 0 | 0 | 52 | 30 | 50 | 3 | — |
| 1902 | 17 | 8 | 47 | 71 | 59 | 9 | 7 | 5 | 0 | 43 | 58 | 0 | 325 |
| 1903 | — | 35 | 15 | — | — | — | 5 | — | 10 | 7 | 12 | 31 | — |
| Միջ. | 14. | 18. | 30. | 34. | 59. | 24. | 7. | 6,15 | 14,16 | 21. | 40,4 | 12. | 268. |

Հանքեր. Թէև այս շրջանում ոչ մի հանք չի մշակւում, սակայն մի քանի տեղեր, ինչպէս Դռնիս կամ Տրօնիսի մօտ Ճալպաստ լեռներում նկատուած են հին հորեր և պղնձի ու արծաթի

Քանի՞ օր եղել են նստոյցք

| Թուին | Յուն. | | Փետ. | | Մարտ | | | Ապրիլ | | | Մայիս | | | Յունիս | | | Յուլիս | | | Օգոստ. | | | Սեպտ. | | | Հոկտ. | | | Նոյեմբ. | | | Դեկ. | | Տարեկան | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Նստոյցք | Ձիւն. | Նստոյցք | Ձիւն | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ | Նստոյցք | Ձիւն | Նստոյցք | Ձիւն | Կարկուտ |
| 1899 | 10 | 10 | 5 | 1 | 7 | 2 | 0 | 7 | 0 | 0 | 18 | 0 | 2 | 5 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 5 | 0 | 0 | 5 | 0 | 0 | 3 | 3 | 0 | 9 | 5 | 74 | 21 | 2 |
| 1900 | 7 | 6 | 7 | 5 | 11 | 5 | 0 | 6 | 0 | 0 | 17 | 0 | 0 | 8 | 0 | 2 | 7 | 0 | 0 | 3 | 0 | 0 | 1 | 0 | 0 | 4 | 0 | 0 | 5 | 2 | 0 | 3 | 0 | 79 | 18 | 2 |
| 1901 | 7 | 6 | — | — | — | — | — | — | — | — | 13 | 0 | 1 | 8 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 0 | 4 | 0 | 0 | 3 | 0 | 0 | 8 | 3 | 0 | 2 | 0 | — | — | — |
| 1902 | 2 | 2 | 4 | 2 | 6 | 3 | 0 | 12 | 1 | 0 | 6 | 0 | 0 | 2 | 0 | 0 | 2 | 0 | 0 | 3 | 0 | 0 | 1 | 0 | 0 | 7 | 0 | 0 | 9 | 1 | 0 | 0 | 0 | 54 | 9 | 0 |
| 1903 | — | — | 11 | 10 | 7 | 7 | 0 | — | 0 | 0 | — | 0 | 0 | — | 0 | 0 | 2 | 0 | 0 | — | 0 | 0 | 5 | 0 | 0 | 1 | 0 | 0 | 6 | 0 | 0 | 9 | 6 | — | — | — |
| Միջ. | 6,5 | 6. | 6,76 | 4,5 | 8. | 4,18 | 0. | 8,18 | 0,8 | 0. | 13,5 | 0. | 0,6 | 5,18 | 0. | 0,4 | 2,2 | 0. | 0. | 1,5 | 0. | 0. | 3,2 | 0. | 0. | 4. | 0. | 0. | 6,2 | 2. | 0. | 4,6 | 2,2 | 69. | 16 | 1,33 |

*հանք։ Փառակա գիւղի լեռներում նոյնպէս նկատելի է պղնձի և երկաթի հանքեր։ Փազմարա գիւղի մօտ, Վանանդ-գետի եզրերում նկատուած է գրաֆիտի, արծաթի, պղնձի և երկաթի հանքեր, ինչպէս և ապակու քար։ Այստեղ նկատուած է ապակի հալելու մի հինաւուրց հնոց։ Ունուս, Նուսնուս, Կարճևան գիւղերի մօտ և Մարվանիս գետի եզերքում էս նկատուած է պղնձի հանք։ Աղի հանք նկատուած է 1) Եայիջի և Դաստա գիւղերի միջև, Արաքսի ձախ ափի բարձրավանդակների մէջ և 2) Դերնիս-չայի (Արաքսի ձախ վտակ) ձախ կողմը, Խանագա և Ագրի (Ներքին Ագուլիսից 3 վ. հեռու) գիւղերի միջև բարձրացող լերան մէջ, և 3) Դերնիս գիւղի մօտ Դերնիս-չայի ուղղութեամբ, Ծարպաստ կոչուած տեղում։*

*Վանանդ-գետի ամենավերին մասում, Փիզմառու Թրքարնակ գիւղի մօտ կայ չուգունի հանք։ Մկնդեղի* (мышьяковыя) *հանքեր նկատուած են Օրդուբադի մօտ Մելիք Իբրահիմ կամ Սպիտակ լերան մէջ և Եայիջի գիւղում։*

*Գանձայի մօտ, Աւաժար լերան մէջ կայ երկաթփայլ* (желѣзный блескъ) *և գրաֆիտ։*

*Վերին Ագուլիսի մօտ պաղլեղ* (квасцы)*։ Բեհև-չայի աջ ափին, Մարվանիսից բարձր լերան ճիւղի մէջ կայ կրակի դիմացող կաւ։ Եայիջի մօտ ջրաղացաքար։*

*Հանքային ջրեր.—Փառակա գիւղից մօտ* $1\frac{1}{2}$ *վերստ հեռու, դէպի արևմուտք, Ս. Ստեփանոս վանքի անտառի մէջ կայ ծծմբային ջուր։ Նոյն գիւղից մօտ 10 վերստ հեռու, դէպի արևելք, Քուրքուրոտ ձորակում, Փառակայ-գետի ափին կայ երկաթաջուր, ինչպէս և Փիզմարլու գիւղից 1 վերստ հեռու և Բեհև գիւղում։*

---

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## Ա. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ

Մեր ուսումնասիրութեան վայրը հնումը կոչւում էր Գողթն [1], Գողթան [2] կամ Գողթանց [3] գաւառ, Գողթան տուն [4] և Գողթնաստան [5]։

Հռովմէացի աշխարհագիր Պտղոմէոսը (Բ. դ. Ք. յ.) նրան կոչում է Κολθηνη կամ Colten [6]. յայտնի չէ թէ այս անունը ինչից է ծագել։

Արաբացիների և Պարսիկների տիրապետութեան ժամանակ այս գաւառակը կոչւել է Ազատ Ճիրան, անշուշտ Ազատ Գիրան քաղաքի անունով, իսկ այժմ անւանւում է Օրդուբադի կամ Ագուլիսի ոստիկանական շրջան, համանուն քաղաքի և գլխաւոր աւանի անուններով։

Հնումը այս գաւառակը, ինչպէս երևում է Մովսէս Խորենացու աշխարհագրութիւնից, պատկանում էր Վասպուրական նահանգին, սակայն յետոյ, Ը. դարում, ինչպէս աւանդում է Թովմա Արծրունին, վերագրուել է Սիւնիքին, գուցէ այն պատճառով, որ նրա բնական դիրքը այդ էր պահանջում,—Արաքսը բնական սահման է կազ-

1) Մ. Խորենացի.
2) Ստեփ. Օրբէլեան գլ. ժե. Խոր. Բ. 7.
3) Առաքել Դաւրիժեցի.
4) Կորիւն. եր 24.
5) Թովմա Արծրունի.
6) Պտղոմէոս Ե. ժգ.

ւում Վասպուրականի և Սիւնիքի մէջ.—մէկ էլ, որպէս եկեղեցական վիճակ, նա ենթարկւում էր Սիւնեաց, Տաթևի եպիսկոպոսին [1])։ Մի երրորդ պատճառ էլ Ստեփաննոս Օրբելեանն է բերում, ասելով, թէ Գողթնի իշխանները Սիսական կամ Սիւնեաց ցեղից էին և իբր ժառանգութիւն էին ստացել այս գաւառը։

Գողթնին վերաբերեալ ամենահին տեղեկութիւնը, որ տալիս են մեր մատենագիրները, այն է, որ Քրիստոսից վեց դար առաջ, Տիգրան Երուանդեան թագաւորը Աժդահակի զարմից տասն հազարից աւելի գերիներ բնակեցրել է «Մեծ սարի արևելեան կողմում մինչև Գողթնի սահմանները, որոնց տուել է նաև Խրամ, Ջուղայ և Խոշակունիք քաղաքները [2])։ Բայց թէ սրանք Գողթնում էլ էին սփռւած, գուշակել է տալիս նոյն պատմչի, Խորենացու, այն խօսքերը, թէ Արտաշէսը տալիս է իւր ընպարապետ Սմբատին «զմասն արքունի, որ ի Գողթն [3])»։

Այս գաւառի նախապետներից և իշխաններից շատ քչերն են յիշւում պատմութեան մէջ, որովհետև սա առանձնացած էր և շատ քիչ հաղորդութիւն ունէր հայոց թագաւորների հետ, սակայն և այնպէս՝ Քրիստոսի Ա. դարու կիսին յիշւում են Շաբ կամ Շաբիթ և սրա կինը Նշնա, որդին՝ Խօսրով և թոռը՝ Վահան։ Սրանցից յետոյ Դ. դարի երրորդ քառորդում իբրև Գողթնի առաջին տէր յիշատակւում է մի ոմն Ատոմ [4]) իշխանը, որ ուրիշ իշխանների հետ ուղեկցում է Յուսիկին Կեսարիա՝ կաթուղիկոս ձեռնադրուելու։ Սրա ժամանակը Գողթնեաց տէրը Ներսիսեան գահնամակի մէջ 46-դ կարգումն է յիշատակւում, իսկ Ե. դարի սկզբում Սահակի գահնամակում աւելի բարձրացած՝ 15-րդը։ Իսկ արքունի բանակի Գողթնեաց զօրաբաժինը կազմուած է եղել 600 հոգուց։ Հինգերորդ

1) Ստեփ. Օրբել.
2) Մ. Խորեն. Ա. Գլ. Լ.
3) Մ. Խոր. Բ. ԾԳ. յիշ. Ալիշան. Սիսական. եր. 310.
4) Փաւ. Բիւզ. Գ. գլ. ժբ.

դարի վերջերը յայտնի է Շաբիթ անունով նահապետը, որի Վասակ և Շապուհ որդիները հայրական ժառանգութեան համար «կռուէին ի վերայ գեղեցիկ գեղջն Որդուատայ, և ի ճակատելն զօրաց ընդ միմեանս՝ եհար Վասակ սրով զեղբայրն և խողխողեաց մերձ ի մահ» և յետոյ զղջալով կոծում էր ու եղբօր բժշկուելուց յետոյ նրան է թողնում բոլոր ժառանգութիւնը և ինքը հեռանում է տանից ու կրօնաւորուելով հայր Գիւտ կոչւում։ Այնուհետև գրեթէ մի ամբողջ դար Գողթնի մասին ոչ մի յիշատակութիւն չի լինում։ Յետոյ Է. դարի սկզբում յիշատակւում է մի ոմն Վռամ [1], իսկ դարի կիսին (652 թ.) արաբացիները ասպատակում են նաև Գողթնը, շատերին սրից անցկացնում և «զայլս գերի վարեալ կանամբք և մանկտեաւ անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայոյ»։

Սոյն աւերածութիւնները շարունակուել են նաև այս դարի վերջին, երբ Կաշմ ոստիկանը Նախիջևանում և Խրամում հայ նախարարներին և իշխաններին այրելուց և Դուինը սրի ճարակ դարձնելուց յետոյ՝ շատերի հետ նաև Գողթնեաց տէր Խոսրովի չորս տարեկան որդի Վահան Գողթնեցուն էլ գերի է տարել Դամասկոս։ Սա այստեղ մահմեդականութիւն է ընդունել և սովորելով արաբական գիտութիւնները՝ արքունի դիւանապետ է դարձել։ Օմարի ամիրապետութեան ժամանակ Վահան Գողթնեցին թոյլատուութիւն է ստացել այցելելու իւր հայրենի երկիրը միայն այն պայմանով, որ նորից յետ դառնայ։ Վահան տիրել է իւր Գողթան գաւառին, տեսել նրա աւերածութիւնը և զգացել իւր ներքին աւերը, լալով զղջացել իւր ուրացութիւնը և ամուսնացել Սիւնեաց Բաբկեն իշխանի դստեր հետ, բայց յետոյ հրաժարուել է նրանից և մի առ ժամանակ ճգնաւորական կեանք վարելուց յետոյ՝ ինքնակամ գնացել է ամիրապետի մօտ և խոստովանելով քրիստոնէական հաւատը՝ նահատակուել նրանից 737 թուին [2]։

1) Սեբէոս պատմիչ յիշ. Սիս. եր 310.
2) Զամչեան, Պատմ. Հայոց Բ. եր. 382—385.

767 թուին, Սիոն կաթուղիկոսի կազմած ժողովում յիշւում է իբր Գողթնի տէր ոմն Սահակ, որից յետոյ այլեւս ոչ մի իշխանի յիշատակութիւն չի երեւում։

Տասներորդ դարում, Յուսուփի հարուածներից յետոյ յիշւում է արաբացիներից կարգուած Ամիրայ Գողթան. իսկ նոյն դարի վերջում Ապուսլուփ կամ Ապուտէլփ անունով մինն է եղել Գողթնի ամիրայ, որ 983 թուին ասպատակել է դէպի Ճուաշ և Վասպուրականի սահմանները, բայց միքանի տարուց յետոյ նրա երկիրն աւերուել է Ատրպատականի մեծ ամիրայ Ռովադայի որդի Ապլճէհից։ Բայց Ապուտէլփը դարձեալ զօրանալով 989 թուին առել է նաև Դուին քաղաքը, և հաշտութեան դաշն կապել Սմբատ Շահնշահի հետ։ Յայտնի չէ, թէ մինչև երբ է տևել այս ամիրաների իշխանութիւնը, որոնք նստել են Օրդուբաթ. հաւանական է, որ տևած լինի մինչև Թաթարաց այս կողմերից հեռանալը։

Այնուհետև դարձեալ պատմութիւնը միանգամայն լռում է այս կողմերի մասին մինչև Շահ-Աբասի օրերը, երբ շատերի հետ գողթնեցիներ ևս գաղթել են Պարսկաստան և երբ Շահ-Աբասը Ագուլիս գալիս Անդրէաս քահանան, որ նորահաստատ դպրատան ուսուցիչն էր, շարժել է նրա բարկութիւնը, և նահատակուել նրանից, չկամենալով ուրանալ քրիստոնէական հաւատը։ Նրա գազանների առաջ ձգուած նշխարներն ագուլեցիները հաւաքել են և ամփոփել Խցաձորի եկեղեցու աջ խորանում [1]։

Մի ուրիշ յիշատակագիր ևս ԺԷ. դարու վերջում (1692—6 թուերին) պատմում է, թէ ինչպէս Պարսից մի զօրագունդ ձևացնելով իբր թէ վրաց վրայ պիտի արշաւէ, եօթն անգամ խաբէութեամբ ասպատակել է Սիւնիքը և «ի մասն ինչ Գողթնեաց... և բազում սուտ քրիստոնեայք զճշմարիտ հաւատս Քրիստոսի փոխանակեցին ընդ... օրինացն Մահմեդի և միաբանեցան ընդ Պարսից, և այնքան

1) Առաքել Դավրիժեցի. գլ. Իէ.։ Սրա պատմութիւնը հէնց հիմայ էլ գիտէ ամէն մի ագուլեցի։

գիւղս և աւերս գործեցին. և մանաւանդ որդիք անիծելոյն Վասակայ Սիւնեցիք, որ բազում սուտ կարգաւորք և օրինազանց աշխարհականք... գնացեալ յարեցան ընդ զօրըս նորա, և առեալ սփռեցան ընդ ամենայն երկիրս, զգեօղ, զգաւառս, զվանք, զանապատ, որք ի լերինս և որք ի դաշտս, ազգ և ազգ սաստութեամբ պատճառս յօդելով, և ոչ մնաց տեղի որ ոչ կոխեցին ոտք նոցա. և այնպէս աւեր դարձուցին զերկիրս ամենայն և կողոպտեցին ի ըստացուածոց, առհասարակ զամենեսեան ահաբեկ և որտակոտոր արարին [1])»։

ԺԸ. դարու սկզբին, Դաւիթ բէկի արշաւանքների ժամանակ, մանաւորապէս Ագուլիսը յիշւում է իբրև բազմամարդ քաղաք, ուր «էին իբրու տասն հազար տունք Հայոց», և ուր կային մինչև անգամ «զօրագլուխք» և «զօրք Հայոց» [2])։ Սակայն հազիւ թէ այս «տասն հազար տունքը» ճիշտ լինի, թէև Նալեանն էլ ասում է. «Այս գիւղաքաղաք Ագուլիս երբեմն ունէր 8000 տուն հայ, այժմ հազիւ թէ կայ 1000 տուն» [3]). ՚Ի վերջոյ այս բազմամարդ Ագուլիսը, որ առևտրական կապերով աւելի կապուած էր Պօլսի, քան թէ Թէհրանի հետ, Դաւիթ բէկի արշաւանքների ժամանակ երկու կուսակցութեան է բաժանուել. մեծագոյն մասը, որ առևտրական յարաբերութիւններ է ունեցել Պօլսի հետ՝ հակուած է եղել Օսմանցիների կողմը, իսկ փոքրագոյնը՝ Պարսից։ Ուստի և մեծագոյն մասը իրեն գլուխ ունենալով Մելիք-Մուսին, ընդդիմադրել է Դաւիթ բէկին և նենգութեամբ սպանել Մելիք Փարսադանին, նրան, որ ազատել էր Մելիք Մուսի կեանքը [4])։ Այս պատմութեան մէջ ագուլեցիները միանգամայն արատաւորում են իրենց անունը, միմիայն իրենց առևտրական նպատակ-

[1]) Սիսական եր. 311.

[2]) Պատմութիւն Դաւիթ բէկին. հրատ. Աբ. Գուլամիրեանցի. եր. 37. 45. 60—66.

[3]) Սիսական. եր։ 325.

[4]) Դաւիթ-Բէկի պատմութիւնը ժողովրդական աղբիւրներից շուտով մամուլի կը յանձնեմ։

ներն ի նկատի առնելով դաւաճանելով ընդհանուր հայրենիքի ազատութեան գործին։

Սրանց այս տաճկասիրութիւնը մի քանի տարի յետոյ խստիւ պատժուել է պարսիկների կողմից, ինչպէս երեւում է Դիսարի ձեռագիր Յայսմաւուրքի կողքին գրած հետեւեալ յիշատակարանից.

Ի ՌՃՀ Թ. (1730), ի ժամանակս Թագաւորութեան Պարսից շահ Թահմազին և Թագաւորութեան օսմանցոց սուլթան Ահմատին և կաթողիկոսութեան սրբոյ և մեծի աթոռոյն Էջմիածնի տռ. Աբրահամին և մերոյ նահանգիս տանն Գողթնեաց սրբոյ և մեծի աթոռոյն սրբուն Թովմայի առաքելոյն առաջնորդ հղահոգի և սրբակրօն վարուք Տէր Բարսեղ ածաբան վարդապետին ի սոցա ժամանակիս եղև մեծ վրդովումս և խռով և աղմուկ և կռիւ և կագ. այսինքն ի մէջ երկուց ինքնակալ Թագաւորաց օսմանցոց և Պարսից և եղև մեծ հալածումն մերազնեաց քրիստոնէից և եղև ի փախչիլն օսմանցոց ի Թաւրիզու և եկին ազգ Պարսիցն ի գիւղաքաղաքն Օրդուվար ժողովեցան և բանակեցին և անտի ելեալ մտին ի Դաշտ կոչեցեալ գեղն երկու տասան հազար հեծելոք և կոտորեցին ի Նոցանէ հոգիս գճ արանց, մանկանց և կանանց և գերեցին ի նոցանէ անձինս ըճ և այլ աւելի և ես ականատես եղայ աչօք իմօք և տեսի զաստուածային սուրբ տառս ի ձեռս նետող ազգին Պարսից գերի. գալարեցաւ աղիք իմ և ցաւեցաւ սիրտ իմ [1]։

Մի կարճ միջոցից յետոյ էլ (1752 թ.) Ագուլիսն է ենթարկուել մի այսպիսի խիստ աւերման։ Ատրպատականի կողմնակալ Ազատ խանը այս տեղով անցնելիս Ագուլիսից խնդրել է ցորենի, գարու և այլ պաշար ու հարիւր հազար դահեկան դրամ, և երբ ագուլեցիք իրենց Նասյի անունով գլխաւորի յորդորով մերժել են, խանը երկու երեք անգամ կրկնել է իւր պահանջը, սպառնալով, որ եթէ չկատարեն, կաւերէ քաղաքը։ Եւ երբ ագուլեցիները

[1]) Տէր Յակոբ քահանայի ձեռագրից.

մերժել են, նա յարձակել է ագուլեցիների զինուորուած գնդի վրայ և սարսափելի ջարդ տալով, «ի մէջ երրորդ ժամուն Ս. տաճարին քայքայեալ ջախջախեցին, և Սրբոց մաքուր մասունքն ամենայն գերեցին, ...անթիւ քրիստոնեայք արք և կանայք, երիտասարդք և մանկունք սրով անցուցին, որ զամենայն հողն արեամբ ներկեալ շաղախեաց, և զաւուրս երիս յայս գիւղս բնակեցան. Թէ եկեղեցիք և թէ բնակութիւնք ամենայնի մերկացուցին որ իբր մերկ ի մօրէ ծնեցեալք։ Եւ յետ այսքան սրախողխողութեան յետ մնացեալ քրիստոնեայքն կողոպտաբար գերեցին որ թէ ողորմելի Ագուլեաց և թէ բոլոր շրջակայ գիւղօրէիցն մինչ ի ՌՄ (1200) քրիստոնեայ գերեցին, և ս. տաճարքն խանգարեցան և եղեն անմարդաբնակ, իբր թէ տասնամեան աւերեալ [1]։

Այս աւերածութիւնից յետոյ ագուլեցիներից շատերը գաղթել են նաև՛ Պօլիս, ուր հիմնել են Բէկ-օղլու թաղը, Ագուլիսի Թաղամասի անունով, որ մինչև այժմ էլ մնացել է միայն գերեզմանատան վրայ—«Բէկ-օղլու գերեզմանատուն»։

Ինչպէս ասացինք, Պարսից տիրապետութեան ժամանակ Գողթան գաւառը այժմեան ոստիկանական սահմաններով կազմում էր մի առանձին միութիւն Ազատ ճիրան անունով, և կազմում էր Նախիջևանի խանութեան մի մասը, իսկ վերջինս ենթարկւում էր Ատրպատականի կուսակալին։

Ազատ ճիրանը բաժանւում էր հինգ մահալների.— 1) Օրդուբադի, 2) Ագուլիսի, 3) Դաշտի, 4) Բելևի և 5) Ջանանաբի։ Այս մահալները կառավարւում էին միրբոլուկներով (мирболюками), որոնք ենթարկւում էին Օրդուբադում նստող խանին, իսկ սա՝ Նախիջևանի խանին։ Հայ գիւղերը կառավարւում էին տանուտէրներով, որոնք մինչև այժմ էլ մելիք են կոչւում։ Թէ մելիքները և թէ մանաւանդ Օրդուբադի ու Նախիջևանի խաները սաստիկ կեղե-

[1] Սիսական եր. 331.

քում էին ժողովրդին. շատ մելիքներ էլ գործիք էին դառնում խաներին և նպաստում նրանց՝ կեղեքելու։ Ահա ինչ է պատմում այժ. Տէր-Յակոբ քահանան սրանց մասին.

«Մելիքները խաների համար գործիք լինելով լուր էին տանում խանին, թէ այս ինչ վաճառականը գալով մեծ փող է բերել կամ լաւ ձի, կամ լաւ ջորի։ Խանը մարդ էր ուղարկում թէ ձիդ, ջորիդ տուր, կամ 100—50 ոսկի փող տուր. ամէն ով որ ընդդիմանար, օրերով պիտի կապէին փայտի, ծեծելով արիւն շաղախ անէին։ Մալխասեանք, որ իմ աներանք էին, ասում էին, թէ պանդխտութիւնից եկած լինելով պահանջում են նրանցից մեծ գումար, և հսկում են, որ չփախչի. Նա ցերեկով իւր կնոջը պատուիրում է իրիկուն հացը փռել քուրսու վրայ, կերակուրները ամանների մէջ կարգով դարսել, ճրագը դնել, այնպէս որ հերթից մելիքի մարդիկ հսկելու ժամանակ համարեն թէ տանն են. և ապա իրանք լուռ ու մունջ պատի տակերով դուրս են գալիս փախչում գնում Վերին Ագուլիս՝ ս. Աստուածածին... ուր երեք օր թոնրների մէջ թաք մնալուց յետոյ, գիշերով դուրս է գալիս փախչում Սիւնեաց կողմերը»։

Ապա արժանայիշատակ քահանան մի առ մի թւում է թէ ինչպէս այսպիսի հալածանքների պատճառով ինչ տներ ուր գաղթեցին։ Հետաքրքրական է Աբրահամ և Աղամալ մահտեսիների խօսակցութիւնը այս հալածանքների ժամանակ։ Մինը ասում է միւսին. «Աղամալ եղբայր, մի հընար գտիր այս գաղթականութեան առաջն առնելու, այսպէս չի լինիլ, ամենքը փախան գնացին»։

Աղամալը պատասխանում է. Վնաս չունի. բողկը քանի որ հաստ հաստ լինի, մեծ մեծ տակ կանի։

Հալածանքի հերթը իրենց էլ է հասնում, լուռ ու մունջ դուրս են գալիս գիշերով փախչում. երբ հասնում են Կարճուանի դաշտը, լեզուները բացւում է. սկսում են միմեանց հետ խօսել։ «Աղամալ եղբայր, ասում է Աբրահամը,

այժմ բոլորը մեծացել է, ամէն մինը մի ձմերուկի չափ, մինը իմ գլխիս է դիպչում, միւսը քոն։

Սովորական երևոյթ էր նաև, որ խանի մարդիկը յարձակւում էին շրջակայ խաների երկրների վրայ և գերիներ բերում, թալանում, աւերում։ Այսպէս նոյն արժ. Տէր Ցակոբ քահանան պատմում է, թէ Մամադիւլի խանութեան ժամանակ «Անոնց Համզին գնում է Ղարաբաղի կանայքը և երեխայքը ձմեռ ժամանակ քշում բերում Դաշտ գիւղը. ճանապարհին Ալանդեաղ սարի գլխին երկուհօգիս (յղի) կանայք և երեխայք չկարողանալով ընթանալ, սարից գլորում է, քցում ձիւնի մէջ սպանում։ Դաշտ հասնելուն պէս ածում են մեծ մեծ աներ։ Շուտով գարունը բացւում է և սով սկսւում. ոչխարի նման տանում են եղել ցերեկով խոտ արածացնում, գիշերները բերում լքցնում մեծ մեծ աներ և յետոյ եկեղեցու բակը։ Պառաւները կը պատմէին, թէ գոռնով անցնելիս կաղաչէին մեզ, աղ կուզէին խոտի հետ ուտելու։ Շատերը չկարողանալով ապրել, սկսան կոտորուիլ...

Այս սովը 7 տարի է տեւում, «Մարդիկ սկսել են բամբակի հատը բովել, աղալ. նոյնպէս նուշի, ընկոյզի կեղեւները աղալ, ջրով խմորի պէս շաղախել, երկաթի վրայ եփել և ուտել։ Ղարաբաղցի Ունանանց Հայրապետը որ 2 գութան է ունեցել, սովից մեռնելու ժամանակ նրա նագլու կինը գլխի արծաթները խփում է գետնով և ասում. ինչու ես հարկաւոր, որ Ունանանց Հայրապետը մի նըշխարհաչափ հաց չի գտնում գնի բերնին յետոյ մեռնի։ Հայրապետի մեռնելից յետ ամբողջ գիւղով (դաշտեցիք) անցնում են Պարսկաստան, գնում Լուարջան. այնտեղ աղջիկները ջրի գնացած ժամանակ պարսիկները գողանում են տանում տալիս Իսա-խանին։ Սա էլ նշանուած լինելով Խոյ քաղաքում, ուղարկում է իւր նշանածի համար. գնում աղաչում պաղատում են, բայց չեն կարողանում յետ ստանալ, նրանց բռնի թուրքացնում են։

Սովորական երևոյթ էր խանի համար աղջիկ հաւա-

*քերը, գալիս որսում էին և 11—13 տարեկան գեղեցիկ աղջիկներին բռնութեամբ տանում խանի հարեմը, և թուրքացնում։ Այսպիսի կրօնափոխութիւնից աղջիկներին ազատելու համար դեռ. չատ մատաղ հասակում պսակում էին չափահաս տղաների հետ, որովհետև պսակուած-ներին չէին տանում։ Պատմում են, որ Մելիք Կարապետի ցոյց տալով «Մարտիրոսի քոյր Փարուն բռնում են, որ տանեն. սա հէնց որ այս իմանում է, իչակաթնուկ կո-չուած խոտի կաթը քսում է երեսին, որ այրի ու տգե-ղացնի իրեն։ Եւ երբ գալիս են բռնելու, փախչում է և մի բարձր կտրից վայր ընկնում, որ մեռնի, բայց ողջ է մնում։ Բռնում դնում են ձիու վրայ և տանում։ Ձիուց վայր է ընկնում և կրկին փախչում, սակայն բռնում են, տանում, թուրքացնում։*

1797 *թուին ժանտախտ է տարածւում Ղարադա-ղում. տեղական հայերը գալիս են Վ. Ագուլիս և մի վար-դապետի ձեռքով ս. Թովմայի աջը տանում, փրկութիւն հայցելու։ Վարդապետը այդ տեղ վարակւում է՝ մեռնում. այն ժամանակ ս. Թովմայի առաջնորդը ուղարկում է Ներ-քին Ագուլիսի քահանայ Տէր Անդրէասին՝ աջը յետ բերելու և սա իւր հետ բերում է նաև ժանտախտը։ Շատ մարդիկ կոտորւում են։ «Ներքին Ագուլիսում մարդիկ այնքան էին պակասած, որ եկեղեցու ճանապարհի վրայ մի ձմերուկի սերմ ընկնելով բուսել և ձմերուկ էր հասցրել* [1])»։

*Այս ժանտախտի մասին Դիսարի ժամագրքի յիշատա-կարանում ասուած է.*

*«ՌՄԽԶ* (1797) *թուին եկն մահ աշխարհս Նախիջևան, կաւառն Ազաջիրան (Ազատ Գիրան), Ղափան, Դ.ոտորաղ, Ղարադաղ, Թիֆլիս... և բազում գաւառ կոտորեց. այսպէս ցաւն գ. օր քաշէր հիւանդն, աւել ոչ, ապա մեռնէր, փախնողն չատ մեռնէր քան նստողն... այսպէս մնաց գ. տարի* [2])։

*Սովից ու ժանտախտից յետոյ Նախիջևանի Քեօռ Քալ-*

---

[1]) և [2]) *Տէր Յակոբի տետրից։*

ըոլա խանը սաստիկ ծեծելով ու տանջելով Գողթնի չատ գիւղացիների, կարողացել է «խաս» (թագաւորապատկան, ազատ) գիւղերից միքանիսը սեպհականացնել։ Այսպէս Ներքին Ագուլիսում տանուտէր Մելիք Նիկողոսին ծառի վրայ կապած 3 օր չարունակ անդթաբար թակումեն և հարցնում, թէ համաձայն է կալուածագիրը ստորագրելու։ Չորրորդ գիշերը նրա որդի Մկրտիչը տեսնելով որ փարաչները քնած են, կտրատում է հօր կապանքները, ծառից վայր բերում, չալակում և կէս վերստից աւելի ճանապարհ տանում, Արհանենց այգու խոր ու չոր առուի մէջ թաքցնում։ Այդտեղ ութ օր պահելուց յետոյ, երբ տեսնում է, որ ամբողջ գիւղը ճիպոտի հարուածների տակ ստորագրեցին կալուածագիրը, լուր է տանում հօրը, որը և ինքնակամ գալիս է և ստորագրում։

Տևի գիւղում միայն մի հայ տոհմ է լինում, սրա մեծին ստիպում են, որ գիւղը ծախէ, սա յանձն չի առնում, պատճառաբանելով, որ միայն ինքնը չէ, այն ժամանակ սրա ձուաները փայտի մէջ դնելով ջարդում են. ամառ ժամանակ (լինելով) վէրքը որդնում է։ Ցեռոյ (ալրան) թուրքացնում են։ Նրա թոռը բնակւում էր Փառակա գիւղում, ինձ ցոյց տալով ասում էին. «Այժմ թուրքերը սրան հայհոյելիս ասում են. Քո պապիդ և այլն [1])։

Բիստ, Ալահի, Փառակայ գիւղերում «գերեզմանների տապանագրերից սապոնով կնիքներ փորել տալով կնքում էին կալուածագրերը [2])։ Մարվանիս գիւղին երկու փութ կորեկ են տուել [3])։

Այսպէս սեպհականացնելուց յետոյ հարկերը կրկնապատկում է, նոյն իսկ պատանիներից գլխահարկ է առնում. «պատանիների պարանոցը թելով չափում էին, պատմում է Տէր Ցակոբը, և երկտակելով ծայրից ատամներով բռնել էին տալիս և փորձում, թէ մնացած մասը

[1]) [2]) և [3]) Տէր Ցակոբի տետրից.

գլխովն անցնում էր՝ ամբողջ, իսկ եթէ ոչ՝ կէս գլխահարկ պիտի վճարէին [1]։

Երեք փունտանոց (1 հոխանոց) քարը քաշ էին անում թթենու ծայրից, եթէ չէր խոնարւում՝ հարկ էին վերցնում, այս պատճառով էլ շատերը թթենիները կտրատում էին և նրանց տեղում ցանք անում։

Հարկի պատճառով տղամարդիկ փախչում էին գիւղից, այն ժամանակ բռնում էին նրանց կանանց, մէջքնիսին միասին կապում չուկայի փայտէ սիւնից կամ մի որևէ ծառից և սաստիկ ծեծելով ստիպում, որ կամ ամուսիններին տեղն ասեն և կամ իրենք տան պահանջուած հարկը։ Շատ անգամ պատիժը աւելի խստացնելու համար կտրտում էին ձգում կանանց վարտիկը և ծեծում կատուին, որպէսզի սա ճանկռոտէ կանանց ոտները։

Այսպիսի պատիժներից չէին ազատւում նոյն իսկ քահանաները. — Ներքին Ագուլիսում Վարդավառին «Տէր Աստուածատրին պատարագից ետ Աղամալենց չվակում կապում են փայտի և ծեծում հարկ առնելու համար» [2]։

Այս երևոյթը այնքան սովորական էր դառել, որ մինչև անգամ երբ կանանցը թակում էին, «փախած ամուսինները Մարիամի խաչի ձորում դափ ածելով ուրախութիւն էին անում [3]։ Եւ երբ հարկահանները հեռանում էին գիւղից, իսկոյն գիւղն ընկնում էր փողոցները և կանչում.

Պռօտ կէժը, կայպուտ տայտայլխունը, ծուռուտ ճուճը վիկլայեք ակէք Խաչկուց բօխչան», այսինքն՝ Պռատ կուժը, կապոյտ սփռոցը, ծուռտ վառեկը վերցրէք եկէք Խաչիկենց պարտէզը, որպէսզի քէֆ անեն, երգելով.

Ղօպուղն ակալ փուղ ըղահալ փուղ չինիլ,
Ճապուտը վուին վերն թակալ ճօր չինիլ [4]։

Այսինքն. Գիւղն եկաւ փող ուզեց փող չկար,
Ճիպոտով ուին ծեծեցին ճար չկար։

[1] Հարկերի մասին մանրամասն յետոյ ենք խօսելու։

[2] [3] և [4] Տէր Ցակոբի տետրից.

Այս տանջանքների պատճառով գիւղացիներից շատերը գաղթում են, վերջապէս երբ Աբաս Միրզա թագաժառանգը այցելում է Գողթնին ու տեսնում բազմաթիւ աւերակ տները, արտերի մէջ կոտրատուած թթենիները, հարցնում է պատճառը և ապա կանչելով Նախիջևանի խանին և այս գիւղերի տանուտէրներին ու առաջաւորներին Թավրիզ, որոշեալ գումարներ առնելով յօգուտ խանին, հաղը կրկին հաստատում է գիւղացիների վրայ։ Միայն Ներքին Ագուլիսը վճարել է 700 թուման և 120 թուման էլ Աբաս Միրզին ընծայ է տուել այդ բարերարութեան համար [1]։

Ռուս-Տաճկական պատերազմի ժամանակ Էկսան-խանն ու Շէյխ Ալի բէկը դաւաճանելով պարսիկներին՝ Օրդուբադը յանձնում են ռուսներին, ուստի և որանց տիրապետութեան ժամանակ նաիբ են կարգւում [2]։ Այս պատերազմների ժամանակ տեղական հայերը չափազանց նեղութիւններ են կրում։ Շատերը փախել են զանազան կողմեր, ուրիշներ թաք կացել հորերի մէջ շինուած առանձին տեղերում, շատ կանանց և երեխաների թուրքերն իբր պատանդ տարել են Արաքսի ափին պահել, որպէսզի սրանց ամուսիններն ու հայրերը չանցնեն ռուսների կողմը։ Պարսիկները նահանջելիս տարել են իրենց հետ հայ կանանց իբրև գերի, որոնցից յետոյ շատ քչերն են ազատուել։

Պատերազմից յետոյ Լազարեանի առաջնորդութեամբ գաղթած մօտ 45,000 հոգուց այս շրջանում վերաբնակել են 250 գերդաստան կամ 1340 հոգի. տեղաւորուելով Օրդուբադում, Վերին և Ներքին Ագանեբում, Դեբում, Ալահում, Բիստում և ուրիշ գիւղերում։

Ներկայ պրակում այս գաղթականների մասին չենք խօսելու, որովհետև նրանց մասին գրելու ենք Նախիջևանի շրջանն ուսումնասիրելիս։ Այստեղ մեր ասելիքները

---

1) Տէր Յակոբի տետրից.

2) Шопенъ, յ. գ.

մասնաւորելու ենք ընկների մասին, և այն էլ նրանց, որոնք յայտնի են զօկ անուամբ։ Սրանք բազմաթիւ չեն և բռնում են միայն Վերին և Ներքին Ագուլիսը, Անդամէջը, Դիսարը, Ցղնան, Տանակերտը, Ոտմիսը, Բաղաբերկը, Փառական։

Զօկ անուան մասին տրուած են հետևեալ բացատրութիւնները.

Արժ. Տէր Յակոբը ասել է. Հին գողթնեցիներն այս, այդ, այն, ցուցական դերանուան փոխարէն գործ էին ածում զոկ, դոկ, նոկ [1]։ Եւ որովհետև սրանք այդ զոկ (այս) դերանունը շատ յաճախ են գործածել, ուստի և նրանց կոչել են զոկ, ճիշտ այնպէս՝ ինչպէս հոս (այս) գործածող պոլսեցիներին կոչել են հոս հոս։ Արժ. հայրը ուրիշ շատ օրինակներ էլ է բերում ապացուցանելու, որ մեզանում սովորութիւն է եղած միևնոյն բառը յաճախ գործածողներին այդ բառով կոչել, յիշեմ օրինակներից մէկ երկուսը. Ագուլեցի Աբեանց Կարապետը «թէպէտ» Կարապետ էր կոչւում, Ներքին Ագուլեցի Բալթաբեղենց Յովհաննէսը «ինճաւարա» (ուրեմն) Օհաննէս անունն էր կրում։

Միևնոյն բացատրութիւնն տալիս է նաև Ք. Պատկանեան, ասելով, որ այդ անունը յառաջացել է հօկ, օկ դերանուան յաճախ գործածելուց, զ նախդրով, որը գործածական է եղել անցեալ դարում՝ զհօկ, զօկ։ Իւր այս կարծիքը հաստատում է նրանով, որ Շրօդերի յառաջ բերած զօկերէն մի հատուածի մէջ խօսողներից մինը անծանօթ լինելով այդ լեզուի հետ՝ ծաղրելով ասում է. «Ջուղայեցւարն, Ղափանցւարն և Հռոմըցւարն լաւ կու հասկանամ. մա ձեր զօկ մօկ խօսքը չեմ թէ ինչ այ [2]»։

Ս. Սարգսեանի հետ հաւանութիւն տալով այս բացատրութեան, ասենք նաև, որ ոմանք էլ այդ զօկ բառը հանում են Զոհակ անունից, որ պարսկերէն Աժդահակ է

[1]) Իսկ այժմեանները՝ հօկ, դօկ, նօկ։

[2]) К. Паткановъ. Изслѣдованіе о діалектахъ Арм. языка եր. 54.

նշանակում, իբր թէ գողթնեցիները նրա սերնդի խառնուրդը լինելով նրա անունով զօկ են կոչուել [1]։

Զօկերի առանձնայատկութիւնը կայանում է նրանում, որ նրանց բարբառը միանգամայն տարբերւում է Հայոց թէ գրական լեզուից և թէ բարբառներից, մինչ այն աստիճան, որ գրեթէ բոլորովին անհասկանալի է ոչ զօկ հայերին։ Եւ հէնց այս պատճառով էլ բոլոր զօկերը բացի իրենց բարբառից, բաւականաչափ ծանօթ են գրական լեզուին, այնպէս որ մի ուրիշ գաւառացու պատահելիս նրանք գրական լեզուով են խօսում։ Մի ընդհանրացած սովորութիւն է նաև, որ զօկը երբէք զօկերէն բարբառով մի բան, մի նամակ, մի հաշիւ, չի գրել, այլ անշուշտ գրական լեզուով, որքան էլ որ քիչ գիտենայ։ Այս պատճառով և՛ այդ բարբառը ոչ ունեցել է և ոչ ունի գրականութիւն։

Զօկերին և Զօկաստանը համարձակ կերպով կարելի է համեմատել Փիւնիկեցիների և Փիւնիկիայի հետ և առանց մարգարէ լինելու գուշակել՝ որ միևնոյն վիճակն է սպասում և սրանց։

Զօկաստանը լերկ, ապառաժոտ մի երկիր է, մեծ մասամբ ծածկուած կաւոտ և աւազոտ մարնայով և կրաքարով, ջուրն էլ սաստիկ սակաւ, ուստի և երկիրը զուրկ է բուսականութիւնից։ Զօկերի անխոնջ աշխատանքն է որ գետակների ափերին այգիներ ձգելով և թթենիներ տընկելով ապրուստի մի փոքրիկ աղբիւր են ստեղծել, որ սակայն գոհացուցիչ չէ։ Միևնոյն ժամանակ Գողթնը լինելով այն ճանապարհի վրայ, որ միացնում էր Հնդկաստանը Միջին Ասիայի հետ, մօտ լինելով հայոց հին մայրաքաղաքներին, Արմաւիրին, Արտաշատին, Դուինին և այլ յայտնի շուկաներին, ամենահին ժամանակից սկսած մեծ յարմարութիւններ ունէր վաճառականութեամբ պարապելու, ուստի և զօկը, իւր ծննդավայրի բնական դրութիւնից ստիպուած՝ փիւնիկեցու նման սկսել է վաճառակա-

1) Սիսական եր. 314.

նութեամբ պարապել։ Այս պարապմունքը պատճառ է եղել զանազան տեղեր փոքրիկ գաղութներ հաստատելու, ինչպէս Նուխի, Կախ, Զաքաթալա, Շուշի, Աստրախան, Կ. Պօլիս (Բէկ-օղլու թաղը), Թիֆլիս, Մոսկուա, Թաւրիզ, Մազանդարա, (Ռէշտ). և այլն, և այսպիսով կամ երկար ժամանակով և կամ ընդմիշտ բացակայելու ծննդավայրից։ Եւ հէնց այս պատճառով սէրը դէպի իր ծննդավայրը, հայրենիքը, հետզհետէ մարել է, մանաւանդ որ վաճառականական պարապմունքը զարգացրել է նրա մէջ անձնական շահի, եսականութեան զգացմունքներ [1]), ապացոյց՝ ագուլեցիների բռնած դիրքը դէպի Դաւիթ բէկը և նրա գործունէութիւնը։ Միւս կողմից շփուելով զանազան ազգութիւնների հետ, նա բոլորից էլ փոխ է առել զանազան սովորութիւններ և յատկութիւններ, ուստի և այսօր զօկական կուլտուրան ինքնուրոյն շատ քիչ բան ունի, դա խառնուրդ է զանազան տեղերի և ազգերի կուլտուրայի.—Նրա հարսանեկան սովորութիւնների մէջ միաժամանակ տեղի են ունենում թէ պարսկական շաբաշը և թէ ռուսական горько-ն. հագուստների մէջ մրցում են միմեանց հետ Մոսկուան, Մարսէյլը, Վիեննան, Բերլինը, կերակուրները ամէն ազգից մի քանի տեսակը, և այլն և այլն։

Ընդունելով օտարինը՝ սրանք հեշտութեամբ մոռանում են իրենցը և մինչև անգամ այսօր բուն զօկական շատ քիչ բան է մնացել. նոյն իսկ լեզուն գործածութիւնից դուրս է ձգւում, ոչ միայն ուրիշ գաւառացիների, այլև Զօկաստանի այլ գիւղացիների հետ սրանք ընդհանուր հայերէն լեզուով են խօսում և ոչ թէ իրենց զօկերէնով։

Վաճառականութեան շնորհիւ ըմբռնելով ուսման կարևորութիւնը՝ սրանք շատ հին ժամանակից հոգս են տարել թէ իրենց գիւղերում դպրոցներ բաց անելու և թէ որդիներին ուղարկելու ուրիշ քաղաքներ ուսումն առնելու։ Եւ պէտք է ասել, որ սրանց մեծ մասը ծննդավայր չի

[1]) Ս. Սարգսեան՝ Ագուլեցոց բարբառը, եր. 13.

վերադառնում, այլ մնում է քաղաքներում, ուր նրա գոյութիւնը միանգամայն կորչում է, մանաւանդ երբ, ինչպէս կրթուածներից ոչ քչերը, ամուսնանում են օտար աղջիկների հետ։

Այսպիսով զօկն ու Զօկաստանը լինելով Կովկասի գաւառական անկիւնների մէջ ամենալուսաւորն, ամենապակաս ազգագրական ինքնուրոյնութիւնն է ներկայացնում։

## Բ. ԿՐՕՆԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ

Գողթան գաւառը թէ հեթանոսութեան և թէ քրիստոնէութեան շրջանում շատ ջերմեռանդ և աւանդապահ է եղել։ Լեռնոտ, առանձնացած երկիր լինելով այստեղ հեթանոսութիւնը կարողացել է պահպանուել մինչև ս. Մեսրովբի օրերը, ինչպէս և քրիստոնէութիւնը Ս. Բարդուղիմէոս առաքեալի քարոզութեամբ այստեղ սկսուելով կարողացել է յարատևել մինչև Ս. Լուսաւորիչ։

Գողթան գաւառը իրաւամբ Նախահաւատ է կոչւում, որովհետև սա և Սիւնիքը ամենից առաջ են ընդունել քրիստոնէութիւնը։ Այստեղ քարոզել է ս. Բարդուղիմէոս առաքեալը, գուցէ և ս. Թովմաս։ Արտաշատականից գալով ս. Բարդուղիմէոսը մտել է Գողթն, ուր շինել է մի եկեղեցի, որ կոչուել է Ցեառն ընդ առաջ և բոլորովին կտրել Որդուառի վնասակար ջրերը, մկրտել է Շաւ իշխանին ամբողջ տնով և առաջնորդ է կարգել իւր աշակերտներից մինին՝ Կոմսին, որից և սկիզբն է առել Գողթնի եպիսկոպոսութիւնը։ Մինչև Ս. Լուսաւորչի քարոզութիւնը Գողթնում յիշւում են Բաբելաս և Մուշէ, իսկ Լուսաւորչից յետոյ մինչև իններորդ դարը, 303 տարիների ընթացքում իբրև Գողթնի առանձին, անկախ եպիսկոպոս յիշւում են. Մովսէս Տարօնացի, Սահակ Տարօնացի, Զրուանդատ, Ստեփանոս, Յովհաննէս, Մուշէ (500—550), Անաստաս (550—580), Սիոն (594), Մարտիրոս (628), Եսայի (768—773, յետոյ կաթուղիկոս). Թ. դարից մինչև ԺԳ. դարը

վերադառնում, այլ մնում է քաղաքներում, ուր նրա զօկութիւնը միանգամայն կորչում է, մանաւանդ երբ, ինչպէս կրթուածներից ոչ քչերը, ամուսնանում են օտար աղջիկների հետ։

Այսպիսով զօկն ու Զօկատանը լինելով Կովկասի գաւառական անկիւնների մէջ ամենալուսաւորն, ամենապակաս ազգագրական ինքնուրոյնութիւնն է ներկայացնում։

## Բ. ԿՐՕՆԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ

Գողթան գաւառը թէ հեթանոսութեան և թէ քրիստոնէութեան շրջանում շատ ջերմեռանդ և աւանդապահ է եղել։ Լեռնոտ, առանձնացած երկիր լինելով այստեղ հեթանոսութիւնը կարողացել է պահպանուել մինչև ս. Մեսրոպի օրերը, ինչպէս և քրիստոնէութիւնը Ս. Բարդուղիմէոս առաքեալի քարոզութեամբ այստեղ սկսուելով կարողացել է յարատևել մինչև Ս. Լուսաւորիչ։

Գողթան գաւառը իրաւամբ Նախահաւատ է կոչւում, որովհետև սա և Սիւնիքը ամենից առաջ են ընդունել քրիստոնէութիւնը։ Այստեղ քարոզել է ս. Բարդուղիմէոս առաքեալը, գուցէ և ս. Թովմաս։ Արտաշատից գալով ս. Բարդուղիմէոսը մտել է Գողթն, ուր շինել է մի եկեղեցի, որ կոչուել է Տեառն ընդ առաջ և բոլորովին կտրել Որդուատի վնասակար ջրերը, մկրտել է Նաւ իշխանին ամբողջ տնով և առաջնորդ է կարգել իւր աշակերտներից մինին՝ Կումսին, որից և սկիզբն է առել Գողթնի եպիսկոպոսութիւնը։ Մինչև Ս. Լուսաւորչի քարոզութիւնը Գողթնում յիշւում են Բաբելաս և Մուշէ, իսկ Լուսաւորչից յետոյ մինչև իններորդ դարը, 303 տարիների ընթացքում իբրև Գողթնի առանձին, անկախ եպիսկոպոս յիշւում են. Մովսէս Տարօնացի, Սահակ Տարօնացի, Զրուանդատ, Ստեփանոս, Յովհաննէս, Մուշէ (500—550), Անաստաս (550—580), Սիոն (594), Մարտիրոս (628), Եսայի (768—773, յետոյ կաթողիկոս). Թ. դարից մինչև ԺԳ. դարը

*այլեւ Գողթնի եպիսկոպոսներ չեն յիշատակւում, որովհետեւ այս միջոցում Գողթնը ենթարկուել է Սիւնեաց մետրոպոլիտի վերատեսչութեան, ինչպէս այդ պարզ երեւում է Սարգիս Ա. կաթուղիկոսի* 1006 *թ. շրջաբերականից, ուր որոշ կերպով ասուած է. «Եւ յերնջակայ գաւառին Բասաձոր, զոր Գողթնեցիքն էին առեալ, նաեւ զՎանանդ եւ Գողթն բոլորովին, որոց թէպէտ եպիսկոպոսեալ էր եւ կայր սակաւ վայրացն, այլ ի ներքոյ Սիւնեաց նուաճեալ էր»։*

*ԺԳ. դարի վերջում նորից երեւում են Գողթան եպիսկոպոսները անկախ Սիւնեաց կամ Տաթեւի մետրապոլիտներից եւ սրանցից յայտնի են* **Սարկաւագ** (1280—1300), **Տէրունական** (1424), **Խաչատուր** (1699), **Պետրոս** (1680), **Թովմաս Վանանդեցի** (1491—1712), **Յովհաննէս** (1708), **Թովմաս** (1737), **Յովհաննէս** (1740), **Սիմէոն** (1830). *Սա եղել է վերջին եպիսկոպոսը, որովհետեւ* 1838 *թ. եպիսկոպոսութիւնը վերացուել է, ենթարկուելով Երեւանեան թեմի առաջնորդութեան եւ այնուհետեւ նշանակուել են լոկ վանահայրեր։ Սրանցից յայտնի են.* **Յակոբ վարդապետ** (1870), **Կարապետ վարդապետ** (1871), **Անանիա վարդապետ Համազասպեանց** (1881), **Գրիգոր եպիսկոպոս Աղափիրեան** (1883) *եւ* **Սահակ վ. Բաղդասարեան**։

## Դ. ՄՏԱՒՈՐ ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄ

*«Գեղեցիկ»* [1] *եւ «գինեւէտ»* [2] *Գողթն գաւառը բաւական մեծ դեր է կատարել նաեւ գրական ասպարիզում։ Դեռ շատ հին ժամանակներում գողթան երգիչները «ախորժելով» երգել եւ պատմել են Տիգրան Ա. Վահագնի եւ Արտաշէս Բ. գործերը։ Եւ այն մի քանի բեկորները, որ մեր մեծ պատմահօր ջանքերով ազատուած են կորստից, մեր ժողովրդական բանահիւսութեան գոհարներն են կազմում։*

*Սակայն վաղուց արդէն դադարել է այս երկրում*

[1] *Ստ. Օրբէլեան. գլ. ԺԷ.* [2] *Մ. Խորենացի*

այլեւ Գողթնի եպիսկոպոսներ չեն յիշատակւում, որովհետեւ այս միջոցում Գողթնը ենթարկուել է Սիւնեաց մետրոպոլիտի վերատեսչութեան, ինչպէս այդ պարզ երեւում է Սարգիս Ա. կաթողիկոսի 1006 թ. շրջաբերականից, ուր որոշ կերպով ասուած է. «Եւ յերնջակայ գաւառին Բասաձոր, զոր Գողթնեցիքն էին առեալ, նաեւ զՎանանդ և Գողթն բոլորովին, որոց թէպէտ եպիսկոպոսեալ էր և կայր սակաւ վայրացն, այլ ի ներքոյ Սիւնեաց նուաճեալ էր»։

ԺԳ. դարի վերջում նորից երեւում են Գողթան եպիսկոպոսները անկախ Սիւնեաց կամ Տաթեւի մետրապոլիտներից և սրանցից յայտնի են Սարկաւագ (1280—1300), Տէրունական (1424), Խաչատուր (1699), Պետրոս (1680), Թովմաս Վանանդեցի (1491—1712), Յովհաննէս (1708), Թովմաս (1737), Յովհաննէս (1740), Սիմէօն (1830). Սա եղել է վերջին եպիսկոպոսը, որովհետեւ 1838 թ. եպիսկոպոսութիւնը վերացուել է, ենթարկուելով Երեւանեան թեմի առաջնորդութեան և այնուհետեւ նշանակուել են լոկ վանահայրեր։ Սրանցից յայտնի են. Յակոբ վարդապետ (1870), Կարապետ վարդապետ (1871), Անանիա վարդապետ Համազասպեանց (1881), Գրիգոր եպիսկոպոս Աղափիրեան (1883) և Սահակ վ. Բաղդասարեան։

## Դ. ՄՏԱՒՈՐ ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄ

«Գեղեցիկ» [1]) և «գինեւէտ» [2]) Գողթն գաւառը բաւական մեծ դեր է կատարել նաեւ գրական ասպարիզում։ Դեռ շատ հին ժամանակներում գողթան երգիչները «ախորժելով» երգել և պատմել են Տիգրան Ա. Վահագնի և Արտաշէս Բ. գործերը։ Եւ այն մի քանի բեկորները, որ մեր մեծ պատմահօր ջանքերով ազատուած են կորստից, մեր ժողովրդական բանահիւսութեան գոհարներն են կազմում։

Սակայն վաղուց արդէն դադարել է այս երկրում

1) Ստ. Օրբելեան. գլ. ԺԷ. 2) Մ. Խորենացի

բանաստեղծութիւնն ու երգեցողութիւնը, տեղի տալով երկար հաշիւններին ու չոր թխթխկոցին։ Եւ թէպէտ քաղաքական ու տնտեսական պատճառները միանգամայն կերպարանափոխել են գողթնեցուն, սակայն և այնպէս նրա ստեղծագործող ընդունակութիւնը և երաժշտական ունակութիւնը լրիվին չեն անհետացել։ Նա նոյն իսկ այսօր շատ հնարագէտ, զանազան առևտրական բարդ յերևոյթներ կազմակերպող է հանդիսանում. Նրանցից շատ շատերը լաւ ձայն և լաւ լսողութիւն ունին, սակայն չմշակելով՝ ոչ մի կատարելութիւն չեն ներկայացրել։ Բացի սրանից, դժբաղդաբար այս գաւառակի մասին մինչև XVII դարը մեզ ոչինչ յայտնի չէ, ով գիտէ քանի քանի նշանաւոր «Շուն Գալուստներ» [1]) և բազմաթիւ երգիչներ են եղել, որոնք անհետացել, գնացել են։

Միակ տունը, որի յիշատակը պահպանուել է գրականութեան մէջ, ԺԷ. դարում է ծաղկել։ Սա Նուրիջանեանների տունն է, Վանանդից, որ հայրենի երկրում չկարողանալով ծառայել ազգային լուսաւորութեան՝ հեռացել է Ամստերդամ, ուր Թովմաս եպիսկոպոսը իւր գրամով, սրա հօրեղբօր որդի Մատթէոսը իւր արհեստով ու եղբօր որդի Ղուկասը իւր գիտութեամբ օժանդակելով միմեանց, տպարան են հիմնել և բացի իրենց և այլ երկասիրութիւններից հրատարակել են երկու շատ նշանաւոր գործ՝ Մովսէս Խորենացու պատմութիւնը՝ որպէս ազգային ինքնաճանաչութեան հիմք, և Համատարած աշխարհացոյցը՝ որպէս առևտրական գիտութիւնների հիմնաքար։

Հէնց այս միևնոյն ժամանակներում մի ուրիշ գողթնեցի, թէպէտ ոչ գրագէտ, իւր գործնական խելքով ըմբռնելով ժողովրդին հասկանալի, աշխարհաբար գրքերի կարևորութիւնը, մեկենաս է հանդիսացել «վատնելով զգոյս և զինչս բազումս ի ձուլումն գեղեցիկ տառիս, ի շինումն

[1]) Շուն Գալուստը Ներքին Ագուլեցի մի սրամիտ առակախօս է եղել, որի առակները կը տպուին մեր «Ժողովրդական առակներ»-ի առաջիկայ պրակներից մինում։

նորակերտ տպարանիս, ի գտումն պատուական թղթոյս և ի յօրինումն ամենայն իրաց պիտանաւորաց», և 1687 թուին Վենետիկում հրատարակել է «Պարզաբանութիւն հոգենուագ սաղմոսացն Դաւթի մարգարէին թարգմանեցեալ ի նուաստ Յովհաննիսէ վարդապետէ Կոստանդինուպօլսեցւոյ...։ Այս՝ երախտագիտութեան լիովին արժանի անձնաւորութիւնը ագուլեցի խօջայ Գուլնազարի որդի խօջայ Նահապետն է։

Նոյն դարում մի ուրիշ վաճառական էլ Վերին Ագուլեցի, Զաքարիա անունով, գրի է առել իր հաշիւների հետ նաև ժամանակակից պատմական անցքերը, իր ընտանեկան հանգամանքները, տան սարք ու կարգը, նոյն իսկ իր եղբայրներից բաժանուելու մանրամասնութիւններն ու իւրաքանչիւրի ստացած շարժական ու անշարժ կայքը, պղնձէ և արծաթէ ամանեղէնները և սրանց արժէքը և այլն։ Այս աշխատութիւնը բաւական արժէք ունի թէ ազգագրական տեսակէտից և թէ լեզուաբանական, որովհետև գրուած է այն ժամանակուայ աշխարհիկ, գրաբառախառն լեզուով։ Զաքարիայի այս օրագրութիւնը կամ «Դաւթարը» (ինչպէս ինքն է կոչում), արդէն տպագրել է տուել պ. Աղ. Բալանթարը և շուտով լոյս կընծայէ։

Այնուհետև մինչև ԺԹ. դարի երկրորդ կէսը գրական հօրիզոնում ոչ մի գաղթնեցի չի փայլում։

Ութսունական թուականներին որպէս մի աստղ երևում է Սարգիս Սարգսեանը։ Սա ծնուել է Ցղնայում, ուր սկզբնական կրթութիւնն ստանալուց յետոյ տեղափոխուել է Մոսկուա։ Այստեղ թէ գիմնազիոնական դասընթացքը և թէ համալսարանի պատմական-լեզուաբանական մասնաճիւղը (1878 թ.) աւարտելուց յետոյ մի տարի Գէորգեան ճեմարանում եւ այնուհետեւ Բրեանսկի գաւառական քաղաքի պրօգիմնազիոնում ուսուցիչ է եղել մինչև 1889 թ․ Պրօգիմնազիոնի փակուելով Ս. Սարգսեան մի տարի անպաշտօն է մնացել և ապա հրաւիրուել է Լազարեան ճեմարանը հայոց եւ ռուսաց լեզուի դասատու

Երկու տարուց յետոյ 1892 թ. Մարտի 30-ին Սարգսեան վախճանուել է։

Սարգսեանի ամենանշանաւոր աշխատութիւնը «Ագուլեցոց բարբառն» է, որ լեզուաբանական շատ մեծ արժէք ունի։ Գիրքը, որ տպուած է Մոսկուայում 1883 թուին, բաժանուած է երկու մասի. առաջնում լեզուաբանօրէն հետազօտուած է զօկերի բարբառը, երկրորդում գրի են առնուած զօկերի բարբառով ժողովրդական բանահիւսութեան զանազան կտորներ, որոնք հէնց այժմ էլ արդէն անհետացել են ժողովրդի յիշողութիւնից։

1888 թուին մի ուրիշ գողթնեցի, պ. Մկրտիչ Բարխուդարեան, զգալով «Փորձ» ամսագրի դադարմամբ յառաջացած մի ամսագրի մեծ կարիքը, ասպարէզ դուրս եկաւ, եթէ ոչ լիովին, գոնէ մասամբ լրացնելու, ուստի և սկսեց հրատարակել Մոսկուայում մի կիսամեայ «Հանդէս գրականական և պատմական»։ Յաջորդ տարին պարոնը բացեց նաև մի տպարան, որ շարունակում է գործել մինչև այժմ բաւականաչափ մաքուր և կատարելագործուած կերպով։ Մինչև 1896 թուականը փոքրիկ ընդմիջումներով հրատարակուեց այս ժողովածուն, տալով ընդամենը եօթ գիրք, որոնց մէջ յարգելի հրատարակիչը բացի մի երկու թարգմանութիւնից, ինքնուրոյն ոչ մի երկ չունի, չնայելով որ բաւական նախապատրաստուած է՝ լսած լինելով Մոսկուայի պատմական-լեզուաբանական մասնաճիւղում։ Ուստի և պ. Մ. Բարխուդարեանի մատուցած ծառայութիւնը սահմանափակւում է միայն նրա տպարանական և հրատարակչական գործունէութեան մէջ։

Պարզ է, որ պ. Բարխուդարեանի հանդէսը չէր կարող փոխարինել «Փորձ»-ին և ամսագրի կարիքը գնալով աւելի ու աւելի զգալի էր դառնում։ Ահա այդ պակասը եկաւ լցուցանելու մի ուրիշ գողթնեցի. դա պ. Աւետիք Արասխանեանն է, «Մուրճ» ամսագրի հիմնադիրը։

Պ. Աւետիք Արասխանեան (ծն. 1857 թ. փետր. 13-ին Վերին Ագուլիսում), իւր սկզբնական կրթութիւնն ըս-

տացել է Ագուլիսում նախ Հայրապետ Քալանթարեանի և ապա Հայոց ծխական դպրոցում, աշակերտելով Պերճ Պռօշեանին, Ռուբէն Զալալեանին և ուրիշներին, որոնք նրա վրայ «անջնջելի լաւ տպաւորութիւն են թողել»[1]. 1870 թուին եկել է Թիֆլիս և մտել ռէալական դպրոցը, պարապելով նաև Ստեփանոս Պալասանեանի և Կ. Տէր Աստուածատրեանի մօտ, որոնք սէր են ներշնչել դէպի հայկական գրականութիւնը։ 1875 թուին նա գրել է իր առաջին յօդուածը «Մշակ»-ում (№ 28. Արհեստանոցի հարցը Ագուլիսում), իսկ հետևեալ տարին՝ առանձին գրքով հրատարակել է բժ. Բոկի «Գործնական խրատներ երեխաների մտաւոր և ֆիզիքական կրթութեան համար տանը և ուսումնարանում»։

1876 թուին աւարտելով ռէալական դպրոցը՝ անցել է արտասահման, ուր միաժամանակ լսելով Լայպցիկի և Փարիզի համալսարաններում, վերջնականապէս հաստատուել է Ստրասբուրգում, ուր 1882 թուին յաջող քննութիւն տալով տեղի համալսարանի պետական գիտութիւնների ֆակուլտետում, ստացել է դոկտորի աստիճան։

Վերադառնալով Թիֆլիս պ. Արասխանեան ստանձնել է ընդհանուր պատմութեան դասեր Ներսիսեան և Գայիանեան դպրոցներում, որի պատճառով և պատրաստել է «Արևելեան ազգերի հին պատմութեան» դասագիրքը (տպուել է 1891 թ.)։

Այս ժամանակամիջոցում պ. Արասխանեան կարդացել է Արծրունու թատրոնում եօթ դասախօսութիւն քաղաքատնտեսութեան վերաբերմամբ, որոնցից երկուսը՝ «Ազգաբնակչական շարժումներ» և «Հողի արդիւնաբերութիւնն ու հասարակութիւնը» առանձին գրքոյկներով հրատարակուել են։

1885 թ. թողնելով ուսուցչական պաշտօնը՝ պետական կալուածների մինիստրի լիազօրի հրաւէրով մտել է այն խմբի մէջ, որին յանձնուած էր ուսումնասիրել Անդրկով-

[1]) Արասխանեանի ձեռագրից.

կասի պետական գիւղացիների տնտեսական դրութիւնը, ու ճանապարհորդել է Նուխու և Արէշի գաւառներն ու մի տարուայ ընթացքում պատրաստել դրանց ուսումնասիրութիւնը, որ զետեղուած է Матеріалы для изученія экономическаго быта государственныхъ крестьянъ въ Закавказскомъ краѣ“ հրատարակութեան VI և VII հատորներում։

Այնուհետև նորից ստանձնել է Ներսիսեան դպրոցում ուսուցչութեան պաշտօն, սակայն տեսչի հետ ընհարում ունենալով հրաժարուել է պաշտօնից, դիմել է Վեհափառին այս մասին քննութիւն նշանակելու, որի առիթով և մի մեծ բանակռիւ է ունեցել Գր. Արծրունու հետ։ Մնալով անպաշտօն՝ բաց է արել «Արդիւնաբերական և առևտրական կուրսեր», միայն շուտով թոյլտուութիւն ստանալով «Մուրճ» ամսագիրը հրատարակելու, փակել է այս կուրսերը և լիովին նուիրուել այս միակ ամսագրի հրատարակութեան։

Մեծ տոկունութեան շնորհիւ պ. Արասխանեանց կարողացաւ 12 տարի շարունակ համբերութեամբ տանել «Մուրճ»-ի հրատարակութիւնը, կրելով նիւթական մեծ զրկանքներ, սակայն պարոնի նոյնքան մեծ յամառութիւնը հետզհետէ իրանից հեռացրեց այն գրական ույժերը, որոնք համախմբուել էին միակ ամսագրի շուրջը։ Ի վերջոյ պ. Արասխանեանը ստիպուեց վաճառել իւր ամսագիրը պ. Կրասիլնիկեանին, որից մի տարի յետոյ անցաւ նոյնպէս գողթնեցի պ. Լևոն Սարգսեանին։

Պ. Արասխանեանին հէնց սկզբից շրջապատել են ուրիշ գողթնեցիներ՝ պ. պ. Ա. Քալանթար, Լ. Սարգսեան, Լ. Մանուէլեան և Փ. Վարդազարեան։ Առաջին երեքը իբրև խմբագրութեան անդամներ թէ խորհրդով և թէ իրենց յօդուածներով բաւական լաւ առաջ են տարել ամսագրի խմբագրութիւնը, իսկ պ. Փ. Վարդազարեան (Ներքին Ագուլեցի) յանձն էր առել ամսագրի հրատարակութիւնը։ Սակայն սրանց միահամուռ գործունէութիւնը հազիւ եր-

կու տարի կարողացաւ տեւել։ Պ. Վարդազարեան հրաժարուեց «Մուրճ»-ի հրատարակութիւնից և սկսեց հրատարակել «Հօրիզոն» վեցամսեայ հանդէսը, որի միայն առաջին գիրքը լոյս տեսաւ։ Պ. Վարդազարեան աւելի լաւ համարեց փոխանակ վեցամսեայ հանդէսի, առանձին գրքեր հրատարակել և լոյս ընծայեց Ց. Թումանեանի Բանաստեղծութիւնները։ Սիրելով հրատարակչական գործը, պ. Վարդազարեան վարեց նաեւ Ազգագրական Հանդէսի հրատարակութեան վարչութեան անդամի պաշտօն մօտ երեք տարի։

Պ. Աղէքսանդր Քալանթար ծնուել է Վերին Ագուլիսում 1855 թուի սեպտ. 20-ին. սկզբնական կրթութիւնը ստացել է իւր հօր՝ Հայրապետի դպրոցում, յետոյ մտել է Բագուի ռէալական գիմնազիօնը, ուր աւարտել է 1875 թ. ոսկէ մեդալով, ապա գնացել է Մոսկուա, ուր մի տարի տեխնիկական դպրոցում մնալուց յետոյ տեղափոխուել է Պետրովեան Երկրագործական եւ Անտառային ճեմարանը, եւ այստեղ 1879 թուին աւարտել է գիւղատնտեսութեան կանդիդատի աստիճանով։

Պ. Քալանթար իւր գրական գործունէութիւնն սկսել է դեռ աշակերտական շրջանում, 1873 թուին, հրատարակելով իւր առաջին յօդուածը «Մշակում», իսկ յաջորդ տարին տպագրել է առանձին գրքոյկներով հետեւեալ թարգմանութիւնները՝ Տնտես, Ցակոբ Էրլիխ Հոֆմանի, Ռոտայնանկ Դրէյֆ։ Շարունակելով աշխատակցել «Մշակին» ընդհանուր եւ տնտեսական յօդուածներով՝ նա առաջինը սկսել է գրել հողային եւ կաթնատնտեսական հարցերի մասին։

Պետական կայքերի մինիստրի յանձնարարութեամբ պ. Քալանթարը 1882/3 թուին ճանապարհորդել է արտասահման ուսումնասիրելու կաթնատնտեսութեան տեսական եւ գործնական այժմեան դրութիւնը եւ ապա՝ մինչեւ 1887 թ. որպէս անդամ Ռուսաստանի անասնապահութեան ներկայ դրութիւնն ուսումնասիրող յանձնախմբին եւ

այնուհետեւ մինչեւ 1894 թուականը որպէս Կովկասի պետական արօտատեղերի կարգաւորիչ՝ նա երկար ճանապարհորդել է թէ Ռուսաստանում եւ թէ, մանաւանդ, Անդրկովկասում, որով և միջոց է ունեցել ծանօթանալու եւ ուսումնասիրելու Անդրկովկասն ու նրա բնակիչները։

Զկամենալով մի առ մի յիշել նրա գիւղատնտեսութեան վերաբերեալ ռուսերէն մեծ եւ փոքր աշխատութիւնները, որոնց թիւը մօտ յիսունի է հասնում, եւ այն գործունէութիւնը որ նա կատարել է թէ որպէս Կովկասեան Գիւղատնտեսական Ընկերութեան Խորհրդի անդամ եւ նոյն ընկերութեան „Кавказское Сельское Хозяйство“-թերթի պատասխանատու խմբագիր, թէ որպէս Կովկասեան Գիւղատնտեսական եւ արդիւնագործական ցուցահանդէսի կազմակերպողներից մին, թէ որպէս Ախալքալաքի երկրաշարժից վնասուողներին նպաստող յանձնաժողովի անդամ և թէ որպէս շրջիկ կաթնարան եւ կաթնատնտեսական դասախօսութիւններ կազմակերպող Անդրկովկասի գիւղերում, մասնաւորում ենք մեր խօսքը նրա հայկական գրականութեան մատուցած աշխատութիւնների վրայ, յիշատակելով միայն նրա «Գաղթնային արդիւնքներ» յօդուածը, որի թարգմանութիւնը տպագրուեց «Ազգագրական Հանդէսի» չորրորդ գրքում։ Զանց ենք առնում խօսելու նաեւ այն մի շարք դասախօսութիւնների մասին, որ նա կազմակերպել է Բագուում 1885 թուին, մի խումբ երիտասարդների հետ, նիւթ վերցնելով տնտեսական, գրական եւ նոյն իսկ ազգագրական խնդիրներ։

Դեռ 1889 թուին, նա որպէս «Մուրճ»-ամսագրի խմբագրութեան անդամ՝ Նամալեան ստորագրութեամբ զետեղել է «Մուրճ»-ում «Կեանքի գծեր» և «Պարիկեանի նամակները», մի շարք քննադատական յօդուածներ եւ նոյն իսկ թարգմանութիւններ, ինչպէս Մարկ Տուէնից, Էդգար Պօից։ Ապա 1893 թուին ընտրուելով «Մշակ» լրագրի խմբագիր, մինչեւ օրս էլ վարում է այդ պաշտօնը, գրելով ոչ միայն առաջնորդողներ, այլ եւ «Մանրանկար-

ներ», տեղագրական յօդուածներ՝ ինչպէս «Սասունը», Թարօնական քննադատութիւններ «Միրոդ» ստորագրութեամբ, տնտեսական և քաղաքական տեսութիւններ։

Չընկճուելով խմբագրական ծանր և բազմակողմանի աշխատանքների տակ, պ. Քալանթարը կարողացաւ միաժամանակ լինել թէ Ներսիսեան դպրանոցի հոգաբարձու (1893—1899) և թէ Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութեան վարչութեան նախագահ վերջին տասնամեակում, որի ընթացքում ընկերութիւնը հասաւ իւր ամենաբարձր զարգացման։

Պ. Լեւոն Սարգսեանը ծնուել է 1862 թ. Հոկտ. 23-ին Ցղնայում. սկզբնական կրթութիւնն ստացել է տեղական ծխական դպրոցում, ապա 1873 թ. ուղարկուել է Մոսկուա՝ Լազարեան ճեմարան, ուր 1884 թ. աւարտելով մտել է նոյն մայրաքաղաքի համալսարանի բնագիտական բաժինը և աւարտել 1888 թ. կանդիդատի աստիճանով։ Վերադառնալով Կովկաս, նա անցել է Տաճկա-Հայաստան և իւր ճանապարհորդական նկատողութիւնները հրատարակել «Այց Թիւրքաց Հայաստանին» խորագրով։

1889 թ. ստանձնելով ուսուցչական պաշտօն Ներսիսեան եւ Գայիանեան դպրոցներում, նա միաժամանակ պարապել է գրականութեամբ՝ լինելով «Մուրճ»-ի խմբագրութեան անդամ և Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութեան Խմբագրական Մասնաժողովի նախագահ։ 1892 թ. պ. Սարգսեան տեղափոխուել է Շուշի, թեմական դպրոցի տեսուչ, սակայն պաշտօնավարութեան երրորդ տարին զանազան խռովութիւնների պատճառով հրաժարուեց եւ երբ Ներսիսեան դպրանոցի տեսուչ ընտրուելով չհաստատուեց Վեհափառից, հեռացաւ Մոսկուա եւ ուսուցչական պաշտօն ստանձնեց Լազարեան ճեմարանում։ Հինգ տարուց յետոյ 1900 թուին երբ «Մուրճ» ամսագիրը անցաւ պ. Կ. Կրասիլնիկեանին, պ. Լ. Սարգսեան հրաւիրուեց որպէս խմբագրութեան անդամ։ Մի տարուց յետոյ պ. Սարգսեան մոսկուաբնակ պ. Պօ-

ղոսեանի հետ գնեց «Մուրճը» եւ ինքն սկսեց անկախ խմբագրել, վերջին տարիս հրատարակչութիւնն անցաւ տ. Բանանեանին, բայց խմբագրութեան ամբողջ հոգսը դարցեալ մնաց պ. Լ. Սարգսեանի վրայ։

Պ. Սարգսեան, որ դեռ ուսանող ժամանակ թղթակցել է հայոց զանազան թերթերի, առանձին գրքով հրատարակել է նաեւ «Ժողովրդի կրթութիւնը մեզանում», «Հին ցաւ» եւ «Մայրենի խօսք» (Կուսիկեանի հետ), բացի «Այց Թիւրքաց Հայաստանին», որ վերեւ յիշեցինք։

Արժ. Կարապետ վարդապետ Տէր Մկրտչեանը ծնուել է Ցղնայում (1866 թ. Մարտի 17-ին)։ Նրա հայրը շատ ընթերցասէր և աղօթասէր ու շրջակայքում յայտնի է եղել որպէս «Էֆենդիմերի Նայրը», մայրը նոյնպէս մի կրօնասէր և աչքի ընկնող բարեմասնութիւններով օժտուած մի կին է եղել։ Բացի այս երկուսից՝ փոքրիկ Կարապետի հոգու վրայ ահագին ազդեցութիւն է ունեցել նաև նրա պապը՝ մի առաքինի և բարեպաշտ ծերունի։ Սկզբնական կրթութիւնն ստացել է նախ իրենց գիւղի ծխական դըպրոցում, և ապա տեղափոխուելով Ջաքաթալա իւր մօրեղբօր՝ Ց. ա. քահանայ Առամեանի մօտ՝ այնտեղի գաւառական և ծխական դպրոցներում՝ ընկերակցելով բանաստեղծ Աղ. Ծատուրեանին։ Յետոյ 1880 թուին ընդունուել է Ս. Էջմիածնի Գէորգեան ճեմարանում որպէս ձրիավարձ գիշերօթիկ սան, ուր ութ տարի մնալով աւարտել է առաջնակարգ մրցանակով։ Աստուածաբանութեան ուսուցիչ դեր. Օրմանեանի դասաւանդութեան և կուսակրօնութեան պատրաստուող տեսուչ՝ Նահապետեանի մասնաւոր խօսակցութեան ազդեցութեան տակ Կարապետը ուրիշ երեք դասընկերների հետ ընդունել է սարկաւագութեան աստիճան և մի տարի ճեմարանում ծառայելուց յետոյ Թիֆլիսի Բամոյենց եկեղեցու միջոցներով գնացել է արտասահման աստուածաբանութիւն ուսանելու։

1893 թուին «Պաւղիկեանք բիւզանդական կայսրութեան մէջ եւ ցեղակից աղանդաւոր երեւոյթներ Հայաս-

տանում» հմտալից աշխատութեան առաջին մասը՝ (Յունական աղբիւրները պաւղիկեանց մասին [1]) ներկայացնելով Լայպցիկի համալսարանին՝ ստացել է փիլիսոփայութեան դոկտորի մրցանակագիր։ Այնուհետև միաժամանակ ևս լսելով Բերլինում, Փարիզում և Մարբուրգում՝ աստուածաբանութիւնից քննութիւն է տուել վերջինիս համալսարանում և ստացել աստուածաբանութեան լիցենցիատի մրցանակագիր։ Այսպէս՝ թէ փիլիսոփայական և թէ աստուածաբանական գիտութիւններն ուսած ու հին ու նոր լեզուների մէջ բաւական վարժուած շնորհունակ Կարապետը վերադարձել է Ս. Էջմիածին, վարդապետ ձեռնադրուել և ստանձնել ճեմարանում նախ ուսուցչի, յետոյ տեսուչի օգնականի և ապա տեսչի պաշտօն, միաժամանակ աշխատակցելով և միքանի տարի խմբագրելով «Արարատը»։ Արժ. հայր սուրբի մի յիշատակելի գրական գործն էլ այն է, որ նա միքանի ճեմարանաւարտ երիտասարդների օգնութեամբ Մ. Աթոռի բոլոր ձեռագիր Աստուածաշունչներից կարևորագոյններն ընտրելով համեմատել է (մինչև Մակաբայեցւոց գրքերի վերջը) և այդ համեմատութեան արդիւնքը բաղդատելով եբրայերէն և յունարէն բնագրերի հետ՝ Ծննդոց և Ելից գրքերը պատրաստել է տպագրութեան համար, որից, սակայն, մինչև այժմ միայն մի թերթ է տպագրուել։ Արժ. հայր սուրբը անցեալ տարուանից Երևանի թեմի առաջնորդական փոխանորդ է կարգուած։

Գ. Լեւոն Մանուէլեանը ծնուել է 1864 թ. Ներքին Ագուլիսում. սկզբնական ուսումը ստացել է իւր ծննդավայրի եւ Վերին Ագուլիսի ծխական դպրոցներում, ապա 1877 թ. մտել է Թիֆլիսի գիմնազիօնը, ուր 1885 թ. աւարտելով շարունակել է Մոսկուայի համալսարանի պատմական—լեզուաբանական բաժինը։ Այստեղ պետական քննութիւնը տալուց յետոյ վերադարձել է Կովկաս եւ ուսուցչական պաշտօն վարել Գէորգեան ճեմարանում (1891—

[1]) Սրա երկրորդ մասը՝ «Թոնդրակեցիք մեր օրերում» յետոյ լոյս է տեսել Zeitschrift für kirchengeschichte ամսագրում։

94), և Ներսիսեան դպրանոցում (1894—1897)։ Ապա ստիպուած լինելով թողնել ուսուցչութիւնը, տեղափոխուել է Բագու, ուր մինչեւ անցեալ տարի մատենադարանապետ էր Մարդասիրական Ընկերութեան Գրադարան—ընթերցարանում։

Պ. Լ. Մանուէլեան, որ հայ վիպասանների և բանաստեղծների շարքում իւր որոշ տեղն ունի, մինչև այժմ տուել է հետևեալ երկերը. Տիգրանուհի, Խորտակուած կեանք, Բանաստեղծութիւններ, Նկարիչ Թաշճեան, Զալալինների արշաւանքը, Դոկտոր Երուանդ Բօշայեան, Դէպի վեր, գրամատիկական պօէմա։



Գողթան գաւառը ոչ միայն գրական ասպարէզում, այլ և հայերիս մտաւոր—հասարակական զարգացման գործում բաւական մեծ դեր է կատարել, տալով բարձրագոյն կրթութիւն ստացած բազմաթիւ անձնաւորութիւններ, որոնք ոչ միայն որպէս մասնագէտներ, այլև որպէս հասարակական գործիչներ ծառայել են գիտութեան և ժողովրդին։ Ուստի և մենք հարկ ենք համարում այստեղ յիշել այդ բոլորին, գոնէ որքան մեզ յայտնի են, թուելով միանգամայն նրանց մատուցած ծառայութիւնները։ Հարկ համարեցինք յիշել նաև այն անձնաւորութիւնները, որ թէպէտ բարձրագոյն կրթութիւն չեն ստացել, բայց և այնպէս՝ գոնէ իրենց գիւղում հասարակական մի որոշ դեր են կատարել։

Ամենից վաղ և ամենից շատ Վերին Ագուլիսն է տուել բարձրագոյն կրթութեան տէր մարդիկ։ Տէրեան տունը առաջինն է եղել, որ մետաքսի առևտրով բաւական մեծ հարստութիւն դիզելով ոչ միայն իւր, այլ և համագիւղացիների որդիների կրթութեան մասին հոգս է տարել, բաւական մեծ գումար նուիրելով տեղական հայոց դպրոցին։ Այս պատճառով և այդ արժանայիշատակ նուիրատուն՝ Աւետիսը՝ թաղուած է նոյն ուսումնարանի և Ս. Քրիստափոր եկեղեցու գաւթում։ Այս միևնոյն անձնաւորու-

թիւն է, որ շինել է Ագա գիւղում, Գիրան-չայի վրայ մի քարաշէն, անագին կամուրջ։

Այս միևնոյն տանից Գրիգորը վաթսունական թուականներին ուսանելով Մոսկուայի համալսարանում, հոգացել է Ագուլիսում գրադարան—ընթերցարան բաց անելու [1] և սկսել է հայերէն թարգմանութիւններ անել, սակայն վաղահաս մահը անկատար է թողել նրա ցանկութիւնները։ Նոյն տնից համալսարանական կրթութիւն են ստացել նաև հետևեալները, որոնցից միքանիսը փոխանակ Տէրեանի՝ Տէր Մկրտչեան են կոչւում եղբայրներից մինի անունով. պ. պ. Մարտիրոս և Մկրտիչ Տէրեանները աւարտել են Մոսկուա՝ իրաւաբանական բաժինը, առաջինը շարունակել է իրենց հայրական առևտրական գործը, իսկ երկրորդը՝ հաստատուած է Մոսկուայում և պարապում է իրաւաբանութեամբ։

Գ. Գրիգոր Տէրեանը աւարտել է նոյնպէս Մոսկուա՝ բժշկական բաժինը և այժմ այդ միևնոյն տեղում հոգեկան հիւանդութիւնների սեպհական հիւանդանոց ունի։ Քրիստափոր Տէր Մկրտչեանը աւարտել է նոյնպէս Մոսկուայում, միայն բնագիտական բաժնում, այժմ արդէն վախճանուած է։ Գ. Ստեփան Տէր Մկրտչեանը աւարտել է Մոսկուայում և հաստատուել նոյն տեղում։ Նարապետ Տէր-Մկրտչեան լսել է Փարիզում մաթիմատիկական գիտութիւններն և այժմ ուսուցիչ է Գէորգեան ճեմարանում։

Տէրեաններից յետոյ, բայց թւով նրանցից աւելի, բարձրագոյն կրթութեան մարդիկ տուել է Քալանթարեան տունը, որից պ. Յովհաննէսը դեռ 1860 թուին աւարտելով բժշկական մասնաճիւղը Լօնդոնի համալսարանում, ընդմիշտ հաստատուել է Անգլիայի ծովեզերեայ Սկարբրօ քաղաքում։ Սա արել է միքանի գիւտեր, ինչպէս արհեստական սառոյց պատրաստելու նոր միջոց, նոր ձևի ջերմաչափ, կատարելագործուած բիցիկլ և այլն։ Սրա եղբայր. պ. Դաւիթը Խալիպեան դպրոցն աւարտելուց յետոյ ազատ ունկնդիր է եղել Լայպցիկի համալսարանում, ապա մի առժամանակ ուսուցիչ է եղել Վ. Ագուլիսում, Երևանի թեմական դպրանոցում, Իգդիրում և Գէորգեան ճեմարանում, այնուհետև տեսուչ Տրապիզոնում, իսկ այժմ վերահաստատուած է Բրուսայում, ուր ունի սեպհական վեցդասարանեան դպրոց։

Այս երկուսի աւագ եղբայր պ. Հայրապետը թէև չէ ստացել բարձրագոյն կրթութիւն, այլ միայն ուսել է Էջմիածնում, սակայն 40 տարի շարունակ ծառայելով դպրոցական գործին և

[1] Հայկական աշխարհի Կռունկ. 1865 թ. № № 5—6 եր. 130.

իւր գրեթէ բոլոր որդիներին բարձրագոյն կրթութեան տալով միանգամայն արժանի է յիշատակութեան։ Նա առաջինն է եղել, որ բացել է Ագուլիսում կանոնաւոր դպրոց տղաների համար 1848 թուին, որ յետոյ փակուել է, երբ բացուել է պետական առևտրական դպրոցը, իսկ 1861 թուին սա բացել է աղջիկների դպրոց, առաջինը Անդրկովկասի գաւառներում, ուր դասաւանդել է նաև նրա ամուսինը։ 1864 թուին նա վերաբացել է նաև տղաների դպրոցը։ Այս երկուսն էլ յարատևել են մինչև 1870 թուականը։ Այնուհետև պ. Հայրապետը ուսուցչական պաշտօն է վարել Բագու Մարդասիրական Ընկերութեան դպրոցում, և յետոյ մի առժամանակ եւ իւր սեփական դպրոց բաց արել Բագւում։

Սրա որդիներից՝

պ. Աղէքսանդրը՝ աւարտել է Պետրոսեան Երկրագործական և Անտառային ճեմարանը, և այժմ «Մշակ» լրագրի խմբագիրն է։ (Տես՝ եր. 276)։ պ. Աւետիսը միևնոյն ճեմարանում. այժմ հաստատուած է Պետերբուրգում իբր գլխաւոր վերահսկող կաթնատնտեսութեան։ պ. Արսէնը աւարտել է Գէյզէնհայմի (Գերմանիա) գիւղատնտեսական ճեմարանը, հաստատուած է Թիֆլիսում և աշխատակցում է Кавк. Сельс. Хоз. թերթին, ունի միքանի թարգմանութիւններ։ Գ. Գրիգորը աւարտել է Ցիւրիխում քիմիական բաժինը և հաստատուել է Բագւում։ Գ. Անուշաւանը նոյնպէս քիմիական բաժինը Բերլինում։ Աշխատակցել է «Մուրճ»-ին, իսկ այժմ «Մշակ»-ին։ Հաստատուած է Բագւում։ Գ. Տիգրանը աւարտել է Իւրէվի անասնաբուժական բաժինը։

Արասխանեան տնից, որ դառնալով Տէրեան տան փեսան՝ սկսել է դեր խաղալ Ագուլիսում, եղել է միայն մի համալսարանական, պ. Աւետիքը, «Մուրճ» ամսագրի հիմնադիրը։

Այս տներից յետոյ սկսել են դեր խաղալ Հախնազարեան, Աբիեան և Ներսիսեան տները, որոնց միացած առևտրական տունը մասնաճիւղեր ունենալով Մոսկուայում, Երևանում, Բագւում, Աստրախանում, Ասխաբադում, Բալֆրուշում, Սաբզուար, Նշաբուր, Թուրբաթ (չորսն էլ Պարսկաստանում), և Մարսէյլում, բաւական նպաստել են բամբակի և բրդի առևտրին։

Հախնազարեան տանից Սարգիսը վաթսունական թուականներին միջնակարգ կրթութիւն ստանալով Ծալիպեան դպրոցում, շատ պիտանի է եղել իւր հայրենի գիւղին, կատարելով մի շարք հասարակական պաշտօններ. այսպէս 12 տարի շարունակ հոգաբարձու լինելով Հայոց ծխական դպրոցներին վեհ. Մակար կաթողիկոսից «Մշտնջենաւոր պատուաւոր հոգաբարձուի» տիտղոսին է արժանացել։ Իբր Գողթն գաւառակի ներկայացուցիչ

մասնակցել է կաթողիկոսի ընտրութեան համար թեմական պատգամաւորի ընտրութեան։ Գէորգեան ճեմարանում և Երևանի թեմական դպրոցում զանազան ժամանակներ ուղեգիրներ է պահել։ Երկար ժամանակ երեսփոխան է եղել Ագուլեաց զանազան եկեղեցիներում և Ս. Թովմայի վանքի հոգաբարձութեան անդամ։ Միևնոյն ժամանակ նա համարւում է վերոյիշեալ առևտրական տան հիմնադիր-անդամ։

Աբիեան տունը տուել է երկու համալսարանական՝

Գ. Քրիստափորը աւարտել է Պետերբուրգի Անտառային ճեմարանում և հաստատուել է Աստրախանում.

Գ. Խաչատուրը՝ Մոսկուայի բժշկական բաժնում և հաստատւում է Թիֆլիսում։

Ներսիսեան տնից

Գ. Մենտորը աւարտել է Ֆրէյբերգի հանքաբանական ճեմարանը։

Բաւական դեր են խաղացել և խաղում են նաև Տէր Միքայէլեան տունը, որից պ. Յովհաննէսը աւարտել է Խարկովի բժշկական բաժնում և հաստատուած է նոյն տեղում, իսկ պ. Հայկը եղել է Պետերբուրգի տեխնոլոգիական ճեմարանում, հաստատուած է Բագւում և մի ժամանակ աշխատակցել է Մշակին Nemo ստորագրութեամբ։

Այժմ դեր է խաղում նաև Փանեան տունը, սակայն դեռևս համալսարանականներ չէ տուել։

Բացի վերոյիշեալ տներից, որ Ագուլիսում նշանաւոր են համարւում և հասարակական որոշ դեր են կատարել կամ կատարում են, կան նաև ուրիշ համալսարանականներ, որոնց տան մեծութիւնը իրենցով է սկսւում. այսպիսիներն են. պ. Յակոբ Տէր Զանեան, աւարտել է Փարիզում բժշկական բաժինը և Ռուսաստանում քննութիւն տալուց յետոյ հաստատուել Թիֆլիսում։

Գ. Մինաս Մկրտչեան աւարտել է Կիեվում բժշկական բաժինը և հաստատուած է Թիֆլիսում, ուր ունի կանանց հիւանդութիւնների մասնաւոր հիւանդանոց։

Գ. Շմաւոն Աղամիրզեան, աւարտել է Մոսկուայի բժշկական բաժնում և հաստատուած է Բագւում։

Գ. պ. Արշակ Բարխուդարեան, Գրիգոր Դէորզեան, Աղէքսանդր Մնացականեան, Արշակ Յակոբեան, Թովմա և Ասլանեան աւարտել են Մոսկուայի համալսարանի իրաւաբանական բաժինը, առաջին երեքը հաստատուել են Թիֆլիսում, իսկ վերջին երկուսը՝ Մոսկուայում։

Գ. Քրիստափոր Միքայէլեան աւարտել է ուսուցչական

ինստիտուտ և եղել է Մոսկուայի Պետրոսեան գիւղատնտեսական ճեմարանում։

Պ. Յովսէփ Թադէոսեան, աւարտել է Մոսկուայի համալսարանի պատմալեզուաբանական բաժինը և 2 տարի լսել Միւնխէնի և Բերլինի համալսարաններում։ Աշխատակցում է «Մուրճին», Quidam ստորագրութեամբ. այժմ վարում է ուսուցչական պաշտօն Բագւում։

Յիշատակութեան արժանի է Քրիստափոր Թադէոսեանը, ուսուցչական ճեմարանից, որի փոքրաթիւ բանաստեղծութիւնները բաւական տարածուած են մանաւանդ Ագուլիսում։ Սա տեսուչ էր Աղէքսանդրապոլի Հայոց ծխական դպրոցում, ուր և՛ վախճանուեց։ Այս վաղամեռիկ բանաստեղծի տաղաւարները հրատարակուած են Բագւում մի խումբ համակրողների կողմից։

Պ. Գարեգին Աթաբէկեան, աւարտել է Մոսկուայում բժըշկական բաժինը։

Պ. Աղամիրզեան, Մոսկուայի Պետրոսեան գիւղատնտեսական ճեմարանում։

Պ. Թովմաս Մարգարեան. աւարտել է Պետրոսեան Գիւղատնտեսական ճեմարանում և այժմ հաստատուած է Աստրախանի նահանգում։

Յիշատակութեան միանգամայն արժանի է նաև դերասան պ. Ստեփան Սաֆրազեան, որ ոչ միայն արժանապէս ծառայեց բեմին Կովկասում, այլև Պարսկաստանում ռահահորդ (pionnier) հանդիսացաւ։

Օրիորդներից միմիայն մինը՝ Շուշանիկ Տէր Նիկողոսեան աւարտել է Մոսկուայի ատամնաբուժական բաժնում և հաստատուել է Թիֆլիսում։

Ներքին Ագուլիսում ԺԷ. դարում նշանաւոր է եղել Սէթեան Մահտեսի Մելքումը, որ շինել է այս գիւղի և ուրիշ վեց եկեղեցիներ. ինչպէս և՛ իւր անունով այժմ էլ կոչուող աղբիւրը Ներքին Ագուլիսում[1])։

---

[1]) Մահտեսի Մելքումի մասին աւանդաբար պատմում են, թէ Շահ-Աբասը Ներքին Ագուլիս եկած միջոցին հաւանում է նոյն տեղի մահտեսի Մելքումի չափազանց գեղեցիկ կնոջը և կամենում է իւր հարեմը տանել։ Ժողովուրդը ցանկանում է մի ուրիշին ուղարկել, որովհետև մահտեսին իրենց առաջաւոր մարդն էր։ Սակայն մահտեսին չկամենալով շահի բարկութիւնը ժողովրդի վրայ թափել, հաշտւում է դառը ճակատագրի հետ և թոյլ է տալիս, որ տանեն կնոջը։ Մի առ ժամանակից յետոյ երբ նկատում է որ

ԺԸ. դարում նշանաւոր են եղել Մելիք Գիւլամքար, Մելիք Ստեփան և Մելիք Յովհաննէս տանուտէրերը, որոնք ոչ միայն գործիք են եղել խաների ձեռքում ժողովրդին կեղեքելու, այլ և իրենք որպէս մի մի բռնակալներ՝ կեղեքել են ժողովրդին։ Չկամենալով ծանրանալ այս կէտի վրայ՝ բերում ենք միմիայն մի ապացոյց.—

---

վշտից հալ ու մաշ է լինում, վեր է կենում, գնում Սպահան, և ծպտուած սկսում իբր հասարակ որմնադիր աշխատել շահի պալատի մօտ, յուսալով մի օր առիթ ունենալ տեսնելու իւր կնոջը շահի մօտ։ Եւ յիրաւի, մի օր տեսնում է իւր կնոջը շահի հետ նստած՝ նարդի խաղալիս։ Իսկոյն պարսկական սովորութիւնից օգտուելով սկսում է երգելով աշխատել և ասում է.

*Քէօհնա դարդըմ թազալանտի, օղլան վեր գեան* (հին վէրքերս վերանորոգուեցան, ով տղայ կիր տուր)։

Կինը ամուսնու ձայնը լսելով իսկոյն ճանաչում է նրան ու պատասխանում կողմնակի կերպով, զառը ձգելով. *Քեչաննան քեչմախ կեարակ, եա կեալասան շաշ ու փանջ*։ (Անցեալից պէտք է անցնել, ով թէ գաս վեց ու հինգ)։

Շահ-Աբաս կասկածում է այս երգի և նրան համապատասխանող պատասխանի վրայ և ստիպում է կնոջը խոստովանելու, ապա թոյլ է տալիս նրան $1/2$ ժամով տեսնուել ամուսնու հետ և եթէ կամենում է՝ գնալ նրա հետ։ Կինը հասկանալով, որ այդ միմիայն իւր զգացմունքները փորձելու մի միջոց է, տեսնւում է իւր ամուսնու հետ, և ասում նրան, որ եթէ շահը առաջարկէ վերցնել իրեն, նա հրաժարուի, ապա թէ ոչ՝ գլուխը կը կորցնի, միենոյն ժամանակ նրան մեծ քանակութեամբ ոսկի է տալիս, որ գնայ եօթ եկեղեցի և եօթ աղբիւր շինի իւր կորած հոգու փրկութեան համար։ Ամուսինը կատարում է կնոջ պատուէրը, մերժում է Շահ-Աբասի առաջարկը յետ վերցնելու կնոջը ասելով, որ նա միայն շահի վայել կին է, և ապա եկեղեցիներ շինելու թոյլտուութիւն ստանալով վերադառնում է և շինում Թաւրիզի, Հին Նախիջևանի, Դաստակի, Ն. Ագուլիսի և ուրիշ երեք եկեղեցիներ ու եօթը աղբիւր։ Դեռ մինչև այժմ էլ Դաշտի բաղարի մօտի աղբիւրը «Մահտեսի Մելքումի աղբիւր» է կոչւում։

Մահտեսի Մելքումը կրկին ամուսնանում է և երբ երեխայ է ունենում, սրա ձեռի մէջ թագանման նշան է լինում։ Մահտեսին չարագուշակ համարելով այդ նշանը՝ խեղդել է տալիս այդ երեխային, բայց յետոյ երազում տեսնում է մի ալևոր, որ նրան յանդիմանում է գործած յանցանքի համար, ասելով որ նա շատ նշանաւոր մարդ պիտի դառնար։ Մահտեսին զղջալով կտակում է, որ իրեն իւր շինած եկեղեցու մէջ չթաղեն, որովհետև անարժան է, այլ Կճըղնոցի գերեզմանատանը։ Արժ. Տէր Յակոբի ասելով նրա գերեզմանը մինչև իւր ժամանակը յայտնի էր և վերան գրուած էր. ի դիր դամբարանի. բարէ. դաշտու մահտասի Մելքոնի որ փոխեցաւ սա 'ի Քս. Թվ. ՌՃԻԹ.

Մելիք Ստեփանը կամեցել է զարկեար Յարոնի Բալասան անունով աղջկայ հետ ամուսնանալ, սակայն սա սարսելով նրա դաժանութիւնից չի կամենում և փախչում է Վերին Ագուլիս, իրենց բարեկամ Փանոնց Ջրհորի մէջ թաք է կենում։ Մելիքը որոնում գտնում է և կանչում է քահանային, որ պսակի։ Աղջիկը մի կերպ մինդեղ է ձեռք բերում, խմում և գնում եկեղեցի՝ պըսակուելու։ Վերադարձին վայր է ընկնում և մեռնում։ «Մելիքը բարկանալով տանից քահանայի քաշ է տալիս, տանում թաղում [1]»։ Սա շատ մարդկանց իւր տան մէջ սպանել է և թաղել։

ԺԹ. դարում նշանաւոր է եղել Նարդուլեան տունը, որ շինել է տուել գիւղի «Ամարային» կոչուած եկեղեցին ու Ս. Մինասի մատուռը։ Յետոյ յառաջ են եկել Վարդազարեան տունը, որ 1860 թուին Մոսկուայից առաջինը բերել է տուել բոժոժից թել քաշելու շոգեմեքենայ, որով և մեծապէս նպաստել է այստեղի շերամապահութեան զարգացման։ Այս տունը տուել է նաև մի ինժիներ—տեխնոլոգ պ. Ստեփան անունով, որ աւարտել և հաստատուել է Մոսկուայում։ Այս տնից է նաև պ. Փիլիպպոս Վարդազարեանը, «Մուրճ»-ի և Հօրիզոնի հրատարակիչը, որ Զարգարեանի հետ կաշու գործարան ունի Թիֆլիսում։

Այս տան հետ միաժամանակ նշանաւոր են եղել Նուսնուսեան, Զարգարեան և Մանուէլեան տները։

Առաջինն այժմ էլ Ներքին Ագուլիսում մետաքսի թել քաշելու գործարան ունի և գիւղի առաջաւոր տունն է համարւում։

Երկրորդ, Զարգարեան, տնից, Արիստակէսը աւարտել է Մոսկուայում բժշկութեան մասնաճիւղը և հաստատուած է Թիֆլիսում։ Սա 1896 թուին Թիֆլիսում մի շարք դասախօսութիւններ է կարդացել երեխաների հիւանդութիւնների մասին, եղել է Թիֆլիսի Հայոց Բարեգործական Ընկերութեան Խորհրդի և Ազգագրական Հանդէսի հրատարակութեան Վարչութեան անդամ։ Գ. Մեխակը աւարտել է Մոսկուայի համալսարանի բնագիտական բաժինը և ուսուցիչ է Երևանում։ Օր. Եւգենիան աւարտել է նոյնպէս Մոսկուայի ատամնաբուժական մասնաճիւղը։

Իսկ երրորդ, Մանուէլեան, տնից նշանաւոր են վիպասան պ. Ղեւոնը, որի մասին խօսեցինք արդէն, պ. պ. Ստեփանը և Արշակը աւարտել են Մոսկուայի Առևտրական գիտութիւնների գործնական ճեմարանում։ Գ. Ստեփանը 1881 թուականից մինչև այժմ Թիֆլիսում պահելով հաշուապահական դասընթացքներ, ահագին ծառայութիւն է մատուցել, պատրաստելով բազմաթիւ հա-

---

1) Տէր Յակոբի տետրից։

շուապաններ։ Գ. Աւետիսը աւարտել է Մոսկուայի լեռնային ճարտարապետական ճեմարանը։

Այս գիւղից նշանաւոր է նաև պ. Կարապետ Ստեփանեանը, որ աւարտել է Մոսկուայի համալսարանի բժշկական բաժինը և հաստատուած է Թիֆլիսում։ Պարոնը այժմ Ներսիսեան դպրանոցի հոգաբարձու է և մի ժամանակ եղել է Թիֆլիսի Հայոց Հրատարակչական ընկերութեան վարչութեան անդամ։

Գ. Գ. Մխիթար Տէր Անդրէասեան և Մենտոր Ռոստոմեան, երկուսն էլ ինժիներ—տեխնոլոգ, աւարտած Մոսկուայում և հաստատուած Բագւում։

Պէտք է յիշել նաև Գ. Յարութիւն Թումանեանին, որ աւարտել է ուսուցչական դպրանոցը և այժմ Թիֆլիսի ս. Նունէի օրիորդաց դպրոցում հայոց լեզուի դասատու է. ունի նաև միքանի պոէմաներ։

Հանդամէջը տուել է միայն երկու համալսարանականներ, այն էլ միևնոյն՝ Աւետիսեան՝ տնից, պ. պ. Մինաս և Խաչատուր. երկուսն էլ աւարտել են Մոսկուայի համալսարանի բժըշկական բաժինը, առաջինը հաստատուած է Թիֆլիսում, երկրորդը՝ Սալեանում։

Ցղնայում բարձրագոյն կրթութիւն ստացած անձեր տուել են Սարգսեան, Մելիք Ալլահվերդեան, Տէր Մկրտչեան, Զօրեան և Բունեաթեան տները։

Սարգսեան տնից հանգուցեալ Սարգսի և պ. Լեւոնի մասին խօսեցինք արդէն։

Գ. Գ. Յարութիւնն ու Գարեգինը աւարտել են Մոսկուայի համալսարանի բժշկական բաժնում, առաջինը հաստատուած է Ղազախում, երկրորդը Բագւում։

Գ. Բաղդասարը աւարտել է նոյնպէս Մոսկուայի իրաւաբանական բաժինը, ծառայել է Օրդուբադում, Բաշնորաշէնում իբր քննիչ, իսկ այժմ հաստատուած է Բագւում։

Գ. Երուանդը աւարտել է Մոսկուայի Պետրոսեան գիւղատնտեսական ճեմարանում և հաստատուած է Թիֆլիսում, աշխատակցում է «Մուրճ»-ին և Кавк. Сельс. Хоз. թերթին։

Գ. Կարապետը աւարտել է Մոսկուայի Առևտրական ճեմարանը և հաստատուած է նոյն տեղում։

Այս գիւղը տուել է երկու արժանաւոր հոգևորականներ՝ Կարապետ վարդապետ Տէր Մկրտչեան, որի մասին արդէն խօսեցինք (եր. 279), և Արիստակէս եպիսկոպոս Վանկեան, առաջնորդ Ամասիոյ և Մարզուանի։

Բացի Սարգսեան տանից, բարձրագոյն կրթութիւն են ըս-

տացել նաև երկու հոգի Մելիք Ալլահվերդեան տնից։ Առաջինը՝ Մելքոնը աւարտել է Մոսկուայի համալսարանի լեզուաբանական և Պետերբուրգի Արևելեան լեզուների բաժնում։ Ապա Լազարեան ճեմարանի վարչութեան կողմից ուղարկուել է Թէհրան Պարսից լեզուի մէջ գործնականապէս կատարելագործուելու։ Յետոյ ըստանձնել է նոյն ճեմարանի լսարաններում պարսկերէն լեզուի դասաւանդութիւնը, սակայն շուտով (1891 թ.) վախճանուել է։

Միւսը՝ պ. Աղէքսանդրը աւարտել է Մոսկուայի համալսարանի բնագիտական բաժինը, և մինչև այժմ ուսուցիչ է Ներսիսեան և Արհեստաւորաց դպրոցներում։

Ջօրեան տնից պ. Ստեփանը դուրս է եկել Պետրովեան գիւղատնտեսական ճեմարանի վերջին կուրսից։

Բունեաթեան տնից պ. պ. Մենտորը և Աղէքսանդրը ստացել են համալսարանական կրթութիւն արտասահմանում, ուսանելով պետական գիտութիւնները։

Քաղաքիկում Գէորգեան տնից աւարտել է միայն պ. Մամիկոնը Մոսկուայի համալսարանի իրաւաբանական բաժինը և հաստատուել է Թիֆլիսում. իսկ Սանթուրեան տնից միայն մի օրիորդ՝ Հռիփսիմէն, Թիֆլիսի մանկավարժական ինստիտուտը և հաստատուել է Թիֆլիսում։

Վերոյիշեալներից հետևում է, որ Գողթան գաւառի եօթ գիւղերից միայն հինգն են բարձրագոյն կրթութեան անձինք տուել և սրանք ըստ մասնագիտութեան դասակարգւում են այսպէս.

| Գիւղեր | Ատամնաբժ. | Բժիշկներ | Իրաւաբան | Քիմագէտ | Պետ. գիտութ. | Պատմ. լեզ. | Ինժ. տեխն. | Քիմիկոս | Հանքաբան | Գիւղատնտես | Մեքենագէտ | Անտառ. գործ. | Ընդամէնը | Ընդ. բնակ. թ. | % |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Վ. Ագուլիս | — | 11 | 7 | 2 | 1 | 2 | 1 | 2 | 1 | 6 | 1 | — | 34 | 1200 | 2,18 |
| Ցղնա | 1 | 2 | 1 | 2 | 2 | 3 | — | — | — | 2 | — | 1 | 14 | 530 | 2,16 |
| Հանդամէջ | — | 2 | — | — | — | — | — | — | — | — | — | — | 2 | 77 | 2,16 |
| Ն. Ագուլիս | — | 3 | — | 1 | — | 2 | 4 | — | — | — | — | 3 | 13 | 524 | 2,15 |
| Քաղաքիկ | — | — | 1 | — | — | — | — | — | — | — | — | — | 1 | 163 | 0,17 |
| Ընդամէնը | 1 | 18 | 9 | 5 | 3 | 7 | 5 | 2 | 1 | 8 | 1 | 4 | 64 | 2494 | 2,15 |

*Այս 64 անձերից 48 բարձրագոյն կրթութիւնն ստացել են Ռուսաստանում, ամենից շատը (45 հոգի) Մոսկուայում, որի հետ կապուած են առևտրական կապերով, 13 արտասահմանում։ Սրանցից 20 հաստատուել են Թիֆլիսում, 12 Բագւում, 4 Մոսկուայում, 4 արտասահմանում, մէկ մէկ էլ Պետերբուրգում, Խարկովում, Սալիանում և այլն. մի հոգի էլ բուն ծննդավայրում՝ Վ. Ագուլիսում, այն էլ ծերութեան պատճառով։*

*Մտաւոր յառաջադիմութեան կողմից իգական-սեռն արական համեմատութեամբ շատ յետ է մնացել, միայն երեք հոգի կարողացել են միջնակարգ կրթութիւնից յետոյ շարունակել, և նոյն իսկ միջնակարգ կրթութիւն ստացողների թիւն էլ չափազանց փոքր է։*



# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՍՆ

Օրդուբադի կամ Ագուլիսի ոստիկանական շրջանը իւր բնական դիրքի շնորհիւ բաժանւում է հինգ ձորի. Ա. Օրդուբադի, բ. Ագուլիսի, գ. Վանանդի, դ. Ցղնայի և ե. Բստի։ Իւրաքանչիւր ձորը, որ Պարսից տիրապետութեան ժամանակ կազմում էր մի առանձին մահալ, այժմ այլևս առանձին միութիւն չի ներկայացնում, այլ բաժանուած է միքանի գիւղական հասարակութիւնների, որոնցից իւրաքանչիւրը կառավարւում է մի տանուտէրով։ Բոլոր գիւղական հասարակութիւնների թիւն է 14, իսկ սրանց կազմող գիւղերի թիւը՝ 55։

Անցնենք քաղաքի և գիւղերի նկարագրութեան՝ հետևելով բնական դիրքին, ձորից ձոր։

## ՕՐԴՈՒԲԱԴԻ ՁՈՐ

Այս շրջանի կենտրոնական քաղաքը գտնւում է այն հովտում, որ տարածւում է շրջանի արևելահարաւային մասում։ Հովիտն ունի 2—7 վերստ լայնութիւն և ձգւում է մինչև Արաքսը։ Արևելեան կողմում ձգւում են միքանի անանուն, լերկ բլուրներ, իսկ արևմտեան կողմում Ալանգեազի մերկ շղթայի ճիւղը։ Հովտի միջով անցնում է Օրդուբադի գետակը, որ սկիզբն է առնում Խաչլի-դաղ լեռից։ Ամբողջ հովիտը բաւականաչափ թեքուած է հիւսիսից հարաւ, դէպի Արաքսը, հողն էլ աւազային է, խառնուած կրի և սևահողի հետ. այնպէս որ անձրևի ջուրը այստեղ կանգ չի առնում և կազմում է նեխուած փոսեր, որոնք տարածում են օդի մէջ ժանտահոտութիւն, ինչպէս Նախիջևանում։ Եւ եթէ այս ասիական քաղաքի նեղ փողոցների կեղտոտութիւնը չլինէր, օդը չափազանց մաքուր կը լինէր։ Կլիման բաւական տաք է. մինչև կէսօր հողը, իսկ կէսօրից յետոյ արևելեան կողմում գըտ-

նուած լերկ, քարքարոտ լեռները սաստիկ տաքանալով տարածում են անտանելի ջերմութիւն, որ տեւում է մինչև երեկոյեան ժամը 9. միայն այնուհետև մեղմանում է և փչում է հիւսիս—արևելեան քամին։ Այս տօթը բաւականաչափ մեղմանում է բազմաթիւ, յըս-տակ աղբիւրների (մօտ 70) ազդեցութեամբ, որ համարեա ամէն մի տան գաւթում հոսում է։ Շնորհիւ սեաւհողի ու ջերմ կլիմայի հովիտը պատած է սքանչելի այգիներով, ուր առատութեամբ բուսնում են, բացի խաղողի բազմաթիւ տեսակներից և այլ պը-տուղներից, նաև շալալի և թալալի։

Այս սքանչելի հովտի մէջ զետեղուած է Օրդուբադ քաղաքը, Երասխից հազիւ 3 վերստ և նրա ջրի մակերևոյթից միայն հա-զար ոտնաչափ բարձր, 38°, 49'20'' հիւսիսային լայնութեան և 63°, 43'20'' արևելեան երկարութեան տակ. 3119 ոտնաչափ բա-ցարձակ բարձրութեան վրայ; յենուած պորփիւրեայ, սևորակ ժայռերի վրայ։

Որքան գեղեցիկ է հովիտը, այնքան տգեղ է քաղաքը, որովհետև փողոցները սաստիկ նեղ են, ծուռն ու մուռ և հողէ պարսպով պատած, որի յետև միայն գտնւում են տները. այնպէս որ շատ քիչ, և այն էլ միայն վերջին ժամանակներս շինուած տների պատուհաններն են բացւում փողոցի վրայ։ Միմիայն մի, նոր բացուած փողոց յիրաւի գեղեցիկ է, որովհետև ուղիղ է, լայն, ծառազարդ և մայթերի մօտից ջուր է հոսում։ Գեղեցիկ է նաև այն քարաժայռը, որի վրայ հնումը մի միջնաբերդ էր գտըն-ւում, իսկ այժմ հայոց փոքրիկ, հասարակ եկեղեցին (Ս. Ստե-փաննոս) է կառուցուած և առաջը զբօսավայր դարձրած, որ-տեղից թէև մի սքանչելի տեսարան է բացւում, սակայն ինքը զուրկ է նոյն իսկ կանոնաւոր ծառերից. ուստի և շատ իրաւացի է թւում Նեֆեդևվի նկատողութիւնը, թէ Օրդուբադը կարելի է համեմատել մի գեղանի կնոջ հետ, որ փայլում է ադամանդներով, բայց ծածկուած է ցնցոտիներով [1]։

Քաղաքը, որ բռնում է 45 քառ. վերստ կամ 4725 դեսեա-տին, բաժանուած է հինգ թաղի. Սար-շաղար, Մինգիս, Ամպա-րաս, Քիւրդատար և Իւչ-Տարանկեայ։ Այստեղ բացի հայոց ան-շուք եկեղեցուց, կայ նաև մի ռուսաց, բաւական գեղեցիկ եկե-ղեցի, շինուած ազուլեցի Արասխանեանի ծախսով։ Քառասուն և մէկ մզկիթներից նշանաւոր են 5—ը, թէպէտ և սրանք էլ ճար-տարապետական տեսակէտից առանձին արժէք չունեն։ Սրանց

[1]) Взглядъ на Армянскую область. Изъ путевыхъ записокъ Н. Нефедьева. Спб. 1839. եր. 70

վրայ պէտք է աւելացնել և այն թաղակապ սրբատեղին, որ գտըն-ւում է մօտակայ ժայռերից մէնի վրայ և որի մասին պատմւում է թէ Ալին իւր անտեսանելի մատով արաբական տառերով դրոշ-



ՕՐԴՈՒԲԱԴ

մել է ժայռի վրայ «Ալի, մարդ Աստուծոյ» ստորագրութիւնը, որը, սակայն, Նեֆեդէվը «չնայելով որ ամէն կերպ սրել է իւր տեսողութիւնը, բայց և այնպէս չէ կարողացել նկատել» [1]։

Մզկիթների առջև տարածւում են փոքրիկ հրապարակներ, որոնք Օրդուբադում ծառայում են իբր հասարակութեան ժողո-

[1]) Ցէչ. Գ. եր. 71.

վատեղի, և ուր «մահմեդական ծուլութիւնն ու հայկական գործու-նէութիւնը որոնում են իրենց սովորական զուարճութիւնը» ¹)։

Քաղաքի հնութիւններից ամենից նշանաւորը մի սօսի է, որ իւր տեսակի մէջ մեծագոյնն է, ինչպէս վկայում է Բեցհոլդ բնագէտ



ՀԻՆԱՒՈՒՐՑ ՍՕՍԻՆ ՕՐԴՈՒԲԱԴՈՒՄ

այցելում 1863 թուին ²)։ Սա գտնւում է քաղաքի ներքին մասում, մի մզկիթի հրապարակում. բունը 17 արշին շրջապատ ունի և 6 արշին բարձրութիւն, կայծակի հարուածներից ջախջախուած։ Սաղարթախիտ ճիւղերը ծածկում են հրապարակի մեծ մասը։ Բնի միջի մասը փթել է և առաջացել է 4 արշին 12 վերշոկ երկարու-

¹) Нефедьевъ. յ. գ. եր. 69.
²) Petzhold. Der Kaukasus. I. 263. յեղ. Սխտականում եր. 318.

*թեան և 3 արշին 5 վերշոկ լայնութեան մի դադարկութիւն, ուր երբեմն կօշկակարի մի խանութ էր զետեղուած և ուր յաճախ 8—10 մարդ հաւաքւում են, սեղան դնում, թէյ խմում և թուղթ խաղում։ Այս սօսին, որի մասին բոլոր այցելուները հրճուանքով խօսում են, տեղացիների ասելով մօտ հազար տարեկան է։*

*Մի ուրիշ հնութիւն համարւում է մի հին կարաւանատեղու աւերակներ, որի միջից մի ստորերկրեայ մուտք տանում է այն փոքրիկ եկեղեցին, որ, ինչպէս ասում են, շինուած է եղել Բարթուղիմէոս առաքեալից և կոչւում է Տեառն ընդ առաջ* [1]*, և որի հիմքերի վրայ այժմ բարձրանում է պարսից գլխաւոր մզկիթը* [2]*։*

*Քաղաքում կայ պարսից մի մէտրեսէ (դպրոց) բաւական գեղեցիկ շէնքի մէջ ամփոփուած և մի պետական քաղաքային դպրոց։ Կայ նաև մի զինուորական հիւանդանոց, փոստատուն, հեռագրատուն, մի հիւրանոց, և այլն։*

*Հայերն այստեղ գաղթել են 1827 թուին Մուժամբարից, Դուխարղանից ու Թաւրիզից և պարապում են գլխաւորապէս արհեստներով և առևտրով, այժմ նոր նոր սկսել են այգիներ գնել և այգեպանութեամբ զբաղուել։*

*Օրդուբադում կայ 7 մետաքսի մանարան և ոլորող գործարաններ* (шелкомотально—шелкокрутительное)*, որոնց մէջ նշանաւորը Բաբայեանինն է։ Սրանց մէջ աշխատում են 211 հոգի, որոնց տարեկան արդիւնաբերութիւնը հասնում է 66760 ր.։*

*Բնակիչները ընդամէնը 2244 ար. 2006 իգ. խմիասին՝ 4250 հոգի են, որոնցից հայ են 179 ար. 173 իգ. խմիասին 352 հոգի. Թուրք շիիներ՝ 2063 ար. 1828 իգական. ռուսներ՝ 2 ար. 5 իգական։*

*Օրդուբադը հայերիս մտաւոր-բարոյական զարգացման բաւականաչափ նպաստել է տալով «մեր դրամատիկական առաջնակարգ ուժերից մինին՝»* [3] *պ. Գէորգ Պետրոսեանին։ Սա ծնուել է այստեղ 1860 թուին, սկզբնական կրթութիւնն ստացել է հայոց ծխական դպրոցում և ապա գնացել է Մոսկուա՝ Լազարեան ճեմարանը, սակայն չաւարտելով հին լեզուները՝ եկել է Թիֆլիս և մտել ռէալական ուսումնարանը, ուր և՛ աւարտել է իւր ուսման ընթացքը։ Դեռ աշակերտ ժամանակ Օրդուբաթեան կեղծ անունամբ մասնակցելով 1881—82 թ. հայ թատերական մշտական խմբի ներկայացումներին, պ. Պետրոսեանը իւր վրայ է դարձրել հասա-*

---

[1]) *Սիսական*, եր. 318.

[2]) Статистическое описаніе Нахичеванской провинціи. СПБ. 1833 г. եր 194

[3]) *Մշակ 1903 թ. № 159.*

*րակութեան ուշադրութիւնը, որ կարծում էր թէ նա «ժամանակով կարող է զարդարել ոչ միայն մեր, այլ և աւելի զարգացած բեմը [1])»։*

*Այս մշտական խմբի քայքայուելուց յետոյ պ. Պետրոսեանը գնացել է Ռուսաստան և խաղացել Մոսկուայի* «Малый театръ-*ում և Պետերբուրգի ժողովարաններում, ուր «ամէն անգամ երիտասարդ դերասանը գրաւել է հասարակութեան հրճուանքը [2])»*

*Սիրելով իւր մայրենի բեմը, «աստուածային կայծից ոչ զուրկ [3])» պ. Պետրոսեան վերադարձել է Թիֆլիս և 1891 թուին, «Ադամեանական բեմի աւերակների վրայ կանգնել է մայրենի թատրոնի նոր շէնք [4])», կազմակերպել մշտական խումբ, որը, սակայն, երկար չէ տևել։ Այնուհետև մինչև այժմ սիրով և մեծ եռանդով ծառայելով հայկական երերուն բեմին, «մեր դերասանական խմբի անխոնջ և բազմաշխատ մշակը [5])» երբեմն Բագւում, երբեմն Թիֆլիսում, ամառները Շուշում և այլ գաւառական քաղաքներում քսան և հինգ տարի շարունակ ներկայացումներ է տալիս, ամէն տեղ արժանանալով սիրալիր ընդունելութեան։*

*Օրդուբադի հիւսիս արևմտեան կողմը գտնւում է Հանդամէջ կամ Անդամէջ գիւղը, որ այգիներով կպած է Օրդուբադին և նըրանից հազիւ երկու վերստ հեռու է։ Հանդամէջը բաժանւում է երկուսի՝ Վերին և Ներքին. առաջնում ապրում են միայն Թուրքեր, իսկ երկրորդում՝ գլխաւորապէս հայեր։ Հայկական մասում կայ մի բաւական մաքուր, Թաղակապ եկեղեցի, մօտը բաւական գեղեցիկ սենեակներ՝ քահանայի բնակութեան յատկացրուած և մի այգի։ Ամբողջ գիւղը շատ գեղեցիկ տեսք ունի, ծածկուած լինելով բարձրուղէշ բարդիներով։ Տները ևս բաւական գեղեցիկ են։ Այժմ այս Ներքին Անդամէջը այլևս գիւղ չի համարւում, այլ Օրդուբադի արուարձան։ Բնակիչները բնիկ են։ Ներքին Անդամիջում՝ ընդամէնը 37 ծուխ, 170 ար. 150 իգ. իմիասին՝ 324 հոգի, որից 21 ծուխը 77 ար. 69 իգական, իմիասին՝ 146 հոգի հայեր են, իսկ 16 ծուխը, 93 ար. 85 իգ. շիի Թուրքեր։*

*Վերին Անդամիջում բոլորն էլ շիի Թուրքեր են 35 ծուխ, 157 ար. 104 իգ. ի միասին՝ 213 հոգի։*

*Օրդուբադից դէպի արևելահիւսիս ձգւում է մի ձորակ, որի միջով հոսում է մի վտակ։ Այս ձորակի վերին մասում գտնւում է Գանձակ կամ Գանձա գիւղը, որ երբեմն հայաբնակ, իսկ այժմ*

---

1) *Մշակ 1882 թ. 12 Մայիսի.* 2) *Տարազ 1892 թ. № 7, ուր և զետեղուած է պ. Պետրոսեանի մեծադիր պատկերը։*
3) *և* 4) Кавказъ 1892 г. 11 января.
5) *Արձագանք 1892 թ. 12 յունուար*

Թրքաբնակ է։ Այստեղ դեռ ևս կանգուն է մի հինաւուրց եկեղեցի, որ մինչև այսօր էլ ուխտատեղի է համարւում շրջակայ հայերի համար և լաւ պահպանւում է։ Բնակիչները 28 ծուխ են։

Գանձակից երկու վերստ ներքև, բարձր բարդիների տակ, նոյն վտակի ափին տարածւում է «Անապատ», հնուց հայաբնակ, բայց այժմ Թրքաբնակ գիւղը։ Այստեղ ևս կայ մի ընդարձակ եկեղեցի բոլորովին աւեր, մի փոքրիկ մատուռ և ձորի լանջին մի ընդարձակ գերեզմանատուն։

Անապատից ներքև միքանի վերստ տարածութեամբ ձգւում են այգիներ և ծառաստաններ, ապա ամայի դաշտ՝ մինչև Արաքս գետը։

Այս ձորից դէպի արևելք այլևս ձոր չկայ, միայն մի նեղ ճանապարհ Արաքսի ափով գնում է դէպի Կարճևան։ Իսկ այս ճանապարհից դէպի վերև, սարերում գտնւում են հաւանականօրէն շատ հին Քէօթամ և Քլիթ Թրքաբնակ գիւղերը։ Այս երկուսի մէջ բարձրանում է մի անանուն լեառն, որի գագաթին կայ մի ընդարձակ քարայր. տեղական աւանդութիւնն ասում է, թէ այստեղից մի ստորերկրեայ անցք ձգւում է մինչև Արաքսը։ Այրի մէջ կան բազմաթիւ, գեղեցիկ ստալակտիտներ։

Թէ Քեօթամի և թէ Քլիթի բնակիչները շիի Թուրքեր են. առաջնում՝ 20 տուն. 51 ար. 77 իգ. ի միասին 128 հոգի. իսկ երկրորդում՝ 32 տուն. 157 ար. 132 իգ. ի միասին՝ 289 հոգի։

Յաւերժայիշատակ հայր Ալիշանը ենթադրում է թէ Քլիթը հաւանականօրէն նախնի Գողթն աւանը պիտի լինի, որի անունով և՛ կոչուած է ամբողջ գաւառը։ Արդեօք աւելի հաւանական չէ՞ր լինել ենթադրել, որ «Քէօթամ»-ն է եղած այդ Գողթնը, քանի որ սա թէ հնչմամբ աւելի մօտ է Գողթան բառին և թէ դիրքով՝ Օրդուբադին, այն տեղին, որի մասին Ստ. Օրբելեան ասում է. «Իսկ սուրբ առաքեալն (Բարդուղիմէոս) շինէ եկեղեցի ի Գողթն յարեւմտից եզերն»... և անուն կոչեցին Տեառն ընդ առաջ. և արարին նշանս մեծամեծս։ Քանզի էր ջուր վնասակար ի յՕրդվատ գիւղ... և աղօթեցին յանկարծակի, և կորուսին զջուրն»։ Արդ յայտնի է, որ Տեառնընդառաջ եկեղեցին գտնւում է Օրդուբադում, ուղիղ արևմուտք Քեօթամից, մինչդեռ Քլիթից բաւական հեռու է և արևմտահիւսիս է գտնւում։

Քլիթից փոքր ինչ արևելահիւսիս, մի ապառաժոտ բլրի գագաթին տեղաւորուած է Կարճևան հայաբնակ գիւղը, որ այս շրջանի արևելեան սահմանի վերջին գիւղն է։ Սա բաւական գեղեցիկ տեսք ունի, մանաւանդ ջրընկէցը, կլիման համեմատաբար աւելի մեղմ է և առողջարար, ուստի և մի ժամանակ այստեղը

եղել է խաների ամարանոց, որոնց ապարանքի և փոքրիկ ամրոցի հետքերն են այժմ մնում։ Գիւղի մօտ գտնւում է երկու մարգակերպ քարեր, որոնց տեղացիներն «հարս ու փեսայ» են անուանում և որոնց մասին պատմում են, թէ խանի հարեմն ընկնելու վտանգից ազատելու յուսով փեսան իւր գեղեցիկ հարսին առել է և փախել, սակայն խանի ծառաները հասել են սրանց յետևից, որոնք երկիւղից քար են կտրել։ Գիւղից 4—5 վերստ հեռու, դէպի հիւսիս Սաղալ լերան լանջին գտնւում է Նուխուտի ս. Յովհաննէս և նրա քրոջ ուխտատեղին, որ մի փոքրիկ շէնք է կէսը ժայռի մէջ ամփոփուած և շուրջը միքանի սենեակներ։ Փոքր ինչ հեռու, մի բարձր, հարթ քարաժայռի վրայ գտնւում է սրբի «Բարէ-Աւետարանը»։ Դէպի ուխտատեղին տանող ճանապարհը շատ դժուարանցանելի է [1]։

Բնակիչները թէպէտ բնիկ են, և իրենց սովորութիւններով, հագուստով և նոյն իսկ տիպով շատ նման են մեղրեցիներին, սակայն բարբառը բաւական ենթարկուած է զօկերի լեզուի ազդեցութեան։ Ընդհանրապէս բաւական քաղաքակրթուած են, ունին բաւական գեղեցիկ, կահաւորուած սենեակներ, մաքուր նիստ ու կաց։ Սրանցից նշանաւոր է եղել իւր քաջութեամբ Աղայեանց Մելքոնը, որ Պարսից տիրապետութեան ժամանակ հերոսութեամբ պաշտպանել է գիւղը Արաքսի աջ ափի բնակիչների յարձակումներից։ Բնակիչներն ընդամէնը 38 տուն են, 262 ար. 211 իգ. ի միասին՝ 473 հոգի։ Բացի սովորական պարապմունքից, սրանք պարապում են նաև խաշնարածութեամբ։

Կարճևանի և Մեղրիի միջև բարձրացող լերան վրայ գտնւում է Մանգած-խաչ աւերակ ուխտատեղին, իսկ դէպի արևելահիւսիս, դեռ չհասած Ագարակու պղնձահանքին (ընկնում է Զանգեզուրի գաւառում), գտնւում է մի ուրիշ ուխտատեղի Ըկնըցաւու-խաչ անունով, ուր ուխտ են գնում աչքացաւ ունեցողները։

## ԱԳՈՒԼԻՍ ԿԱՄ ՈՍԿԷ ՋՈՐ

Օրդուբադից դէպի արևմուտք, հազիւ 3 վերստ հեռու, հիւսիսից դէպի հարաւ ձգւում է մի ձոր, որ կոչւում է Ագուլիսի կամ Ոսկէ ձոր։ Առաջին անունն ստացել է այստեղ գտնուած մեծ աւանից, երկրորդ անունը տուել են նրան Թուրքերը, տեսնելով

[1]) Այս ուխտատեղու վերաբերութեամբ աւանդութիւններ տես «Հաւատք»-ի բաժնում։

*եղել է խաների ամարանոց, որոնց ապարանքի և փոքրիկ ամրոցի հետքերն են այժմ մնում։ Գիւղի մօտ գտնւում է երկու մարդակերպ քարեր, որոնց տեղացիներն «հարս ու փեսայ» են անւանում և որոնց մասին պատմում են, թէ խանի հարեմն ընկնելու վտանգից ազատելու յուսով փեսան իւր գեղեցիկ հարսին առել է և փախել, սակայն խանի ծառաները հասել են սրանց յետևից, որոնք երկիւղից քար են կտրել։ Գիւղից 4—5 վերստ հեռու, դէպի հիւսիս Սաղալ լեռան լանջին գտնւում է Նուխուտի ս. Յովհաննէս և նրա քրոջ ուխտատեղին, որ մի փոքրիկ չէնք է կէսը ժայռի մէջ ամփոփուած և շուրջը միքանի սենեակներ։ Փոքր ինչ հեռու, մի բարձր, հարթ քարաժայռի վրայ գտնւում է սրբի «Բարէ-Աւետարանը»։ Դէպի ուխտատեղին տանող ճանապարհը շատ դժուարելանելի է [1]։*

*Բնակիչները թէպէտ ընիկ են, և իրենց սովորութիւններով, հագուստով և նոյն իսկ տիպով շատ նման են մեղրեցիներին, սակայն բարբառը բաւական ենթարկուած է զօկերի լեզուի ազդեցութեան։ Ընդհանրապէս բաւական քաղաքակրթուած են, ունին բաւական գեղեցիկ, կահաւորուած սենեակներ, մաքուր նիստ ու կաց։ Սրանցից նշանաւոր է եղել իւր քաջութեամբ Աղայեանց Մելքոնը, որ Պարսից տիրապետութեան ժամանակ հերոսութեամբ պաշտպանել է գիւղը Արաքսի աջ ափի բնակիչների յարձակումներից։ Բնակիչներն ընդամէնը 38 տուն են, 262 ար. 211 իգ. ի միասին՝ 473 հոգի։ Բացի սովորական պարապմունքից, սրանք պարապում են նաև խաշնարածութեամբ։*

*Կարճևանի և Մեղրիի միջև բարձրացող լեռան վրայ գտնւում է Մանդած-խաչ աւերակ ուխտատեղին, իսկ դէպի արևելահիւսիս, դեռ չհասած Ագարակու պղնձահանքին (ընկնում է Զանգեզուրի գաւառում), գտնւում է մի ուրիշ ուխտատեղի Ըկնըցաւու-խաչ անունով, ուր ուխտ են գնում աչքացաւ ունեցողները։*

## ԱԳՈՒԼԻՍ ԿԱՄ ՈՍԿԷ ՋՈՐ

*Օրդուբադից դէպի արևմուտք, հազիւ 3 վերստ հեռու, հիւսիսից դէպի հարաւ ձգւում է մի ձոր, որ կոչւում է Ագուլիսի կամ Ոսկէ ձոր։ Առաջին անունն ստացել է այստեղ գտնուած մեծ աւանից, երկրորդ անունը տուել են նրան թուրքերը, տեսնելով*

*[1] Այս ուխտատեղու վերաբերութեամբ աւանդութիւններ տես «Հաւատք»-ի բաժնում։*

որ այստեղի բնակիչներն՝ անյիշատակ ժամանակներից վաճառականութեամբ պարապելով՝ մեծ քանակութեամբ ոսկի են դիզել։

Այս ձորի երկու կողմում ձգւում են բուսականութիւնից լիովին զուրկ, ապառաժոտ բլուրներ, որոնք համարւում են Ալանգեազի ճիւղաւորութիւններ։ Ձորը հարաւային մասում բաւա-



ՎԵՐԻՆ ԱԳՈՒԼԻՍ

կան լայնանում է, այնպէս որ այդտեղ գետեղուած գիւղը տեղի դիրքով Դաշտ է կոչուել։ Ձորի միջով հոսում է մի գետակ, որ սկիզբն է առնում Նգիզէհ գիւղի մօտ միախառնուող երեք առուակներից։ Այս գետակը ամառը սաստիկ փոքրանում է և չի էլ հասնում Արաքսին, սակայն գարնան սկզբին ձիւնը հալչելիս կամ

յորդ անձրև և կամ կարկուտ գալիս սաստիկ հեղեղւում է և երբեմն, ինչպէս 1884 թ. մեծամեծ վնասներ պատճառում։ Ամբողջ ձորը ծածկուած է այգիներով։

Ձորի ամենաբարձր, հիւսիսային մասում, ուր ձորը սաստիկ նեղանալով կիրճեր է կազմում, ապառաժոտ մի տեղում զետեղուած է Նպիղէն փոքրիկ գիւղը, որ ունի 22 տուն Թուրք բնակիչ, 178 ար. 94 իգ. ի միասին՝ 272 հոգի։ Սրանք չափազանց աղքատ են, մեծ մասամբ պարապում են խաշնարածութեամբ և մշակութեամբ։ Այստեղից դէպի հիւսիս տարածւում են արօտատեղիներ և անջրդի վարելահողեր։ Արօտատեղիներից ամենամեծը կոչւում է «Փիրի-քաշուան», ուր կան 20—30 հատ հինաւուրց, մեծ ծառեր, որ այժմ տեղացի Թուրքերից սուրբ են համարւում։ Ինչպէս երևում է հետքերից, այս կողմերում հնումը անտառ է եղել։ Այստեղից մի նեղ կածան տանում է դէպի Լիշկ հայաբնակ գիւղը։

Նպիղէից ցածր գտնւում է Վերին-գետ գիւղը, որ այժմ միացած լինելով Ագուլիսի հետ, նրա մի թաղն է համարւում։

Ագուլիսը հնումը կոչուել է Արգուլիք, ինչպէս գրուած է Սարգիս կաթուղիկոսի կոնդակում (ԺԱ. դարում), և ինչպէս գրում է Զաքարիա Վաղարշապատցի գիտնական վարդապետը ԺԷ. դարի կիսին՝ Աստուածաշնչի յիշատակարանի մէջ։ Այժմ գրականութեան մէջ կոչւում է Ագուլիս, իսկ տեղական ժողովրդի բերանում՝ Իւգիւլիս։

Այս անուան ճիշտ բացատրութիւնը յայտնի չէ. ոմանք ըստուգաբանում են իբր «Այգի-լիք», ոմանք էլ պատմում են աւանդաբար, թէ ս. Թադէոս առաքեալը մի գիշեր մի քարակոյտի տակ քնել է և երբ աչքը բաց է արել, արդէն լուսացած է եղել և իբր թէ այս պատճառով ասել են Ակն ի լոյս, որը աղաւաղուելով դարձել է Ագուլիս [1]։ Այս քարակոյտը, որ գտնւում է Ագուլիսի և Հանդամիջի միջև ձգուող մի փոքրիկ ձորակում, այժմ էլ ուխտատեղի է համարւում։

Այս գիւղը փոքր ինչ ներքև գտնուած համանուն գիւղից տարբերելու համար ստացել է «Վերին» մակդիրը։

Այնտեղ, ուր զետեղուած է Ագուլիսը, ձորի լայնութիւնը հազիւ 1 1/2 վերստ լինի, այնպէս որ գիւղը տարածւում է ձորի երկարութեամբ մօտ 3 վերստ։ Ամենամօտիկ լեառը տեղական լեզուով կոչւում է Գինդարու, իսկ սրանից ներքև՝ Աղասար։ Արևմտեան կողմի սարն էլ «Հուռի գլուհ» (հորի գլուխ) է կոչւում,

1) Սիսական եր. 325.

*Թերևս այն պատճառով, որ այդ սարի լանջին կայ մի հոր, որտեղից Թոնրի շինելու համար կաւ են հանում։*

*Ագուլիսը բաժանուած է հետևեալ 10 թաղերի. ա. Վերինզետ, որ ինչպէս ասացինք, առանձին գիւղ է համարւում, բ. Շռնատակ, որ այսպէս կոչւում է մօտակայ սարից վազող ջրուանի (ջրնկէց) պատճառով. գ) Վանքի թաղ, ուր գտնւում է Ս. Թովմա առաքեալի վանքը. դ. Նուրիջանաց մահլա. ե. Լենջ (լանջ), զ. Վեարին թաղ (վերին թաղ) և է. Խուծոծուր (Խուցաձոր) ը. Մալէյի խուպան (ամենալաւ մաս)։ Սրանք հայաբնակ են, իսկ հետևեալ երկուսն էլ՝ թրքաբնակ, ա. Չիգ-փուղ (Ջիգփողոց) և բ. Խշկաշէն։*

*Ագուլիսի փողոցները շատ անկանոն և, մանաւանդ, սաստիկ նեղ են, այնպէս որ կառքեր չեն կարող անցնել։ Տների մեծագոյն մասը քարաշէն են, երկու և նոյն իսկ եռյարկանի, պարտէզներով շրջապատուած։ Գրեթէ իւրաքանչիւր թաղում բարձրանում է մի կամ միքանի գեղեցիկ, քարաշէն եկեղեցիներ, որոնց ընդհանուր թիւը հասնում է տասն և մէկի—մի ապացոյց, որ Ագուլիսը մի ժամանակ բաւական բազմամարդ է եղել։ Սրանցից ամենանշանաւորը թէ իւր պատմական անցեալով և թէ ճարտարապետական շինուածքով Ս. Թովմայի վանքն է, որի նմանութեամբ և՛ շինուած են միւս եկեղեցիները. ուստի մանրամասն նկարագրելով ս. Թովմայի վանքը, չենք կամենում նոյն կերպ նկարագրել նաև միւս եկեղեցիները, մանաւանդ որ սրանք ճարտարապետական տեսակէտից մի առանձին նշանակութիւն չունին։*

*Վանքից դէպի հիւսիս գտնւում է Ամենափրկիչ անունով փոքրիկ, երկու սիւնի վրայ հաստատուած մատուռը, որի հարաւային կողմում ամփոփուած է Ս. Բարդուղիմէոս առաքեալի Կումսի աշակերտի մարմինը։ Մատուռի դրան վերև կայ մի խաչքար՝ հետևեալ արձանագրութեամբ. Խչս յիտկ Ջանասենյ Ղասնյ։ Խաթնչնյ Փերյ ավնըիկ։ Ազիկ։ ՋՀԹ։ Աւանդաբար պատմում են, թէ այստեղ գտել են արիւնոտ քարեր կտաւի մէջ փաթաթած, որ կրկին ամփոփել են գտնուած տեղում։*

*Այստեղից փոքր ինչ բարձր գտնւում է ս. Ստեփանոս քարաշէն եկեղեցին, եռայարկ զանգակատնով, որ նորոգուած է 1845 թ. մահտեսի Յովհաննէս Տէր-Ջանեանի ծախքով։*

*Շռնատակ թաղում գտնւում է ս. Մինաս անունով փայտածածկ եկեղեցին, իսկ սրանից փոքր ինչ ցած՝ Գինդարու լերան ստորոտում բարձրանում է Ս. Քրիստափորի սրբատաշ, գեղեցիկ եկեղեցին, որ միանգամայն մի թոյլ ընդօրինակութիւն է Ս. Թովմայի վանքի։ Եկեղեցիների մէջ սա ամենագեղեցիկն է։ Ահա թէ*

ինչ է պատմում սրա մասին Զաքարիա Ագուլեցին իւր օրագրութեան տետրում (եր 44)։ Նա ասում է թէ այս եկեղեցին ս. Թադէոս առաքեալն է հիմնարկել և որ 1660 թուին, պարսից և օսմանցոց պատերազմի միջոցին շտապով վերանորոգել են, սակայն 10 տարուց յետոյ ինքն իրեն փուլ է եկել, ուստի և «Վերին Թաղի խօջայ Գիւլնազարի» և ուրիշների վերակացութեամբ 1671 թուին սկսել են հիմնովին վերաշինել և 1675-ին աւարտել են։ Հետաքրքրական է, որ պատերի մէջ խաչքարեր էին կանգնեցնում իբր յիշատակ այն անձի, որ եկեղեցուն մի որևէ գումար էր նուիրում։ Զաքարիան ասում է. «Այս եկեղեցուս գ. (3) որմին իե (25), ումն պատկեր վասն յիշատակի գրեցին։ Այս դավտար գրող Զաքարէս մին Աստուածածնոյն պատկերն ես գրել տվի. ամէն խաչի թէ պատկերի՝ մէկ մէկ թուման տվին եկեղեցուն [1])»։

Ս. Քրիստափորի գաւթում շինուած է օրիորդաց դպրոցի շէնքը, որ կառուցուած է 1867 թուին սոյն եկեղեցու գումարներով։

Սրանից բարձր գտնւում է փոքր Աստուածածին մատուռը։

Գետի արևելեան կողմում Միջին փող թաղում գտնւում է «Անանց լոյս», «ս. Յակոբ Ալփիան», իսկ այժմ «Ընձանաց լոյս» կոչուած եկեղեցին, որ 1879 թ. Տէր Միքայելեանները հիմնովին քանդելով սկսել են վերաշինել, սակայն դեռ ևս չեն աւարտել։

Շուկայից ներքև գտնւում է Ս. Շմաւոն քարաշէն, գեղեցիկ եկեղեցին, իսկ Ճնձորի թաղում՝ ս. Յովհաննէս, որի ձախակողմեան խորանում թաղուած է Շահ-Աբասից նահատակուած Տէր Անդրէասի մարմինը։ Եկեղեցին ունի զանգակատուն, առջևը պարտէզ, աղբիւր և քահանայի բնակութեան յատկացրուած տուն։ Եկեղեցու գմբէթի վրայ, ներսից, գրուած է.

Կառուցաւ հոյակապ եւ հրաշազան եւ վայելուչ երեք ըն-
մեայ սբ եկեղեցիս յանուն սբ Ածածնի, սբ Մկրտչի եւ սբ
Նախավկայի ի ՌՃԺԲ. իսկ ի ՌՃԼԸ. զաճեցաւ եւ ի ՌՃԺԲ.
զարմանալի կաթողիկէս շինեցաւ ի փառս Քսի Ածոյ։

Բաւական գեղեցիկ է փայտի մանր կտորներով, սատափով և փղոսկրով կերտուած դուռը, որի վերև գրուած է.

Յիշատակ է դուռնս այս Հախումին եւ կողակցին եւ որ-
դւոցն նոցին. Ած ողորմի աշխատաւորացն թվին ՌՃԼԱ.

Այս թաղում, «Փոքր Սար» կոչուած բլրի ստորոտում կայ նաև ս. Յակոբ անունով մի փոքրիկ եկեղեցի, որ ուխտատեղի է համարւում։

Գիւղից դուրս, նրա արևելեան կողմը, սարի լանջին, որտե-

---

[1]) Զաքարիա Ագուլեցի. եր. 44.

*ղից մի շատ գեղեցիկ տեսարան է բացւում, գտնւում է ս. Աստուածածնի եկեղեցին, որ համանուն եկեղեցուց տարբերելու համար «Մեծ» մակդիրն է ստացած։*

*Աւանդաբար պատմւում է, թէ սա կառուցուած է եղել և թէ ս. Թադէոս առաքեալն է կռքերը կործանել ու այդ միևնոյն տեղում եկեղեցի հաստատել։ Բոլոր ագուլեցիները պատմում են, որ այդ եկեղեցին վերանորոգելիս կռքեր են գտել, և մոլեռանդութեամբ կոտրատել։ Այս մասին բաւական հանգամանօրէն գրել է արժ. Տէր Յակոբը իւր տետրում այսպէս. «1847 թուին երբ Շուշեցի Շխեանց Կարապետ աղէն խոլերայի պատճառաւ Թարվիզուց փախչելով եկած էր Ագուլեաց Դաշտը, Դաշտից ուխտ գնաց Աստուածածին։ Աստուածածնայ նորոգութեան համար հարիւր ոսկի ընծայելով պատուիրեց Սարգիս Սարուխանբէկովին, որ իւր հսկողութիւնով նորոգել տայ։ Այն ժամանակ Աստուածածնայ եկեղեցին մէջտեղից պատով կտրած երկուսի էր բաժանուած. պատի մէջտեղից դուռ ունէր՝ դրսի մասից ներսի մասը մտնելու. դրսի մասում, դրան գլխին կաւից շինուած սեղան ունէր, դրան աջ ու ձախ կողմից ստուեճաններ. միացնելու համար միջի պատը քանդած ժամանակ կաւից շինուած սեղանի միջից խեցեայ և չուգունեայ կուռքեր է դուրս գալիս։ Նա և իւր կնքաւոր Օհաննէս Մակարովը... մոլեռանդութիւնով խփում են քարերին՝ ջարդ ու փշուր անում։ Միքանի միջոց անցնելուց յետոյ այս անցքը նոքա պատմեցին ինձ, որ շատ ափսոսացի»։*

*Ամէն տարի, Աստուածածնի տօնին գրեթէ բոլոր ագուլեցիները, ոմանք նոյն իսկ բոբիկ հետևում են հոգևորական դասին, որ թափոր անելով բոլոր 10 եկեղեցիներում, բարձրանում է Ս. Աստուածածնի այս տաճարը և այստեղ պատարագ մատուցանում, հասարակական մատաղ անում։ Հետևեալ օրն էլ Ներքին Ագուլեցիք են նոյն թափորով, խաչով խաչվառով գալիս այստեղ, պատարագ մատուցանում, մատաղ անում։ Այս բոլորն ապացուցանում են, որ արդարև այս տեղում մի ժամանակ մի նշանաւոր մեհեան է եղել։ Եկեղեցու կողքին կայ մի աղբիւր և մի ընդարձակ աւազան՝ շատ հին ժամանակից։ Կան նաև միքանի սենեակներ պահապանի և ուխտաւորների համար։*

*Գիւղի գրեթէ կենտրոնում ձգւում է շուկան, որ երկու շարք խանութներից և մի փոքրիկ հրապարակից է բաղկացած։ Այստեղ կան մօտ 90 բաւական գեղեցիկ խանութներ՝ եւրոպական ապրանքներով, որոնք նոյն իսկ Օրդուբադում չի կարելի գտնել։ Ամառը ամբողջ հրապարակը ծածկուած է լինում բազմաթիւ և բազմազան մրգերով, որ չափազանց արժան են ծախւում։*

*Թէ կրպակների առջև և թէ հրապարակի շուրջը ծառեր են տնկուած։*

*Այս կրպակների հարաւային կողմը կայ մի շարք փոքրիկ կրպակներ և մի կարաւանատուն։*

*Շուկայի մօտ գտնւում է շինական դատարանը, փոքրիկ պարտիզով շրջապատուած, իսկ հանդէպը՝ պոստ-հեռագրատունը, կողքին՝ փոստային կայարանը։*

*Ագուլիսում կան 17 աղբիւրներ, որոնց ջրերը շատ մաքուր և առողջարար են։ Սրանք բերուած են 1—$1\frac{1}{2}$ վերստ հեռաւորութիւնից, և բաւական թանգ արժեն։ Սրանց ջուրը ժամերով վաճառում են այգիներ ջրելու համար, որոնց արժէքի մասին կը խօսենք արդիւնաբերութեան մասին խօսելիս։ Աղբիւրներից ամենալաւը Փըղըջի կամ Փոջի կվոճը (փողոցի աղբիւրն) է, որ գտնւում է շուկայի մօտ։*

*Ագուլիսում կայ նաև երկու բաղանիս, մի դեղատուն։ Եղել է նաև մի բաւական հարուստ գրադարան-ընթերցարան։*

*Թէև Ագուլիսը պաշտօնապէս գիւղ է համարւում, բայց և այնպէս թէ տեսքով, և թէ, մանաւանդ, բնակիչների կենցաղավարութեամբ, միանգամայն քաղաքի է նմանւում և նոյն իսկ միքանի գաւառական քաղաքներից, ինչպէս, օրինակ, Նախիջևանից, բարձր է։*

*Բնակիչներն են.*

| | Հայեր. | | | | Թուրքեր. | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Ծուխ. | ար. | իգ. | միասին | Ծուխ. | ար. | իգ. | միասին. |
| Վ. Ագուլիս. | 201. | 902. | 764. | 1666. | 56. | 346. | 247. | 593. |
| Վերին Գետ. | 55. | 297. | 242. | 539. | 12. | 90. | 48. | 138. |
| Իմիասին. | 256. | 1199. | 1006. | 2205. | 68. | 436. | 295. | 731. |

*Ուրեմն բոլոր բնակիչները միասին՝ 324 ծուխ, 1635 ար. 1291 իգ. ի միասին՝ 2926 հոգի։*

*Ագուլիսի հայ բնակիչները բոլորն էլ զօկեր են, ուրիշ գաւառացիներ չկան։ Սրանց կազմուածքը, մանաւանդ դէմքի գծագրութիւնը, համեմատելով միւս զօկ գիւղացիների հետ աւելի նուրբ է։ Զօկերէն լեզուն շատ աւելի մշակուած է, քան միւս գիւղերինը, այնպէս որ միւս գիւղերի կրթուածները աշխատում են այս բարբառով խօսել։ Կանանց մեծագոյն մասը սակաւարիւն է և գունատ, հաւանականօրէն՝ լաւ սննդի պակասութեան պատճառով։ Ներքին, հոգեկան զարգացումը շատ աւելի ստոր է քան արտաքին, հագուստի, նիստ ու կացի մէջ տիրապետող զարգացումը։*

*Ագուլիսի, որի հետ միասին և ամբողջ Գողթնի, ճարտարա-*

պետական հրաշալիքը՝ Ս. Թովմայի վանքն է, ուստի անցնենք նրա նկարագրութեան։

Ս. Թովմա առաքեալի վանքը աւանդութեան ասելով հիմ-



Ս. ԹՈՎՄԱՅԻ ՎԱՆՔԸ

նել է ս. Բարդուղիմէոս առաքեալը և այստեղ թողել է իւր աշակերտ Կումսին, որի պատճառով և՛ առանձին, Գողթնի եպիսկոպոսութիւն է սահմանուած [1])։

Ս. Թովմա առաքեալի վանքը գտնւում է Վերին Ագուլիսի և

[1]) Տես պատմական բաժնում.

Վերին-Գետի միջև, «Վանքի Թաղում»։ Վանքը պարսպապատ է, և վեց աշտարակներով ամրապնդուած։ Աշտարակներից չորսը բռնում են քառանկիւնի պարսպի չորս անկիւնները, իսկ երկուսը՝ բարձրանում են հիւսիսային և հարաւային պատերի մէջտեղերում [1]։ Վանքը կառուցուած է կարմրաւուն կոփածոյ քարերով [2], միայն պատերը միապաղաղ են, զուրկ քանդակներից և ներանկուածներից ու կամարներից։ Մինչև անգամ կաթուղիկէն շատ պարզ է, 12 պատուհաններով, որոնք կաթուղիկէի համեմատութեամբ այնքան կարճ են, որ փոխանակ գեղեցկացնելու, նոյնիսկ տգեղացնում են, մանաւանդ որ կամարներով ու քանդակներով չեն եզրափակուած։ Միւս տասն և մէկ պատուհաններն էլ, որոնցից միմիայն երկուսն են կամարակապ, թէև միաչափ են (6 ֆ. բարձր. և 2 ֆ. 4 դիւյմ. լայն.), սակայն միևնոյն բարձրութեան վրայ չեն գտնւում, այլ արևմտեաններն աւելի բարձր են։ Արևելեան պատի սեղանի վերայ բացուող պատուհանն աւելի փոքր է և խաչաձև։ Ունի երեք դուռն, որոնցից արևմտեանն ամենագեղեցիկն է։ Նուրբ նշխերով եզրափակուած երեք համակենդրոն, ռոմանական կամարներ պատում են քառանկիւնի դուռը, որի վերև քանդակուած է Քրիստոսը՝ խաչը ձեռին և Թովմայ առաքեալը, որ ծընկաչոք շօշափում է Նրա կողը։ Սրա կողքերին նկարուած են Տիրամօր և կոյս Մագդաղինէի պատկերները, վերևում հայր Աստուած, արև, լուսին, իսկ ներքևում արձանագրուած է.

Բարդուղիմէոս ի հայս եկեալ զտուն Տեառն նախ աստ հիմնարկեալ սբ. Թովմայի առաքելոյն անուն կոչեալ զա՞ հաստատեալ. Կոմսի անուն զիր աշակերտն տեսուչ տեղույ զնա եղեալ. որ եւ զտուն Գողթ գաւառիս ի նա յանձնեալ զ՚օտն ընտրեալ մերձ Ագուլիս եւ Դաշտ զօլեալ Ցղնա, Որդմիս ամս յանձնեալ. Բուստ, Փառակա եւ տվեալ. Բեհրուտ, Տեւի անգակ եղեալ եւ Տրջու ընդ Մ'աւրեան Աղահեցիք ցանկ հաստատեալ. Դաստակ, Վանանդ կցորդ եղեալ Տրունիս, Տնակերտ միաբանեալ Օբովանիս եւ Քաղաքիկ եւ Անապատն Ցանդամիջաց Վերին Գետցիք եւ Քեշերեցիք, Նունուս, յՈրդվատ բաժին կարգեաց. սրբն Գրիգոր յորժամ եկեալ է առաքելոյն նոմս տեսեալ ծեռագրով նոյն հաստատեալ եւ նզովիւք ամրափակեալ, յամին Տեառն ԳԾԻ եւ հինգ հասեալ Լուսաւորչին պատճէն գրեալ արձանագրիս որ աստ եղեալ։

[1] Այս պարիսպը իւր աշտարակներով վերաշինել է 1668 թուին Ս. Թովմայի առաջնորդ՝ Պետրոս վարդապետն։ Տես Զաքարիա Ագուլեցի, եր. 33.

[2] 38 արշին երկարութիւն և 27 արշին լայնութիւն ունի։

Այս դռան հարաւային կողմում, պատի վրայ արձանագրուած է վանքի շինութեան օժանդակողների անունները.

Ցիշեցէք ագուլեցի Քալանթար Ովանէսն, վանքիս վէքիլ Հայրապետն, մէլիք Ասկարխանն, մղտեսի Հայրապետն, Վարդանն, Առաքելն, Ալէքսանն, Աղամջանն, Ովանէսն, Նահապետն, Մելքոնն, Թասալին, Աղամիրզէն, Մաթեոսն, Ամիրն, Ղուլին, Մուշկին, Գուլպասարն որք օժանդակ եղեն սուրբ եկեղեցւոյս:

Նաև նոյն դրան հիւսիսային կողմը.

Ցիշեցէք ռամեցի խօջայ Աւետիքն եւ եղբարքն իւր Նաւասարդն եւ Նառշն եւ երէցփոխան Վարդանն եւ Գրիգորն եւ Պետրոսն, Փիրին, Նուրին, Արզանին. Վարդանն եւ Բարաքեազն, Գրիգորն. եւ տր. Գրիգորն՝ որ քազում օժանդակ եղեն սբ. եկեղեցւոյս.

Այս արձանագրութիւնից վերև, մեծ պատուհանի տակ ահագին տառերով փորագրուած է Թվ ՌՃՂԳ.

Այս դռան կողքին գրուած է.

Ցիշատակ է դուռնս Դաշտեցի Խօջա Սէթուն եւ ծնողացն Ածատուրին եւ Խաթունջանին եւ եղբարցն. Թվ. ՌՃՂԳ.

Այս դրան առաջ եղել է մի զանգակատուն, որը նախ կառուցուել է 1825 թ. Աբաս-Միրզա թագաժառանգի ծախսով, որի մասին արձանագրուած է մի մարմարոնեայ քարի վրայ այսպէս.

۱۲۴۳ اسلامی

این بیت درایام عمر دولت فتحعلی شاه قاجار بفرموده نائب السلطنه روحنا فداه تعمیر وقوع یافت و مبلغ خطیری ازین بناحاکمان اخذ میکردند نائب‌السلطنه برلطف فرموده بدوازنده (۱۲) تمان از نقد و جنس قرار فرمود.

Միքանի տարի յետոյ այս զանգակատունը քանդուել է, ուստի և այս արձանագրութիւնը կրող քարը մինչև այժմ էլ պահւում է վանքի սենեակներից մէկում:

1831 թուին Հախումեանք իրենց ծախսով նորից շինել են և գմբէթի շուրջը, ներքուստ, արձանագրել.

Ցիշեցէք այսինքն Ագուլեցի ի Շուշի բնակեալ Հախումեանց Սահակի որդիքն աղա Մնացական, մահտեսի աղա Մատթէոս նաեւ Մարտիրոսի որդի աղա Թոմաս եւ որդիքն սոցին Սահակին, Անդրէասին, Մարտիրոսին, Ցարութիւնին եւ Առաքելին եւ դուք յիշողքդ յիշեալ լիջիք առաջի Աստուծոյ մերոյ 1831 թուին շինեցաւ զանգակատունս [1].

---

[1]) Մ. Փափազեան. Հնութիւնք հայրենեաց. Դ. գիրք։

Այժմ այս զանգակատունը հիմնովին քանդել են և նորն են կառուցանում։

Երկրորդ դուռը գտնւում է հիւսիսային կողմում երեք ռոմանական կամարներով շրջապատուած, վերեւում քանդակուած է Պօղոս առաքեալի արձանը, մի ձեռին գաւազան, միւսին՝ աւետարան, որի ներքև արձանագրուած է.

Թուականիս հայկականի
Մի յոբելեան երկ շրջանի,
Եռակ տասանց որով վարի,
Սա կառուցաւ քառանկիւնի,
Ձեռամբ Յովհան վարդապետի
Որ էր յաջորդ յայսմ թեմի
Բազում ծախիւք անթուելի.
Զորիւք ամօք սա կատարի
Երեք դրամբ ըստ խորհրդի
Կամարակապ զարմանալի,
Անուամբ մեծին Ս. Թովմայի
Նման վերնոյն ըստ Սիօնի
Սա մեզ շնորհեաց պարգեւ բարի
Զաստուածամուխ աջըն ծրի
Ամուր պատուարք բոլոր թեմի
Պաշտօնէից իւր հովանի.
Պարծանք է սա Գողթ գաւառի,
Եւ ցնծութիւն Հայոց ազգի,
Նպաստութեամբ Տեառն Յիսուսի
Ի փառս անուան մի եռակի։

Այս դրան առաջ երկու ամբողջական և երկու կեսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, կրելով իրենց վրայ մի փոքրիկ գմբէթ։

Երրորդ դուռը հարաւային կողմումն է. սա շատ պարզ է և կամարակալ քարի վրայ գրուած է.

Իշխանութեամբ Պարսից ազգի.
Շահ Հուսէին թագաւորի,
Դիւանբէկութեամբ Մուսաբէկի
Որ էր տեղեաւ Ագուլեցի
Եւ Յովհաննու առաջնորդի
Վերաիշխող յայսմ թեմի.
Որոյ յաւուրս սա կանգնի
Այս վայելուչ եկեղեցի։

Այս դռան մօտ, դէպի ձախ չորս անագին սիւների վրայ բարձրանում է մի բաւական մեծ գմբէթ, հովանաւորելով իւր տակ թաղուած միքանի անձերի ոսկորները, որոնց յիշատակն արդէն մոռացուած է։ Կարելի է ենթադրել, որ Զաքարիա Ագուլեցու հետեւեալ խօսքերը (եր. 25) այս մատրանն են վերաբերում. Պետրոս վարդապետն Խաչատուր վարդապետի (+1664) վրայ տաշած քարով մեծ մատուռ շինեց եկեղեցւոյ հարաւակողմը։

Եկեղեցին ներքուստ շատ աւելի գեղեցիկ տեսք ունի քան արտաքուստ։ Քառանկիւնի, բայց եզրերը ուղիղ անկիւնով փոքր ինչ հատուած չորս սիւների վրայ բոլորում են կիսաբոլոր կամարներ, կրելով իրենց վրայ կաթուղիկէն և նոյնպէս կիսաբոլոր ձեղունը, որ ամբողջովին ծածկուած է արևելեան ճաշակի գունաւոր ծաղկանկարներով։ Հիւսիսային և հարաւային պատերի մէջ կան արաբական կամարներով պտրհաններ, որոնք բաւական տգեղացնում են ընդհանուր, գեղեցիկ տեսքը։ Այս պտրհաններից մինի մէջ զետեղուած է մկրտութեան աւազանը, որի վրայ կայ հետեւեալ արձանագրութիւնը.

Քի տխմար ծառա Տէր Խաչատուր թվ ՌՃԽԳ.

Փրկիչ պահա զՆոփրիոս.

Բեմի արևմտեան երեսը մարմարիոնից է, առաքեալների պատկերներով և ծաղկանկարներով զարդարուած։

Ունի միայն մի սեղան, որի վրայ կանգնեցրած խաչկալը մի բաւական նուրբ և գեղեցիկ գործ է. գեղեցիկ են նաև հինգ հատ ջահերը։ Երկու խորաններից աջակողմեանը ծառայում է որպէս եկեղեցական թանգարան, ուր բաւական խնամքով պահւում են Թովմայ առաքեալի, Յակոբ Հայրապետի աջերը, Կենաց փայտի մասունքը, ս. Գայիանեանց մասունքը մի տապանաձև տախտակի մէջ դրուած։ Այստեղ կան նաև բաւականաչափ եկեղեցական զգեստներ, մի շատ գեղեցիկ վարագոյր, մի փորուրար՝ որի վրայ նըկարուած են Յակոբ Նահապետը իւր 12 որդիներով, սրանցից բարձր՝ Աստուածածինը՝ երկու կողքին հրեշտակներ։ Սրա տակ յիշատակագրուած է.

Յիշատակ է ուրարս վզիր խան եղեալ վաճառականաց ի դուռն սուրբ Թումայի առաքելոյն ի վայելումն Յովհաննէս վարդապետին. թվին ՌՃԶ.

Մի վակասի վրայ էլ գրուած է.

Յիշատակ է Պետրոս վարդապետին ի վայելումն նորին աշակերտ Մատթէոս վարդապետին ի դուռն Թումայի (ՌՄԽԶ)։

*Մի փորուրարի վրայ էլ ոսկեթելով ասղնագործած է ս. Էջմիածնի պատկերը։ Մի ծաղկանկար եմիփորոն, որի վրայ, չորս աւետարանիչների պատկերները մարգարիտներով են բանուած։ Այստեղ կան նաև միքանի ձեռագիրներ, որոնց մասին կըխօսեմ սրանց բաժնում։*

*Եկեղեցու շուրջը, պարսպին կից կան բաւականաչափ մի և երկ յարկանի սենեակներ, որոնցից մինի մասին աւանդաբար ասում են, թէ կռատուն է եղել. սրա մօտ, արևելեան կողմը, մի աղբիւր է վազում։ Այս սենեակներից միքանիսն այժմ յատկացրուած են վանահօր բնակութեան, միւսների մէջ տեղաւորուած է երկսեռ դպրոցը։ Գաւթում կան սաղարթախիտ չինարիներ և ջրի աւազան։ Պարսպի շուրջը տարածւում է վանքապատկան այգին, որի մէջ գտնւում է Մելիք Փարսադանի գերեզմանը՝ այսպիսի տապանագրով. Այս է տապան Հալեծորեցի մելիք Փարսադանին որ է որդի Պալասանի։*

*Վերին Ագուլիսից հազիւ 3 վերստ ներքև, բայց այգիներով միացած՝ գտնւում է Ներքին Ագուլիս կամ Դաշտ (տեղական բարբառով Դէշտ) աւանը։ Ձորի այս մասը բաւական լայն է և հարթ, միայն գիւղի հարաւային ծայրում բարձրանում է մի լերկ բլուր, որ կոչւում է Կօնդլաշ, (կանգնած լաշ, գէշ)։ Սրա մօտով անցնում է Վերին Ագուլիսի գետակը, կազմելով Ներքին Ագուլիսի և Օրդուբադի սահմանը։ Ձորի այս մասում ևս, արևելեան կողմից ձգւում է Ալանգեազի լերկ լեռնաշղթան, իսկ արևմուտքից՝ անանուն, լերկ բլրակների մի շարք, որոնցից Ներքին Ագուլիսի մօտ եղածը կոչւում է Կոճղնոց, որովհետև մի գագաթ կայ կոճղի նմանութեամբ բարձրացած։ Գիւղը զուրկ է կանոնաւոր, լայն և ուղիղ փողոցներից, տները քարաշէն, բաւական գեղեցիկ, երկու և նոյն իսկ երեք յարկանի են, պարտէզներով պատած։ Միակ աղբիւրը, որի ստորերկրեայ անցքը անցնում է գերեզմանատան և միքանի տների ու արտաքնոցների մօտով, շատ տների բակերում ունի բացուածք, որտեղից ջուր են վերցնում։ Այդ անցքերը գրեթէ միշտ բաց լինելով, շատ անգամ կեղտոտ ցնցոտիներ, կատուի ձագեր, վառեկներ ընկնում են և նեխւում, ապականում ջուրը։ Գիւղի արևմտահիւսիսային ծայրում բարձրանում է միակ եկեղեցին, Ս. Երրորդութեան անուան նուիրուած։ Սա վեց ամբողջական, կլոր և 14 քառանկիւնի կեղծ սիւների վրայ հաստատուած արաբական կամարներով և մի գեղեցիկ կաթուղիկէով շէնք է։ Ունի երեք սեղան, որոնցից երկուսի տակ տեղաւորուած են խորանները։ Արևմտեան կողմը կայ մի գմբէթազարդ գաւիթ, որ հնումը երեք կամարակապ բացուածքներով միացած է եղել եկեղեցու*

հետ. այժմ այդ բացուածքները պատած են։ Եկեղեցու հիւսիսային կողմում նոյն ձևի և նոյն մեծութեան մի ուրիշ եկեղեցի կայ, որ այժմ կոչւում է «Ամարային», որովհետև «այստեղ միայն ամառն են պատարագ մատուցել» (?)։ Սա ևս երեք սեղան ունի, միայն զուրկ է գմբէթից։ Այս երկու եկեղեցիների միջնորմի մէջ եղել են կամարակապ բացուածքներ, որ այժմ ծածկուած են։ Այս Ամարային եկեղեցում կան երեք տապանաքարեր, հետևեալ տապանագրերով.

*Այս է տապան Ամիրի որդի մղտսի Մօսէսին Թվին ՌՃԾԶ. յունվարի ա* [1]).

*Այս է տապան մղտսի Մօսէսի որդի Յովսէփին Թվին ՌՃԾԶ.*

*Աստուած ողորմի ապազ նըէց Ստեփաննոսին որ է որդի Բենիամինի առ Ած փոխեցաւ յամի ՌՃԳ* [2]).

Ամարային եկեղեցու աջակողմեան սեղանի ձախ կողմում, մի մարմարոնեայ քարի վրայ արձանագրուած է.

*Յշտկ է սբ գաւիթս այս Ամիրի որդի մահտսի Ազարին եւ Մօսէսին Պետրոսին Պօղոսին Թվն ՌՃԾԲ.*

Ձախակողմեան սեղանի արևելեան սիւնի վրայ.

*Յշցք զմիաքան սբ ուխտիս մերոյ զտր Ստեփանն տր Ովանէսն տր Ոսկանն տր Անանեան տր Ստեփանն եւ զտր Գրիգոր գծող գրոյս Թվն ՌՃԾԲ.*

Սոյն սեղանի աջ կողմին, մարմարիոնի վրայ.

*Այս է սբ առաքեալն Պետրոս:*

Այս երկու կից եկեղեցիներից իւրաքանչիւրի երկարութիւնն է 35 արշին, լայնութիւնը 20 արշին և բարձրութիւնը՝ մօտ 24 արշին,

---

1) Տէր Յակոբի տետրում ասուած է, թէ սա է այս եկեղեցու կառուցանողը։

2) Աւանդութիւնն ասում է, թէ այստեղ թաղուած քահանան իւր կենդանութեան վերջին օրում պատարագ էր մատուցանում, երբ պարսիկները յարձակուել են այս եկեղեցու վրայ։ Սրանց տեսնելով բարեպաշտ քահանան աղօթել է և աներևոյթացել, այնպէս որ պարսիկները նրան չեն տեսել, բայց երբ յետոյ նա իջել է սեղանից, նկատել են և նահատակել։ Սա թաղուած է իւր նահատակուած տեղը, եկեղեցու հարաւային պատին կից։ Նրա շտ ժամանակ սրա գերեզմանի վրայ ջուր են ածել, որպէսզի անձրև գայ։

Առաջին եկեղեցու արևմտեան պատին կից ևս շինուած է մի փոքրիկ գաւիթ, որի վրայ արձանագրուած է.

*Ցիշատակ է զաւիթս Հայրապետի որդի Ածատրին, Նարղուլուն եւ որդոցն.*

*Միքէչ հեռու՝*

*Շինեցաւ ծեռամբ ուստա Սուլէյմանի.*

*Միքէչ էլ հեռու՝*

*Շինեցաւ զաւիթս թվն ՌՂԹ.*

Եկեղեցին պարսպապատ է և կամարակապ դարբասի գլուխը զարդարուած մի շատ գեղեցիկ խաչքարով, որ կրում է ՌՃԲ. Թուականը։

Պարսպի արևելեան կողմում ևս կան միքանի խաչքարեր, որոնցից մինի վրայ կարդացւում է.

*Խաչս յշտկ: Մախթումա: Թընա: սլԹնշա: Սըղանա: Սա-ֆա: Խօլաֆ յարվլա: Ջանվլա: Նուրվա: ՋՈՆ:*

Եկեղեցու բակում մի ստորերկրեայ անցք կայ, որ երեքի բաժնուելով մինը գնում է դէպի եկեղեցու խորանը, միւսը մինչև մօտակայ աղբիւրը, իսկ երրորդը յայտնի չէ թէ ուր, որովհետև արդէն ծածկուած է։ Պարիսպը մօտ երկու արշին լայնութիւն ունի, ուստի և սրան կից և սրա վերայ կառուցուած են սենեակներ, ուր թէ առաջ և թէ այժմ զետեղուած է երկդասեան, երկսեռ պետական դպրոցը։

Սոյն գիւղի հարաւ արևելեան կողմում գտնւում է Ս. Մինասի մատուռը, որ մի փոքրիկ, փայտածածք շէնք է, մի հասարակ գաւթով։ Մատուռի սեղանը հիւսիսային կողմն է, ուր գտնւում է նաև մկրտութեան աւազանը։ Խորաններ էլ չունի։ Սեղանի երկու կողմերում, պատերի մէջ կան մի մի բաւական գեղեցիկ խաչարձաններ, որոնցից աջակողմեանի տակ գրուած է.

*Ս. Խաչս յիշատակ ջհանբաշխ... էլքէլչայ խասխաթի խոլըշայ ղոնիաս մէլիքին ութանբաշխ աթայ մէլիք... Ցո-հանէս թվ. ՋԽԶ. Կոստանդ:*

Մատուռն ունի միայն մի դուռն, արաբական կամարով, որի վերև մի մարմարոնեայ խաչքարի տակ գրուած է.

*Սբ խաչս բարեխօս լինի առ Ած վասն կոա Մարիամին կոա Նոյեմզարին որք եմք սպասաւորք սբ Մինասին:*

Թէ գաւթում և թէ բակում կան բաւականաչափ գերեզմաններ ՌՃ. Թուականի տապանագրերով։

Գիւղի հարաւ արևելեան կողմում, Կոնգլաշի ստորոտում

գտնւում է ս. Սարգիս ուխտատեղին, որ նոյնպէս մի փոքրիկ, անգմբէթ, թաղակապ մատուռ է, որի սեղանը հիւսիսային կողմն է գտնւում։

Ներքին Ագուլիսը ձորի վերին և ներքին մասերում պարիսպ և դարպաս է ունեցել, որ ամէն երեկոյ փակել են, բայց այժմ կի-սաւեր են։

Ն. Ագուլիսի բնակիչները բոլորն էլ հայեր են 105 տուն, 397 ար. 342 իգ. միասին՝ 739 հոգի։

Ներքին Ագուլիսի և Անգամէջի միջև կայ մի աննշան գիւղ Միրզա-Ջաֆար-դիզա անունով, ուր կան 3 տուն շիի թուրք բնակիչներ, 12 ար. 6 իգ. ի միասին՝ 18 հոգի։

## ՎԱՆԱՆԴԱՁՈՐ

Ագուլիսից դէպի արևմուտք ձգւում է մի ուրիշ ձոր, որ սրա-նից աւելի լայն և աւելի երկար է։ Սրա աջ կողմում բարձրացող գագաթներից նշանաւոր են Գեանուտ, Ծակքար, Սևպտակ հող, Բազքար, իսկ ձախ կողմում՝ Այի-չանդլ, Բաշքեչալու, Բաշիւրտ, Փարտղ, Զարխտ, Գեալին-դաշի [1]), Փաթայ-դաշի, Քանդիրլու, Ղարա-եօխուշ, Դոլու-ղայասի, Հափա-քար, Ծիրանաքար, Ճալպատ։ Գետակը, որ սկիզբն է առնում Փազմարի լեռից, ընդունում է այն գիւղի անունը՝ որի մօտով հոսում է։ Այս ձորի կլիման համեմա-տաբար աւելի մեղմ է, ուստի և այստեղ խաղողի այգիներ չկան, միայն առատութեամբ աճում են թթենիներ, խնձորենիներ, սալո-րենիներ, ծիրանիներ, ընկուզենիներ և այլն։

Այս ձորում գտնւում է Վանանդ, Տրունիս և Դասաա կամ Դաստակ նշանաւոր գիւղերը, ուստի և ձորը շատ անգամ սրանց անունով կոչւում է Վանանդաձոր, Տրունեաց ձոր և Դաստաձոր։

Այս ձորի ամենավերին մասում գտնւում է Փիզմարա Թըր-քաբնակ գիւղը, որ պատկանում է պ. Գէորգեաններին և որ ունի 6 տուն բնակիչ. 27 ար. 18 իգ. ընդամէնը 45 հոգի։

Այս գիւղից 2 վերստ ներքև գտնւում է Ս. Խաչ վանքը, որ բարձրանում է մի փոքրիկ հարթութեան վրայ, գետակի աջ ա-փին։ Վանքը անգմբէթ է, սրբատաշ քարով շինուած, 20 արշին երկարութեան, 15 արշ. լայնութեան և 12 արշին բարձրութեան,

---

[1]) Գեալին-դաշ (Հարսի-քար) լերան մասին պատմում են, թէ նրա գագաթին գտնուած հարսանման քարը մի ժամանակ կենդա-նի հարս է եղել, որ գլուխը լուանալիս սկեսրայրը վրայ է եկել։ Ամօթխած հարսը ամօթից քար է կտրել։

գտնւում է ս. Սարգիս ուխտատեղին, որ նոյնպէս մի փոքրիկ, անգմբէթ, թաղակապ մատուռ է, որի սեղանը հիւսիսային կողմն է գտնւում։

Ներքին Ագուլիսը ձորի վերին և ներքին մասերում պարիսպ և դարպաս է ունեցել, որ ամէն երեկոյ փակել են, բայց այժմ կիսաւեր են։

Ն. Ագուլիսի բնակիչները բոլորն էլ հայեր են 105 տուն, 397 ար. 342 իգ. միասին՝ 739 հոգի։

Ներքին Ագուլիսի և Անդամէջի միջև կայ մի աննշան գիւղ Միրզա-Ջաֆար-դիզա անունով, ուր կան 3 տուն շիի թուրք բնակիչներ, 12 ար. 6 իգ. ի միասին՝ 18 հոգի։

## ՎԱՆԱՆԴԱՁՈՐ

Ագուլիսից դէպի արևմուտք ձգւում է մի ուրիշ ձոր, որ սրանից աւելի լայն և աւելի երկար է։ Սրա աջ կողմում բարձրացող գագաթներից նշանաւոր են Գեանուտ, Ծակքար, Սիպտակ հող, Բազքար, իսկ ձախ կողմում՝ Այի-չանդը, Բաշքեչալու, Բաշիւրտ, Փարտղ, Ջարխտ, Գեալին-դաշի [1]), Փաթայ-դաշի, Քանդիրլու, Ղարա-եօխուշ, Դոլու-ղայասի, Հափա-քար, Ծիրանաքար, Ճալպատ։ Գետակը, որ սկիզբն է առնում Փազմարի լեռից, ընդունում է այն գիւղի անունը՝ որի մօտով հոսում է։ Այս ձորի կլիման համեմատաբար աւելի մեղմ է, ուստի և այստեղ խաղողի այգիներ չկան, միայն առատութեամբ աճում են թթենիներ, խնձորենիներ, սալորենիներ, ծիրանիներ, ընկուզենիներ և այլն։

Այս ձորում գտնւում է Վանանդ, Տրունիս և Դաստա կամ Դաստակ նշանաւոր գիւղերը, ուստի և ձորը շատ անգամ սրանց անունով կոչւում է Վանանդաձոր, Տրունեաց ձոր և Դաստաձոր։

Այս ձորի ամենավերին մասում գտնւում է Փիզմարա Թըրքաբնակ գիւղը, որ պատկանում է պ. Գէորգեաններին և որ ունի 6 տուն բնակիչ. 27 ար. 18 իգ. ընդամէնը 45 հոգի։

Այս գիւղից 2 վերստ ներքև գտնւում է Ս. Խաչ վանքը, որ բարձրանում է մի փոքրիկ հարթութեան վրայ, գետակի աջ ափին։ Վանքը անգմբէթ է, սրբատաշ քարով շինուած, 20 արշին երկարութեան, 15 արշ. լայնութեան և 12 արշին բարձրութեան,

---

1) Գեալին-դաշ (Հարսի-քար) լերան մասին պատմում են, թէ նրա գագաթին գտնուած հարսանման քարը մի ժամանակ կենդանի հարս է եղել, որ գլուխը լուանալիս սկեսրայրը վրայ է եկել։ Ամօթխած հարսը ամօթից քար է կտրել։

անսիւն և թաղակապ։ Պատուհանները սաստիկ նեղ են և կարճ. միակ դռան վերև կայ մի խաչքար, հետևեալ արձանագրութեամբ.

Թվ. ՌՃԼԶ. Ցս. Քս.

Եկեղեցու մէջ կան երկու փոքրիկ խորան և մի աւազան։

Վանքը պարսպապատ է և ունի մի քանի հին և երկու նոր սենեակներ։

Վանքի առաջ տարածւում է մի հրաշագեղ այգի, որ գետի և հանդիպակաց քարաժայռերի հետ միասին մի սքանչելի տեսարան է ընծայում ուխտաւորներին, որոնց թիւը, մանաւանդ Ս. Խաչի տօնին, բաւական մեծ է լինում։

Այս մենաստանը, որ վանանդեցի Թովմաս եպիսկոպոսի պէս վանահայր է ունեցել [1]), այժմ բոլորովին անմարդաբնակ է։ Քաղաքիկ գիւղից ընտրուած երկու հոգաբարձուներ հսկում են, որ վերջնականապէս չաւերուի։

Ս. Խաչի վանքից մի վերստ ներքև գտնւում է Ունիս գիւղը, որ հնումը հայաբնակ է եղել՝ իսկ այժմ թրքաբնակ է. 30 տուն, 123 ար. 63 իգ. ի միասին 186 հոգի։

Ունուսից դէպի հիւսիս, մօտ 6—7 վերստ հեռու, լերան լանջին կայ մի աւերակ եկեղեցի և գիւղատեղի, որ կոչւում է Օքովանիս։

Ունիսից երկու վերստ ներքև, գետակի ձախ ափին տեղաւորուած է փոքրիկ Քաղաքիկ գիւղը, պարտէզներով պատած։ Գիւղում կան բաւական լաւ շինուած տներ, մանաւանդ Գէորգեանների։ Միակ, հինաւուրց եկեղեցին փոքրիկ է, թաղակապ և անսիւն։ Միակ դռան վերև մի խաչքարի վրայ կարդացւում է.

Ս. Խաչս յիշատակ է աղա Շահնայ Թվ. ՊՂ.

Բնակիչները բոլորն էլ հայեր են, բաղկացած երկու սերնդից՝ (գենս) Գէորգեան և Սանթուրեան, 37 տուն, 163 ար. 151 իգ. ընդամէնը 314 հոգի։

Սրանից երկու վերստ ներքև գտնւում է Տրօնիս կամ Դերնիս թրքաբնակ գիւղը, որ շատ գեղեցիկ տեսք ունի։ Այստեղ կայ մի կիսաւեր, հասարակ եկեղեցի։

Հնումը այս գիւղը կոչւում էր Տրունիս, և պատկանում Տրունեաց տոհմին, որ սերել էր Տուրից։ Սա Երուանդ Բ.-ի արքունիքումն էր ծառայում և «քսութիւն էր անում Թագաւորի տնից Սմբատին», որի համար և սպանուեց Երուանդից։ Արտաշէս Բ. իբրև փոխարէն իւր երախտաւորի արեան, նրա տասնև հինգ որդիներին ժառանգական ազգ հաստատեց, իրենց հօր ա-

[1]) Տես պատմական մասում.

*նունով Տրունի կոչելով, որ Ս. Սահակի գահնամակում Ծէ. կարգումն էր դասւում և զօրաբաժնին տալիս էր 300 մարտիկներ։ Պատմութեան մէջ շատ քչերն են յիշւում այս տոհմից. միայն ութերորդ դարում Հայերի Հագարացոց դէմ ապստամբուած միջոցին յիշւում են և Տրունիք, որոնցից մի քանի սեպուհներ ընկան մարտնչելով Արճէշում։ Իններորդ դարու կիսում յիշւում է Վահրամ Տրունին, Բուղայի ժամանակ և տասներորդ դարի սկզբին՝ Ցիսէ Տրունեաց տէր, որդի Հմնաւարայ [1]։*

*Տրունիսի մօտ մի ուխտատեղի կայ սբ. Աստուածածին անունով, որի մօտ մի ժայռ՝ վրան խաչեր քանդակուած. ասում են, և նոյն իսկ պնդում բազմաթիւ ուխտաւորները, որ ամէն տարի, Համբարձման տօնին, այստեղ, այս ժայռի վրայ, ինքն իրեն մի խաչ է քանդակւում։*

*Դերնիսի բնակիչները այժմ Թուրքեր են 64 տուն. 275 ար. 153 իգ. ի միասին՝ 428 հոգի։*

*Տրօնիսից երեք վերստ ներքև գտնւում է Տանակերտ գիւղը, որ զետեղուած է համանուն բլրի լանջին, գետակի աջ ափին։ Գիւղի գրեթէ կենտրոնում բարձրանում է եկեղեցին, որ չորս սիւների վրայ հաստատուած, փոքրիկ գմբէթով մի շէնք է։ Մի վերստ հեռու, դէպի արևմտահարաւ մի բաւական բարձր տեղում գտնւում է Բերդակ կոչուած Ս. Յովհաննէս Մկրտչի ուխտատեղին, որ մի փոքրիկ, հասարակ մատուռ է։ Հաւանական է, որ սա մի ժամանակ բերդ (ամրոց) եղած լինի։ Այս գիւղում տները համեմատաբար աւելի հասարակ են, միայն շատ շատերի առաջ տարածւում են պարտէզներ, որոնք գիւղին բաւական գեղեցիկ տեսք են ընծայում։ Փողոցներից միայն մինը կանոնաւոր է և ծառազարդ, միւսները ծուռն ու մուռը։*

*Այստեղ կլիման համեմատաբար տաք լինելով խաղողը հասնում է, ուստի և ձորակում կան նաև խաղողի այգիներ։*

*Բնակիչները բոլորն էլ հայեր են 66 տուն. 283 ար. 244 իգ. ընդամէնը՝ 527 հոգի։*

*Տանակերտից ներքև գտնւում է Սալ Թրքարնակ, աննշան գիւղը, որ միայն 2 տուն բնակիչ ունի 4 ար. 3 իգ. ի միասին 7 հոգի։*

*Նոյնքան աննշան է և՛ սրա մօտի Հիւտ-վալի-Սուլթան-ղըզան որ նոյնպէս երկու տուն բնակիչ ունի, 9 ար. 3 իգ. ի միասին 12 հոգի։*

*Սալից երեք վերստ ներքև գտնւում է Դիսար գիւղը, որ*

---

*[1]) Սիսական եր. 338.*

ունի մի հինաւուրց, հասարակ եկեղեցի։ Բնակիչները հայ և Թուրք են, ընդամէնը՝ 28 տուն, 96 ար. 68 իգ. ի միասին՝ 164 հոգի, որից հայերը 13 տուն են, 45 ար. 30. իգ. ի միասին՝ 75 հոգի, Թուրքերը՝ 15 տուն, 51 ար. 38 իգ. ի միասին՝ 89 հոգի.

Դիսարից մի վերստ ներքև գտնւում է Վալաւիր Թրքաբնակ գիւղը, որ նախկին Վաղաւեր հայաբնակ գիւղն է, առանց մի որևէ նշանաւոր հնութեան։ Բնակիչները Թուրքեր են՝ 21 տուն, 72 ար. 69 իգ. ի միասին՝ 141 հոգի։

Վալաւիրից մի վերստ ներքև, ընդարձակ ձորի մէջ, փռուած է պատմական Վանանդ գիւղը։

Իւր չափազանց գեղեցիկ տեսքով և բերրութեամբ այս տեղը շատ հին ժամանակից գրաւել է մարդկանց, որի մասին վկայում է այն բագինը, որ քանդել է ս. Բարդուղիմէոս առաքեալը և նրա տեղը կանգնեցրել ս. Թոմայի անուան նուիրուած մի եկեղեցի, որի ողբացող աւերակն է մնացել այժմ։ Այստեղ է վախճանուել և ս. Բարդուղիմէոսի Լուսիկ աշակերտը, որի գերեզմանի վրայ շինել են մի փոքրիկ մատուռ, որ մինչև այժմ էլ ուխտատեղի է։ Այստեղացի են եղել Վահան Գողթնեցին և Թովմաս եպիսկոպոսը, Ղուկաս բանաստեղծն ու Մատթէոսը [1]), որոնք անգին ծառայութիւն են մատուցել հայկական տպագրութեան։

Վանանդի այժմեան բնակիչները բոլորն էլ շիի Թուրքեր են. 125 տուն, 409 ար. 382 իգ. ի միասին՝ 791 հոգի։

Վանանդի բերքերից առանձնապէս ուշադրութեան արժանի է ծիրանը։

Վանանդից ներքև, չորս վերստ հեռու գտնւում է Աղրի Թրքաբնակ գիւղը, որ ունի 17 տուն բնակիչ, 40 ար. 39 իգ. ի միասին՝ 79 հոգի։ Սրա մօտ էլ ընկած է նոյնպէս Թրքաբնակ Խանաղա գիւղը, 37 տուն բնակչով, 108 ար. 86 իգ. ի միասին՝ 194 հոգի։ Մինչ հեռու գտնւում է Ջաֆար-խան ղըշլաղ աննշան գիւղը 6 տուն Թուրք բնակիչներով. 22 ար. 14 իգ. ի միասին՝ 36 հոգի։

Խանաղայից էլ ներքև, Վանանդաձորի վերջաւորութեան վրայ, ուր տարածւում է մի բաւական ընդարձակ դաշտ մինչև Արաքսը, հրաշալի պարտէզների ու այգիների մէջ փռուած է Դաստա (Ռուսերէն՝ Դոստի) Թրքաբնակ գիւղը։ Սա հին, հայաբնակ Դաստակ գիւղն է, որի վերջի հայ բնակիչները գաղթել են Ագուլիս և Շուշի։ Այստեղ կայ մի կիսաւեր եկեղեցի, որ այժմ ուխտատեղի է համարւում շրջակայ հայերի համար։ Բարձր և գեղեցիկ

[1]) Տես պատմական բաժնում։

սօսու սաղարթներով հովանաւորուած հրապարակը, իւր քաղցրահամ ջրի աղբիւրով հիացմունք է պատճառում անցորդին։

Բնակիչները բոլորն էլ Թուրքեր են, 229 տուն, 829 ար. 681 իգ. ի միասին՝ 1510 հոգի։

## ՑՂՆԱՑԻ ԿԱՄ ՋԱՆԱՆԱԲԻ ՁՈՐ

Վանանդաձորից դէպի արեւմուտք, դարձեալ հիւսիսից հարաւ ձգւում է մի ուրիշ ձոր, որ տեղ տեղ աւելի ընդարձակ է, քան Վանանդաձորը։ Այստեղ, ձորի երկու կողմում գտնուած լեռների մէջ նշանաւոր են Ջին դաշը, Դաշբաշին, Ղուրթ-Թափան, բոլորն էլ մերկ։ Ձորի միջով հոսում է մի գետակ, որ սկիզբն է առնում Եայլու-դարա լերան մէջ տեղից և ստանում է այն գիւղի անունը, որի մօտով անցնում է։

Ձորի կլիման հիւսիսում համեմատաբար ցուրտ, իսկ հարաւում աւելի տաք է։ Ձորը պատած է գլխաւորապէս թթենիներով. կան նաև խաղողի այգիներ։

Ձորի ամենավերին մասում, բլուրների գոգաւորութեան մէջ գտնւում է Ռամիս կամ Ուռումիս գիւղը, որի ճանապարհը չափազանց վատ է։ Գիւղը ունի մի եկեղեցի, այժմ էլ հայաբնակ է, բնակիչներն ընդամէնը 31 տուն են, 377 հոգի, որից 207 ար. և 170 իգական։ Սրանք գտնուելով Ղարաբաղին սահմանակից՝ թէ սովորութիւններով և թէ բարբառով աւելի նրանց են նման քան զօկերին։

Ռամիսից 3—4 վերստ ներքև, ձորում, տարածւում է Ստոպի կամ Ուստուփի Թրքաբնակ գիւղը, 90 տուն բնակիչներով, 527 ար. 215 իգ. իմիասին 742 հոգի։

Ուստուփից հազիւ մի վերստ ներքև, գետի երկու կողմում փռւում է Ցղնա կամ Ջանանաբ գիւղը, որի հիւսիսային ծայրում գտնւում է ս. Աստուածածնի վանքը, հարաւային կողմում, ջրի ձախ ափին, Տամբրի թաղում բարձրանում ս. Սարգսի եկեղեցին։ Իսկ սրանից վերև ցցուած է Հարս ու փեսի քարը։ Փողոցներից շատերը թէև ծառազարդ, բայց անկանոն են ու նեղ. տներից շատերը պարտէզներով պատած են, մի քանիսը երկյարկանի և եւրո-

1) Պատմում են, թէ մի տղայ ու աղջիկ միմեանց վրայ սիրահարուելով փախել են, որպէս զի իրենց միութեան հակառակող ծնողների բռնութիւնից ազատուեն. սակայն երբ սրանք իմացել են նրանց փախուստը և անիծել, իսկոյն քար են կտրել ու միմեանց գրկախառնած մնացել իբր անխօս բողոք իրանց ծնողների բռնութեան դէմ։

սօսու սաղարթներով հովանաւորուած հրապարակը, իւր քաղցրահամ ջրի աղբիւրով հիացմունք է պատճառում անցորդին։

Բնակիչները բոլորն էլ թուրքեր են, 229 տուն, 829 ար. 681 իգ. ի միասին՝ 1510 հոգի։

## ՑՂՆԱՑԻ ԿԱՄ ՁԱՆԱՆԱԲԻ ՁՈՐ

Վանանդաձորից դէպի արևմուտք, դարձեալ հիւսիսից հարաւ ձգւում է մի ուրիշ ձոր, որ տեղ տեղ աւելի ընդարձակ է, քան Վանանդաձորը։ Այստեղ, ձորի երկու կողմում գտնուած լեռների մէջ նշանաւոր են Ջին դաշը, Դաշբաշին, Ղուրթ-թափան, բոլորն էլ մերկ։ Ձորի միջով հոսում է մի գետակ, որ սկիզբն է առնում Եաղլու-դարա լերան մէջ տեղից և ստանում է այն գիւղի անունը, որի մօտով անցնում է։

Ձորի կլիման հիւսիսում համեմատաբար ցուրտ, իսկ հարաւում աւելի տաք է։ Ձորը պատած է գլխաւորապէս թթենիներով. կան նաև խաղողի այգիներ։

Ձորի ամենավերին մասում, բլուրների գոգաւորութեան մէջ գտնւում է Ռամիս կամ Ոււոումիս գիւղը, որի ճանապարհը չափազանց վատ է։ Գիւղը ունի մի եկեղեցի, այժմ էլ հայաբնակ է, բնակիչներն ընդամէնը 31 տուն են, 377 հոգի, որից 207 ար. և 170 իգական։ Սրանք գտնուելով Ղարաբաղին սահմանակից՝ թէ սովորութիւններով և թէ բարբառով աւելի նրանց են նման քան զօկերին։

Ռամիսից 3—4 վերստ ներքև, ձորում, տարածւում է Ստոպի կամ Ուստուփի Թրքաբնակ գիւղը, 90 տուն բնակիչներով, 527 ար. 215 իգ. իմիասին 742 հոգի։

Ուստուփից հազիւ մի վերստ ներքև, գետի երկու կողմում փռւում է Ցղնա կամ Ձանանաբ գիւղը, որի հիւսիսային ծայրում գտնւում է ս. Աստուածածնի վանքը, հարաւային կողմում, ջրի ձախ ափին, Տամբրի թաղում բարձրանում ս. Սարգսի եկեղեցին։ Իսկ սրանից վերև ցցուած է Հարս ու փեսի քարը։ Փողոցներից շատերը թէև ծառազարդ, բայց անկանոն են ու նեղ. տներից շատերը պարտէզներով պատած են, մի քանիսը երկյարկանի և ներս-

1) Պատմում են, թէ մի տղայ ու աղջիկ միմեանց վրայ սիրահարուելով փախել են, որպէս զի իրենց միութեան հակառակող ծնողների բռնութիւնից ազատուեն. սակայն երբ սրանք իմացել են նրանց փախուստը և անիծել, իսկոյն քար են կտրել ու միմեանց գրկախառնած մնացել իբր անխօս բողոք իրանց ծնողների բռնութեան դէմ։

պական ճաշակով կահաւորուած։ Մարդ հիանում է երբ ապառաժոտ, մերկ բլրակների ու ամուլ շրջակայքի վրայից հայեացքը ձգում է գիւղի վրայ, ուր ամէն մի բոյսը, ամեն մի քարը, քարաժայռերի միջով անցկացրած ջրանցքներն ու անանցանելի քարափների մէջ շինած Սարգսեանների հերոսական ձևի մետաք-



ՑՂՆԱՑԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

սեայ գործարանը վկայում են զօկի անխոնջ աշխատասիրութեան և տոկունութեան մասին։

Ս. Աստուածածնի եկեղեցին սրբատաշ քարերով շինուած մի հոյակապ շէնք է։ Չորս իսկական և ութ կեղծ սիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ՝ կրելով ութ պատուհաններով զարդարուած գմբէթը։ Ունիշ իննը պատուհաններ (1 արշ. երկ. 1/2

արշ. լայնութեան) էլ բաւականաչափ լոյս են սփռում։ Միայն այս եկեղեցու մէջ ևս մկրտութեան աւազանի կողքին և հանդէպը, պատերի մէջ կան պահարանի բացուածքներ՝ պարսկական ճարտարապետութեան մի տգեղ ներմուծութիւն։

Խորանների միջից գաղտնի անցքեր ձգւում են պատերի մէջ և տանիքի տակ, ուր բաւականաչափ տեղ կայ թէ իրեր պահելու և թէ, վտանգաւոր ժամանակներում, թաք կենալու։

Եկեղեցին ունի երկու դուռն, երկուսն էլ շատ գեղեցիկ քանդակներով եզրափակուած։ Հարաւային դռան վերև քանդակուած է Պօղոս և Պետրոս առաքեալների պատկերները, իսկ առաջը բարձրանում է եռայարկ, գմբէթաւոր մի զանգակատուն, նախ չորս և ապա ութական սիւների վրայ հաստատուած։ Այս զանգակատան հարաւային ճակատին քանդակուած են աջ կողմում՝ Աստուածածինը, ձախում՝ խաչուած Յիսուսը, երկուսն էլ մարդաչափ մեծութեան։

Հիւսիսային դռան վերև ևս քանդակուած է Աստուածածինը՝ Յիսուս որդին գրկում, որի ներքև արձանագրուած է.

Մենք, Ցղնու եղեալ իշխանքս շինեցինք տունս Այ սբ. ածածին դվինք ԺԲ. լիտըր ոսկի էլ մեր մլքն վախուալ արինք տաանին մէկն որ պայծառ լինի որ է մէկ հատն արեվելեան կողմն կեղն յարեվմտեան կողմն սարն, հարվային կողմն Մսկն ղաշտու քարն, հիւսիսն կողմն համամն.

Սոյն դռան ձախ կողմը կայ հետևեալ արձանագրութիւնը.

Յիշատակ է Մրշահանց Խաչատուրին եւ իւր կողակից Մարգարտին. Թվ. ՌՃՁՆ.

Եկեղեցու պատերի վրայ, արտաքուստ, գրեթէ մէջ տեղից ձգւում է մի շղթայաձև քանդակ, որին միանում են պատուհանների և դռների շուրջը պատող նոյնանման քանդակներ։ Նաև կլտուրի չորս անկիւններից քաշ են արուած մի մի քարէ օղակներից շինուած շղթաներ, որ օրօրւում են քամու ազդեցութեամբ։

Եկեղեցու մէջ կան մի քանի գերեզմանաքարեր որոնց վրայ ամրացրած մարմարեայ տախտակների վրայ գրուած է.

Տապանս այս է խօճայ Պաղտասարին զոր բազում օգնականութիւն արար ի վերայ եկեղեցւոյս շինութեան ի թվին ՌՃԼԻ.

Ի Ցղնու սլարուն Պարսաղան պէկի քվերորդի Գուրգէն պէկի գերեզմանն է ի թվին ՌՃԼԴ, ով կարդայ ողորմի ասէ.

Տապանս այս է խոճայ Անդրէասին ի թվին ՌՃԼԸ

Տապանս այս է յօրինեալ իշատակի մհտեսի Անանիայի որդի խօճայ Սիմոնին թվ. ՌՃԾՆ.

Տապանս այս է յօրինեալ ի յիշատակի Ոհանիսի որդի խոճայ Յակոբին թվ. ՌՃԾԸ.

Ս. Աստուածածնի եկեղեցին պարսպապատ է և պարսպի մէջ ունի մի և երկյարկանի շինութիւններ, ուր երբեմն զետեղուած էր ծխական դպրոցը։

Գիւղի հողը այս եկեղեցուն է պատկանում, ուստի և գիւղացիները տարեկան 100 ռուբլի են վճարում եկեղեցուն իբր կապալագրամ։

Ս. Սարգսի եկեղեցին փայտածածք և փայտէ սիւների վրայ յենած մի հասարակ շէնք է, որի սեղանի վրայ մի շատ գեղեցիկ խաչ կայ հետեւեալ արձանագրութեամբ.

Սբ խաչս յիշատակ Եսայեայ կրաւնաւորի թվ ՊՂ.

Սրա ձախ կողմում եւ մի խաչ կայ՝ այս արձանագրութեամբ.

Սբ խաչս յիշատակ Ջհան մելիք էնէբէկ Ածատուրայ, Սալթանայ Ջաֆարշհայ...

Աջ կողմում եւ մի ուրիշ խաչի վրայ.

Սբ խաչս յիշատակ Անդոնայ Ուղանայ եւ Էլինախայ. ՊՁԳ.

Եկեղեցին ունի երկու դուռն, որոնցից արեւմտեանի աջ կողմին գրուած է.

Հայրապետութիւն Հայոց Տր Մելիքսէթ գեղիս քահանայութիւն պարոն տէր Աւետսին տր Ղուկաս եպիսկոպոս տեղիս ախսախալուք խոճայ Անձեւ Հայրապետ, Աւագ, ոմիտ Աղամիր Դաւլաթ, Իսրայէլ, Միրաք յետ գրւյ դրմն խատր թվ ՌԿ.

Սրա վերև մի գեղեցիկ խաչի տակ.

Սբ խաչս յիշատակ... ՌԽԵ.

Դռան ձախ կողմում. Թագաւորութիւն Շահ-Աբաս, կաթողիկոսութիւն Տէր Մելիքսեդէկ եպիսկոպոսութիւն տէր Օէտին գեղիս եպիսկոպոս Ղուկասն թվ ՌՂ.

Սրա վերև եւ կայ մի ուրիշ խաչ, ՌՃԿ թուականով։

Հարաւային դռան աջ կողմի խաչքարի տակ.

Խաչս յիշատակ Սարգիս երիցու եւ կողակցին Եղիսաբէթայ դստերն Ուստիանէ. թվ ՊՀԴ.

Ձախ կողմի խաչքարի վրայ. Խաչս յիշատակ խալիւ սարկօագիս Մարգարին թվ ՁԼԴ.

Սոյն դռան վերև

Գիւղիս սբ Սարգիս եկեղեցիս նորոգուեցաւ Ցղնայ ժողովրդեան ծախիւք վերակացութեամբ Սաղաթէլ Սաղաթէլեանցի 1890 ամի.

*Պարզ է, որ միայն այս արձանագրութիւնն է վերաբերում եկեղեցուն, միւսները զանազան գերեզմանների վրայից վերցրած խաչքարեր են, ինչպէս և եկեղեցու հարաւային պատի մէջ ամրացրած երկու խաչքարը, որոնցից մինի վրայ կարդացւում է.*

*Խաչս յիշատակ է Մամիտրիկայ, Հոռենանայ, Յոհաննիսայ, Խիդիրշահայ որդի Անխիդիրայ եւ Խաթունայ. Թվ ՋԻԶ.*

*Գիւղից փոքր ինչ բարձր նկատելի են մի հին ամրոցի հետքեր։*

*Բնակիչներն ընդամէնը 86 տուն են, 543 ար. 437 իգ. ի միասին՝ 980 հոգի, որից միայն 3 տունը՝ 13 ար. 4 իգ. Թուրքեր են, մնացածը հայեր։*

*Ցղնայից մօտ հինգ վերստ հեռու դէպի հարաւ, մի հարթութեան վրայ գտնւում է Ս. Ստեփաննոսի ուխտատեղին, որ մօտակայ աւերակ գիւղատեղու անունով Մ՚իւզկունց վանք էլ է կոչւում։ Սա Թովմաս եպիսկոպոսի յիշատակած Մ՚ցգունի Ս. Ստեփանոսի վանքն է, ուր եղել է նաև Աբրահամ կաթուղիկոսը Հին-Ջուղա գնալիս։*

*Այս վանքն այժմ վերաշինուած է. անցեալից մնում են միայն կիսակործան պարիսպն։ Այժմեան վանքը մի հասարակ, փայտածածք, փոքրիկ շէնք է։*

*Ցղնայից ներքև գտնւում են Դիւզլուն և Դիւզլունդիզա գիւղերը, երկուսն էլ Թրքաբնակ, առաջնում կան 49 տուն բնակիչ, 146 ար. 101 իգ. ի միասին՝ 247 հոգի, միւսում 9 տուն, 24 ար. 11 իգ. ի միասին՝ 35 հոգի։*

## ԲՍՏԱՁՈՐ—ԳԻԼԱՆԱՁՈՐ

*Ցղնայի ձորից դէպի արևմուտք, դարձեալ հիւսիսից հարաւ ձգւում է մի ուրիշ ձոր, որ թէ երկարութեամբ և թէ լայնութեամբ ամենամեծն է Գողթանի շրջանում։ Այս ձորում հնումը նշանաւոր է եղել Ագա և Գիրան (Ճիրան) քաղաքները, ուստի և ոչ միայն այս հովիտը, այլ և ամբողջ Գողթան գաւառակը սրանց երկուսի միացեալ անունով կոչուել է Ագա-Ճիրան։ Այժմ այդ անունը այլ ևս գործածական չէ և այս ձորը աւելի յիշւում է Բիստ և Բեյլև գլխաւոր գիւղերի անուններով։ Այս ձորի միջով հոսում է Գիլանչայը, որ յառաջանում է Սաղկար-սուի և Այրի-չայի միախառնմամբ և ընդունելով միքանի վտակներ, ինչպէս Բստաչայ, Տևի-չայ և Բեյլև-չայ՝ թափւում է Արաքսի մէջ։*

Պարզ է, որ միայն այս արձանագրութիւնն է վերաբերում եկեղեցուն, միւսները զանազան գերեզմանների վրայից վերցրած խաչքարեր են, ինչպէս և եկեղեցու հարաւային պատի մէջ ամրացրած երկու խաչքարը, որոնցից մինի վրայ կարդացւում է.

Խաչս յիշատակ է Մամփորիկայ, Հոռենանայ, Ցոհաննիսայ, Խիդիրշահայ որդի Անխիդիրայ եւ Խաթունայ. Թվ ՉԻՋ.

Գիւղից փոքր ինչ բարձր նկատելի են մի հին ամրոցի հետքեր։

Բնակիչներն ընդամէնը 86 տուն են, 543 ար. 437 իգ. ի միասին՝ 980 հոգի, որից միայն 3 տունը՝ 13 ար. 4 իգ. Թուրքեր են, մնացածը հայեր։

Ցղնայից մօտ հինգ վերստ հեռու դէպի հարաւ, մի հարթութեան վրայ գտնւում է Ս. Ստեփաննոսի ուխտատեղին, որ մօտակայ աւերակ գիւղատեղու անունով Միւզկունց վանք էլ է կոչւում։ Սա Թովմաս եպիսկոպոսի յիշատակած Մզգունի Ս. Ստեփանոսի վանքն է, ուր եղել է նաև Աբրահամ կաթուղիկոսը Հին-Ջուղա գնալիս։

Այս վանքն այժմ վերաշինուած է. անցեալից մնում են միայն կիսակործան պարիսպն։ Այժմեան վանքը մի հասարակ, փայտածածք, փոքրիկ շէնք է։

Ցղնայից ներքև գտնւում են Դիւզլուն և Դիւզլունդիզա գիւղերը, երկուսն էլ Թրքաբնակ, առաջնում կան 49 տուն բնակիչ, 146 ար. 101 իգ. ի միասին՝ 247 հոգի, միւսում 9 տուն, 24 ար. 11 իգ. ի միասին՝ 35 հոգի։

## ԲՍՏԱՁՈՐ—ԳԻԼԱՆԱՁՈՐ

Ցղնայի ձորից դէպի արևմուտք, զարձեալ հիւսիսից հարաւ ձգւում է մի ուրիշ ձոր, որ թէ երկարութեամբ և թէ լայնութեամբ ամենամեծն է Գողթանի շրջանում։ Այս ձորում հնումը նշանաւոր է եղել Ագա և Գիրան (Ճիրան) քաղաքները, ուստի և ոչ միայն այս հովիտը, այլ և ամբողջ Գողթան գաւառակը սրանց երկուսի միացեալ անունով կոչուել է Ագա-Ճիրան։ Այժմ այդ անունը այլ ևս գործածական չէ և այս ձորը աւելի յիշւում է Բիստ և Բեյև գլխաւոր գիւղերի անուններով։ Այս ձորի միջով հոսում է Գիլանչայը, որ յառաջանում է Սաղկար-սուի և Այրի-չայի միախառնմամբ և ընդունելով միքանի վտակներ, ինչպէս Բստաչայ, Տևի-չայ և Բեյև-չայ՝ թափւում է Արաքսի մէջ։

Այս ձորը հետզհետէ լայնանալով Վերին և Ներքին Ազաների մօտ մի ընդարձակ դաշտ է ներկայացնում, կտրտուած միքանի բլրակների շարքերով։

Այս ձորի երկու կողմում բարձրացող գագաթներից նշանաւոր են Գոյ-դաղը, 12173 ոտնաչափ բարձրութեան՝ Նիւրզուտ գիւղի արևմտահիւսիսային կողմում, Գեաւակը (5677) Տեհի գիւղի մօտ, Արգալը և Ջարաջուրը Բեհեի մօտ, Ղարաուլ-Թափան ու Էլտին, Մապարախը, Մարա-դարա-դարին, Օղլան-գեօզը և այլն։

Այս ձորի հետ միանում են երկու ուրիշ ձորակներ, ուր գետեղուած են միքանի նշանաւոր գիւղեր։ Սրանցից առաջինն է Մսրվանիսի ձորակը համանուն վտակով, որ թափւում է Բստագետի մէջ համանուն գիւղի մօտ և Բեհեի ձորը, նոյնպէս համանուն գետակով, որի շուրջը գետեղուած են Բիլե, Բէհրուտ և Փառակա գիւղերը։

Ձորի ամենավերին մասում գետեղուած է Նիւրզուտ գիւղը, որ ունի 26 տուն թուրք բնակիչ, 151 ար. 64 իգ. ի միասին՝ 215 հոգի։ Սրանից փոքր ինչ ներքև 6405 ոտնաչափ բարձրութեան վրայ տեղաւորուած է Խուրստ հայաբնակ փոքրիկ գիւղը, մի հին, կիսաւեր եկեղեցիով և 6 տուն բնակչով, 37 ար. 24 իգ. ի միասին՝ 61 հոգի։ Մի քիչ ներքև գտնւում է Աղնամիր գիւղատեղին, մի աւեր եկեղեցիով։ Փոքր ինչ էլ ներքև, Թաւաքեալի բլրի լանջին տարածւում է Ալլահի հայաբնակ գիւղը։ Սրա գրեթէ կենտրոնում բարձրանում է Ս. Ստեփանոսի եկեղեցին, որ հասարակ քարով շինուած, մի գմբէթաւոր շէնք է։ Փոքր ինչ հեռու գտնւում է ս. Հոփսիմէի ուխտատեղին, ուր գտել են մի պուլիկ, մէջը բամբակով փաթաթած ոսկորներ, իսկ պուլիկի վրայ, ասում են, իբր թէ գրուած է եղել թէ ս. Հոփսիմէի մասունքն է։ Գիւղի տները Ղարադաղինի նման բաղկացած են էյվանից, տնից և տնամիջից։ Գիւղում ոչ մի աղբիւր չկայ և խեղճ կանայք մօտ $^{1}/_{2}$ վերստ ամենավատ ճանապարհով են գնում Գիլանի-չայից ջուր բերելու։

Բնակիչները գաղթել են Մուժամբարից, Ղարադաղից և Սալմաստից և մինչև այժմ պահպանել են իրենց բարբառը, տների, շորերի ձևը և իրենց սովորութիւնները։ Դպրոց երբէք չեն ունեցել և ոչ էլ մի որևէ նշանաւոր գործիչ տուել։ Պարապում են երկրագործութեամբ և մեղուապահութեամբ։ Տղամարդկանցից շատ շատերը մշակութիւն են անում զանազան քաղաքներում։ Ընդամէնը 38 տուն են. 201 ար. 146 իգ. ի միասին՝ 347 հոգի։

Ալլահից դէպի արևելք, հազիւ 5 վերստ հեռու գտնւում է Մեսրոբավան կամ Մսրվանիս և կամ ռուսերէն՝ Նասիրվազ կամ

Նասիր-աբադ կոչուած գիւղը։ Պատմական դարևոր աւանդութիւնն ասում է, թէ այս գիւղն է այն վաղեմի սրբավայրը, ուր սուրբ Մեսրոբը, հալածելով նախնի կռապաշտութեան մնացորդները, հիմնել է այն փոքրիկ եկեղեցին, որ թէպէտ նուիրուած է ս. Գրիգոր Լուսաւորչու անուան, բայց և այնպէս՝ հիմնադրի, ս. Մեսրովբի անունով այժմ էլ կոչւում է Մեսրոբավան կամ Մսրվանիս։

Այս աւանդութիւնը հաստատւում է Մովսէս Խորենացու հետևեալ վկայութեամբ։ (Ս. Մեսրովբ) «գնում բնակւում է Գողթն գաւառում, ճգնաւորի կեանք վարելով [1]), և ապա հայկական տառերը գտնելուց յետոյ կրկին «անցնում է իւր առաջին բնակութեան Գողթն գաւառը [2])»։

Այս սրբավայրը, որպէս առաջին քարոզութեան վայր, մինքան սիրելի է եղած այդ աղգալոյս Բարերարին, որ նրա մահից յետոյ «ոմանք առաջարկում էին տանել նորա (մարմինը) նրա առաջին աշակերտած Գողթն գաւառը [3])»։

Այստեղը սիրելի է եղած նաև Աղան Արծրունուն, Ղազար Փարփեցու ուսուցչին, «որ Ս. Սահակից կրօնաւորութեան աքեմ ընդունեց և գնաց առանձին բնակեց Գողթան գաւառում, սուրբ Մեսրովբի վարդապետութեան տեղում [4])»։

Այս Մսրվանիս գիւղը գետեղուած է Ալանգեազ լերան լանջին։ Երկու փոքրիկ վտակներ՝ Ալանգեազի և Զառնապատի՝ հոսելով գիւղի արևմտեան և արևելեան կողմերում, թափւում են գիւղի հարաւային կողմից հոսող Մսրվանուց գետակը, որ սկիզբն է առնում Գեամի-ղայա լեռից։ Գիւղի արևմտեան կողմում բարձրանում է Գիլլում գիլլում կոչուած քարաժայռը, որի մասին պատմում են, թէ մի ժամանակ սրա ստորոտում մի գիւղ է եղել, որի բնակիչները բարոյապէս սաստիկ փչացել են։ Այս քարաժայռն երեք անգամ կանչել է. «Գիւլում, գիւլում, գիւլըմ», (գալիս եմ, գալիս եմ, գալիս), որպէսզի գիւղացիներն զգաստանան և ապաշխարեն, բայց սրանք ոչ մի ուշադրութիւն չեն դարձրել և շարունակել են իրենց անբարոյական կեանքը, ուստի և քարաժայռը փուլ է եկել սրանց վրայ, և բոլորին սպանել։ Այդ օրուանից քարաժայռն իւր հանած ձայնի պատճառով վերակոչուել է Գիւլում գիւլում։ Սրա կողքին Ալանգեազ լեառն է, իսկ սրանից դէպի արևելք Ղարա-ղայա սարն, և Գեամի-ղայա ձիւնապատ գագաթը։ Վերջինիս մասին պատմում են, թէ Նոյի տապանն ընդհարուել է

[1]) Մովսէս Խորենացի Գ. գլ. ԽԴ.
[2]) Անդ. Գ. գլ. 4.
[3]) Անդ. Գ. գլ. ԿԹ.
[4]) Թովմա Արծրունի. եր. 80.

սրան, և միքանի տախտակներ կոտրուել մնացել են սրա վրայ և իբր թէ սա էլ ասել է. «Երթ ի Մասիս, նա բարձր է քան զիս»։ Գիւղի հարաւ-արևելեան կողմում բարձրանում են Նաբի-իւրտ և Ղազար-իւրտ լեռները։ Պատմում են, թէ Ղազար-իւրտ լեռն իւր անունն ստացել է Սուրջինի վանքի կառավարիչ Ղազարից, որ այս լեռից մինչև վերոյիշեալ վանքը խողովակներ էր անցկացրել, որի միջով այս լերան վրայ կթուած ոչխարների կաթը գնում էր Սուրջիի վանքը։

Լեռների գեղարուեստական տեսքը, վտակներն ու սրանց ափերում աճող բարձր ու բարակ բարդիները, գիւղի ներքեւում տարածուած այգիները, մեղմ կլիման սքանչելի ամարանոց են դարձնում այս գիւղը։

Գիւղի արևմտեան կողմը, Ալանգեազ վտակի աջ ափին, մի փոքրիկ հարթութեան վրայ, արդէն կիսաւեր պարսպով մեկուսացած, բարձրանում է այն փոքրիկ վանքը, ուր սուրբն Մեսրովբ աղօթել է Հայաստանի լուսաւորութեան համար և քարոզել հետեւելու իրեն օրինակին։

Սա դարերի ընթացքում միքանի անգամ վերաշինուած և հասարակ քարով կառուցուած մի շէնք է։ Չորս սիւների և ութ կիսասիւների վրայ բոլորում են արաբական կամարներ, կրելով ութ պատուհանաւոր մի մեծ գմբէթ և սրա մօտ՝ մի շատ փոքրը։ Ունի մկրտութեան աւազան և սրա մօտ ու հանդէպ՝ նոյնանման բացուածքներ։ Խորանները երկուս են. սեղանը զարդարուած է Ոսկան Ոսկանեանի նուիրած բաւական գեղեցիկ պատկերներով։ Պատուհանները շատ նեղ են և կարճ, իւրաքանչիւր պատին՝ 3 հատ։ Միակ արևմտեան դուռը բացւում է չորս սիւների վրայ հաստատուած թաղակապ գաւթի մէջ։

Եկեղեցու ձախ կողմում կայ մի գերեզման առանց տապանագրի։

Եկեղեցու երկարութիւնն է 6 սաժէն, լայնութիւնը 3 սաժէն և 2 արշին, իսկ բարձրութիւնը հինգ սաժէնից փոքր ինչ աւելի։

Եկեղեցու վրայ կան հետեւեալ արձանագրութիւնները.

Սեղանի ձախ կողմը, մի խաչարձանի տակ.

Թադոսի եւ մաւրս Գոհարին եւ հաւր Ազիզբէկին Ամիրջանին Սիրունակին... Թվ. ՉԹ.

Այս կողմը, մի ուրիշ խաչի տակ. Յաւէս յիշատակ Մարտիրոսի Գիւլստանին Թվ. ՌՂԷ.

Սեղանի աջ կողմը դարձեալ մի խաչարձանի տակ.

Յաւէս յիշատակ է Պօղոսին Թվ. ՌԿ.

Գաւթի ձախ կողմում. Արդ յիշեցէք վանքիս միաբանքն

անՆերախտ աւուր վանացս տր Ղազար քահանայն իւր աշակերտ տր Գրիգոր. եւ գեղիս օրհնեալ քահանայն տր Ազարիան...

Գաւթի աջ կողմում.

...(մի ամբողջ տող եղծուած է).
սբ ածածին քեզ լինի հովանի պահապան . . . դպիր սուտանուն Դաւիթ որդի տէր Գրիգոր սբ Ածածին գրուեցաւ Թվին ՌՃԾԸ։

Այժմ այս վանքը համարւում է գիւղի ծխական եկեղեցի և բաւական խնամքով պահպանվում է։

Ս. Թարգմանչաց տօնին շրջակայ Ալլահի, Բիստ, Փառակա, Ցղնա և Ռամիս գիւղերից բազմաթիւ ընտանիքներ ուխտ են գալիս այս վանքը։ Իրենք Մսրվանեցիները իրենց մէջ փող են հաւաքում և հասարակական մատաղ անում։ Ահագին բազմութիւն միասին նստում է վանքի գաւթի առաջ և ուտում հասարակական մատաղը։

Գիւղի բնակիչները թէև բնիկներ են համարւում և խօսում են Երևանի բարբառին մօտիկ մի բարբառով, սակայն ս. Մեսրովբի մասին չեն պահպանել մի որևէ աւանդութիւն։ Բոլորի գիտեցածն էլ մեր պատմագիրների հաղորդածներն են։

Սոյն գիւղում կայ նաև մի ուխտատեղի ս. Հոփփսիմէ անունով, ուր մի խաչքարի վրայ արձանագրուած է.

Յաչս յիշատակ Դանիէլ վարդապետին, Թւին Ռծ որ կանգնեցաւ խաչս փրկութեան հոգոյն։

Բնակիչները 38 տուն են, 245 ար. 126 իգ. ի միասին՝ 371 հոգի, որից 22 տունը՝ 148 ար. 82 իգ. հայեր են, իսկ 16 տունը՝ 97 ար. 44 իգ. Թուրքեր։

Մսրվանիսից հինգ վերստ հեռու, դէպի արևմտահիւսիս գտնւում է այն նշանաւոր գիւղը, որի անունով այժմ ամբողջ ձորակն է կոչւում։ Սա—Բիստը տարածւում է այն ապառաժոտ լեզուակի վրայ, որ ձգւում է Մսրվանից ձորում. հիւսիսից հոսում է Բստայ կամ Գիլանայ գետակը, իսկ հարաւից Մսրչայը, որ թափւում է առաջնի մէջ գիւղից 1/2 վերստ ներքև։ Գետակների ափերին տնկուած են բարդի ծառեր, որ բաւական գեղեցիկ տեսք են ընծայում գիւղին։ Փողոցներ գրեթէ չկան. տները կուտակուած են միմեանց վրայ, մեծ մասը գետի քարերով, մի մասն էլ հում աղիւսով շինուած։ Իւրաքանչիւր տուն բաղկացած է էյվանից, տնից և տնամիջից։ Գիւղի մէջ աղբիւրներ չկան, այլ միայն մի առու է անցնում։ Գիւղի հիւսիսային կողմում, մի ահագին ժայռի վրայ կառուցուած է մի բաւական գեղեցիկ եկեղեցի, ամ-

բողջովին կարմիր, տաշած քարից։ Չորս սիւների և ռոմանական կամարների վրայ յանկած եռանկիւնաձև ձեղունը մէջ տեղում մի կլոր ծակ ունի, որի վերայ, սակայն, չի բարձրանում մի որևէ գմբէթ։ Խորանները երկուս են. բացի մկրտութեան աւազանից կան նաև 14 պտրհան, իւրաքանչիւր պատի մէջ կայ երեք պատուհան 1 արշին բարձրութեան և 3 վերշոկ լայնութեան։ Արևմտեան միակ դուռը երեք շարք կամարակապ նշխերով եզրափակուելով բացւում է մի անգմբէթ, երկու հաստ սիւների վրայ յանկած գաւթի մէջ։ Եկեղեցու երկարութիւնն է 15 սաժէն, լայնութիւնը 7 սաժէն, իսկ բարձրութիւնը 5 սաժէն։



ԲԻՍՏԻ ԵԿԵՂԵՑԻՆ

Գաւթի աջ կողմի պատին գրուած է.

Ի թվին ՌՃԼԶ. սպասաւոր քանին տր Աղէքսան զվէմս փոքրիկ յիշատակ իւրեան:

Սրա ներքև

Ի թվականին հայկազնց Ռ երորդ Ճ երորդ Լ երորդ ութեակ թվի ի . . . ով ընթերցողք ասացէք մէկ ողորմի մեր զնողացոց փոքր ու մեծ. ես առաքել աբրահամ ու Երեմիան, որք զտուրս ետուն զումարվթուվթը նիլի. հոգամ ատր տն ի սմա. Ձենմա մնաց նոցին թողութիւն լինի ամէն. եղիցի, եղիցի:

Այս եկեղեցուց փոքր ինչ բարձր գտնւում է Թուրքաց մզկիթը, որ մի շատ հասարակ շինութիւն է։

Բիստից հազիւ 2 վերստ հեռու գտնւում է Ս. Նշանի վանքը, որ վերջերս վերանորոգուած, մի փոքրիկ եկեղեցի է, պարսպապատ։ Կարծում եմ, որ այս վանքի մասին է խօսում Աբրահամ կաթուղիկոսը, յիշատակելով այսպէս. «Այցելեցի Պուստ մեծ գիւղն, յորում կայր պատուական եկեղեցին, և յետ ուխտելոյ յեկեղեցին, ելի ի Վանքն աղաւնանման աղինասարաս, ի վայելուչ բարձրանիստ տեղի, լի պարտիզօք, ջրարբի և բարեբեր հողով, և պարզ և առողջարար օդով. զուարճացաւ սիրտ իմ, մոռանալով զաշխատութիւնս ճանապարհին. այլ և առաջնորդ Տէր Պետրոս վարդապետն այր խոհեմ և բարեբարոյ. միաբանք՝ սիրով և հնազանդ. և մնացի անդ երկու օր» 1)։

1670 թուին Զաքարիա Ագուլեցին իւր կնոջ և ուրիշ շատ ուխտաւորների հետ այս վանքը գալով յիշատակագրում է. «Այս այն ս. Նշանն է, որ Քրիստոս աշակերտաց ոտնն լուաց. այս խաչս այն թաշտի պղինձն է. սորայ առաջնորդն էր... բստուցի Ալէքսան վարդապետն։

Այս գիւղից է եղել Յակոբ վարդապետը, որ աշակերտել է Յովհան Որոտնեցուն և Գրիգոր Տաթևացուն և որի խնդրով Գրիգոր Տաթևացին գրել է իւր փոքր Հարցմանց գիրքը։ Բնակիչները հայեր են և թուրքեր, ընդամէնը 115 տուն. 719 ար. 544 իգ. ի միասին՝ 1263 հոգի. որից հայերը՝ 52 տուն են 359 ար. 274 իգ. ի միասին՝ 633 հոգի. մնացածը՝ 63 տունը՝ 360 ար. 270 իգ. ի միասին՝ 630 հոգին թուրքեր։ Պէտքէ ասել, որ այս գիւղացիները բաւական անկիրթ և կոպիտ են մնացել, ու համարեա ոչ մի նշանաւոր մարդ չեն տուել։ Պարապում են առաւելապէս անասնապահութեամբ, երկրագործութեամբ և մեղուապահութեամբ։ Ու թէպէտ աճում են թթենիներ, բայց շերամապահութեամբ չեն պարապում, որովհետև դեռ ևս այդ աստիճան չեն յառաջացել։ Խաղողի այգիներ չկան, որովհետև կլիման մեղմ լինելով խաղողը շատ ուշ է հասնում։

Բիստից 6 վերստ ներքև գտնւում է Թեւի, հնումը հայաբնակ, իսկ այժմ թրքաբնակ գիւղը, ուր գտնւում է այս հասարակութեան դատարանը, որ բաւական գեղեցիկ, պարտիզով շրջապատուած մի շէնք է։ Այստեղ հայկական նախկին եկեղեցու միայն երկու սունն են կանգուն և մի խաչքար, որի վրայ կարդացւում է.

Յիշատակ է Յոհանի որդուն. թվին ՌՃԸ.

---

1) Սիսական եր. 344.
2) Զաքարիա Ագուլեցի եր. 44.

Եկեղեցու տեղը այժմ պարտէզ է դարձրած, մօտը տուն շի-նած նոյն այդ եկեղեցու քարերով։

Եկեղեցուց փոքր ինչ բարձր, մի Թուրքի տան գաւթում ևս կայ մի խաչքար, որի վրայի արձանագրութիւնից կարդացւում է միայն ՌՃԾ՝ Թուականը։ Այս խաչքարը դուրս էր եկել երբ այդ տեղում տան համար հիմք են փորել։ Տան տէր Թուրքը իւր կրած պատուհասներն այդ խաչքարի տուածը համարելով կամեցել է սիրտն առնել, ուստի և նրա վերև մի փոքրիկ կամար է կապել և լաւ պահպանում է։

Ցիշել ենք, որ այս գիւղում ծծմբային ջուր կայ, որից Թուր-քերը բոլորովին չեն օգտւում։

Բնակիչները 74 տուն են, 284 ար. 140 իգ. ընդամէնը՝ 424 հոգի։

Այս գիւղից 4 վերստ հեռու, դէպի արևելք Նաւուշ գիւղա-տեղում կայ սրբատաշ, սև քարերով շինուած մի եկեղեցի, որ Թաղակապ է, անգմբէթ, 2 խսկական և վեց կեղծ սիւներով։ Բա-ցի մկրտութեան աւազանի տեղից կան նաև միքանի կամարա-կապ, պատուհանաձև բացուածքներ—պահարաններ։ Սեղանի աջ կողմն էլ մի գաղտնի սանդուղ տանում է խորանի վերին մասը, ուր մի կամարակապ խաչքար կայ ծուռը ձգուած, որ կրում է հե-տևեալ տապանագիրը.

Խաչս յիշատակ է Մովսէսի Թվ ՋՒԴ.

Մի այսպիսի խաչ էլ սեղանի վրայ կայ՝

Խաչս յիշատակ է տր Սարգսին. Թվ. ՌՒԷ:

Միակ, կամարակապ դրան վերայ պարզ կարդացւում է.

Թվ ՌՃՒՁ. Շնորհօք սրբոյն Երրորդութեան ձեռնար-կնցաք նորոգութեան սբ տաճարիս այս տրոմեան սրբոյն Ստեփաննոսի անուան. եղեւ օծումն օրհնութեան ձեռամբն Պետրսի ղետի Գողթան եւ Հայոց հայրապետութեան տռ Ցակոբայ վեհ երանեան արդեամբք եւ տրօք ողորմութեան Տեւոյ օրհնեալ ժողովրդեան եւ յօժար կամօք խոստացան տալ վանիցս Շէն հակն այն լիրաւանց քհյկն իղ բաժնէն զԱ հիսայն եւ որք տալ ոչ կամենան նզովեալք են մինչ յաւիտեան յաւուրս Ցոհաննու բաքոմեան աստ միաբան հաստատեցան եւ որք յոտով աշխատեցան վարձս ընկալ-ցին յարութեան. ամէն:

Եկեղեցու առաջ կայ մի փոքրիկ, Թաղակապ գաւիթ, որի

մօտ մի աղբիւր, այժմ ցամաքած։ Վանքը ունեցել է և պարիսպ, որ այժմ գրեթէ բոլորովին աւերուած է։

Այժմ այս վանքը բոլորովին անխնամ է թողնուած։

Եկեղեցու առաջից մի նեղ ձորակ է ձգւում, որի միջով հոսում է Նաւուշի վտակը։

Աբրահամ կաթուղիկոսը 1733 թուին այս վայրերին այցելելիս գիւղն աւեր է գտել, իսկ «վանքը՝ ամայի, և 'ի Կուսանաց անապատն, (որ հաւանականաբար մեր նկարագրած ս. Ստեփանոսի վանքն է եղած), եօթն միայն ապաշխարող [1])։

Թեւից դէպի հիւսիս արևելք, հազիւ երկու վերստ հեռու Սուրջի-Թափա բլրակի լանջին գտնւում է Սուրջի կամ Նախկին Շրջու եկեղեցին, որի ձախ կողմից հոսում է համանուն վտակը։

Եկեղեցին այժմ կիսաւեր է և բոլորովին անխնամ ձգած։

Այս շրջանի միւս եկեղեցիների նման սա ևս կառուցուած է չորս սիւների վրայ օրօրոցաձև, անգմբէթ ձեղունով։ Սեղանի շուրջը կան հինգ, իսկ պատերի մէջ երեքական պտրհաններ։ Ունի երկու խորան, որոնց միջից գաղտնի սանդուխներ բարձրացնում են վերև, թաքստեան տեղեր։ Պատուհանները շատ կարճ են և նեղ։ Ունի միայն մի դուռն, գեղեցիկ քանդակներով եզրափակուած, վերևում մի ռելիէֆ խաչ։ Սրա առաջ կայ մի կիսաւեր գաւիթ։ Եկեղեցին պարսպապատ է եղել և ունեցել է միքանի խուցեր, որոնց հետքերն են այժմ մնում։

Բեմի վրայ կայ մի խաչքար այսպիսի արձանագրութեամբ.

Յիշատակ է խաչս մահտեսի Անտոնի որդոյ ուստա Յուսէփին թվին ՌՃԻԹ.

Թևից հազիւ տասն վերստ ներքև Բստաձորին միանում է մի ուրիշ ձոր, որի միջով հոսում է Ղափուճըղ և Եաղլու-դարա լեռներից սկիզբն առնող մի վտակ, որ կոչւում է Փառակայի կամ Բելևի գետ։ Այս ձորակում գտնւում են Բելև, Բեհրուտ և Փառակա գիւղերը։ Առաջին երկուսն այժմ թրքաբնակ են, թէև հնումը հայաբնակ են եղել և նոյն իսկ երկրորդը ունեցել է մի նահատակ, Սահակ անունով, 17 տարեկան, որ ԺԹ. դարու սկզբում վաճառականութեան պատճառով գնացել է Ագախ քաղաքը, (Ագուլ) ուր այլադէնները «հարևալ ի գեղ և ի հասակ ազնիւ պատանեկին» ամէն կերպ աշխատում են ուրացնել տալ քրիստոնէական հաւատը, սակայն սա արիաբար ընդդիմադրում է և նահատակւում [2])։

Բելևը, որ իւր անունը տուել է գետին և ձորին, ունի 122

[1]) Սիսական եր. 344.
[2]) Սիսական եր. 345.

տուն ընակիչ, բոլորն էլ Թուրք, 408 ար. 361 իգ. ի միասին՝ 769 հոգի։ Իսկ Բեհրուտը, որ Բեխրուտ էլ է կոչւում՝ 19 տուն. 89 ար. 51 իգ. ի միասին՝ 140 հոգի։

Բեխրուտից հազիւ 3 վերստ հեռու, դէպի արևելք, նոյն ձորի մէջ ձգուած մի լեզուակաձև բլրակի վրայ զետեղուած է Փառակա գիւղը։ Թէ այս բլրակը և թէ սրա մօտերքում, գետի ափին բարձրացած քարակոյտերը պարունակում են իրենց մէջ քարացած ժժմակներ։ Գիւղի փողոցները չափազանց նեղ են և անկանոն, տները կուտակուած են միմեանց վրայ, գիւղում աղբիւրներ չկան և բնակիչներն անազին նեղութիւններ են կրում գետա-




ՓԱՌԱԿԱՅԻ Ս. ՅԱԿՈԲԻ ՎԱՆՔԸ

կից 'ուսով ու էշով ջուր բարձրացնելով։ Ջորակում տարածւում են պարտէզներ, բայց այգիներ չկան, չնայելով, որ խաղողը հասնում է։

Գիւղի ներքին մասում գտնւում է ս. Շմաւոն եկեղեցին, սրբատաշ քարով շինուած, փոքրիկ գմբէթով, և մի թաղակապ գաւթով։ Արևմտեան դրան վերև արձանագրուած է.

Ցս. Քս. լթվ. ՌՃԻԹ.

Շինեցաւ տունս ապաւէնի ի հայրապետութեան տէր Յակոբայ եւ յառաջնորդութեան տանս Գողթնա տէր Պետրոսի եւ Յոհաննու Ած... (աջան) վարդապետի անուամբ (վայելուչ) Փառակու քահանայիցն եւ ժողովրդոցն եւ այդ

*Տր Ցս սը Շմաւոնի տաճարս հաստատուն պահեա մինչև միւս անգամ քո գալստն, ամէն:*

Այս հին եկեղեցին այժմ բաւական խնամքով պահւում է, որովհետև գիւղի աղօթատունն է։ Բացի սրանից գիւղում կայ Ս. Ստեփաննոս անունով մի հին եկեղեցի, որ բոլորովին աւեր է և այժմ ուխտատեղի է համարւում։ Մի ուրիշ ուխտատեղի էլ գիւղի ծայրին կայ, ս. Հռիփսիմէի խաչ անունով, որ մի փոքրիկ մատուռ է։

Մօտակայ բլրի գագաթին էլ մի ուրիշ մատուռ է բարձրանում, որ յայտնի է ս. Եղիա մարգարէի անունով։

Բնակիչները 65 տուն են, 524 ար. 309 իգ. ի միասին՝ 833 հոգի, որից 55 տունը՝ 460 ար. 279 իգ. ի միասին՝ 739 հոգի հայեր են, իսկ 10 տունը՝ 64 ար. 30 իգ. ի միասին՝ 94 հոգի թուրքեր։ Պարապում են երկրագործութեամբ, մասամբ չերամապահութեամբ և առաւելապէս քաղաքներում խոհարարութիւն և ծառայութիւն անելով։ Կանայք վարպետութեամբ գործում են գորգեր և կապերտներ։

Փառակայից հազիւ մի վերստ հեռու դէպի հարաւ գտնւում է Ս. Յակոբ Հայրապետի վանքը, այժմ կիսաւեր։ Սա շինուած է կարմրաւոյն, տաշած քարով։ Զորս ամբողջական և ութ կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ կրելով մի շրջանակ, որի վրայ բարձրանում է 12 կարճ և նեղ պատուհաններով զարդարուած գմբէթը։ Ունի մի կամարակապ սեղան և երկու խորան, գաղտնի պահարաններով։ Բացի մկրտութեան աւազանից կան նաև 6 պտրհաններ, որ բաւական տգեղացնում են եկեղեցու տեսքը։ Իւրաքանչիւր պատի մէջ կայ մի արշին բարձրութեան և կէս արշին լայնութեան երեքական պատուհաններ, որոնք արտաքուստ շրջապատուած են գեղեցիկ քանդակներով։ Միակ արևմտեան դուռը բացւում է մի գաւթի մէջ, որ այժմ բոլորովին քանդուած է։ Դուռը շրջապատուած է երեք կամարներով, որոնց ներքև դուրս ընկած տառերով արձանագրուած է.

*Աստ բնակի երեք անձք ու մի բնութիւն սովաւ եղանիւք…*

Վանքը շրջապատուած է եղել պարսպով, որի միայն դարպասն է կանգուն։

Այս վանքին է պատկանում շրջակայքից եօթ խալվար (25 ական փութ) վարելահող։ Թէ այս հողը և թէ ս. Ստեփանոս եկեղեցու պատկանող փոքրիկ անտառը վերահաստատուած են արժ. Տէր Մովսէս Մելիք-Ստեփանեանի ջանքերով։

Բելևից ներքև Բստաձորը սաստիկ նեղանում է, որովհետև այստեղ բարձրանում են Ղարաուլ-խանա, Էլտի, Ջին-դաղ, Դաշ-

*բաշի (5642) և Մապարախ լեռները, ուստի և այս մասում գիւղեր չկան։ Առաջին փոքրիկ գիւղը, որ դիզա (ամրոց) է կոչւում, տեղաւորուած է Մարա-ղարա-դարի (3839 ոտ) լերան ստորոտում և կոչւում է Քեարիմ-ղուլի-դիզա, ունի 26 տուն Թուրք բնակիչ, 119 ար. 110 իգ. ի միասին՝ 229 հոգի։ Այս գիւղից էլ փոքր ինչ ներքև տարածւում է Յուղավէրդի-բէկ-դիզան, 21 տուն Թուրք բնակչով, 38 ար. 22 իգ. ի միասին՝ 60 հոգի։ Սրա մօտ է Օղլան-գեօզ և Ղարա-փաչա-բուրուն լեռները։ Իսկ վերջինիս լանջում Քոշ-դիզա կամ Հիւսէին-Ալի-բէկ-դիզան, 7 տուն Թուրք բնակչով, 14 ար. 17 իգ. ի միասին 31 հոգի։ Ապա գալիս են Սմբատաւն դիզան (21 տուն, 52 ար. 25 իգ. ի միասին 77 հոգի), որի մօտ կան հին ամրոցի աւերակներ, Քալանթար-դիզան (13 տուն, 21 ար. 14 իգ. ի միասին՝ 35 հոգի.) և Միրզա-Հասան-դիզան, (11 տուն, 18 ար. 13 իգ. ի միասին՝ 31 հոգի)։ Սրանից ներքև ձորը լայնանում է, և մի հարթ դաշտ տարածւում է մինչև Արաքսի ափը։ Ահա այստեղ միմեանց կից ընկած են Վերին Ազա, Դեր և Ներքին Ազա հայաբնակ գիւղերը։ Ներքին Ազայում, Արաքսի գրեթէ ափին, բարձրանում են երկու գմբէթաւոր շիրիմներ։ Գիւղի մէջ մի բլրակի վրայ մնում են մի եկեղեցու հետքեր, իսկ սրա մօտ՝ երկու մարմարոնեայ ահագին տապանաքարեր, արաբական տառերով ծածկուած։ Այս երեք գիւղերումն էլ կան մի մի հասարակ եկեղեցի։ Ուշադրութեան արժանի է գեղեցիկ, քարէ կամուրջը, որ ձգուած է Գիլան-չայի վրայ Տէրեան տան ծախսով, որին և՛ պատկանում են Ազաները։*

*Բնակիչները Պարսկաստանից 1827-ին եկած գաղթականներ են, որոնք գրեթէ լիովին պահպանել են իրենց առանձնայատկութիւնները։ Վերին Ազայի բնակիչների մեծագոյն մասը հայեր են, 125 տուն, 426 ար. 329 իգ. ի միասին՝ 755 հոգի, 4 տուն էլ Թուրք, 24 ար. 15 իգ. ի միասին՝ 39 հոգի։ Ներքին Ազայում մեծամասնութիւնը Թուրք է՝ 40 տուն, 98 ար. 100 իգ. ի միասին՝ 198 հոգի, իսկ հայերը միայն 19 տուն. 61 ար. 47 իգ. ի միասին՝ 108 հոգի։ Դերում բոլորն էլ հայեր են, 71 տուն, 258 ար. 220 իգ. ի միասին՝ 478 հոգի։ Վ. Ազայում գտնւում է Նախիջևանից Օրդուբադ տանող փոստային ճանապարհի կայարան։ Սրանից հազիւ 4 վերստ դէպի արևելահարաւ գտնւում է Գիրան քաղաքի աւերակները *). իսկ դէպի արևմուտք Եայիջի Թրքաբնակ գիւղը*

---

**) Իմ այս ճանապարհորդութեան ժամանակ միքանի ժամ միայն կարողացայ մնալ այստեղ և լուսանկարել այն միքանի գերեզմանաքարերը, որ ունին արաբական տառերով տապանագրեր։*

*ուր Ուչ Թափա գագաթների վրայ կան ամրոցի մնացորդներ, գիւղում բազմաթիւ աւերակներ և ընդարձակ գերեզմանատուն մարմարեայ տապանաքարերով։ Բնակիչները 176 տուն են, 1072 ար. 919 իգ. ի միասին 1981 հոգի։*



---

*Զանգեզուրի գաւառում իմ կատարած պեղումների մասին զեկուցանելով Մոսկուայի Հնագիտական Ընկերութեան Կովկասեան Ճիւղին՝ ես ներկայացրի նաև այդ տապանագրերը և հրաւիրեցի միջոցներ գտնել այդտեղ պեղումներ անելու։ Ժողովը համակրութեամբ վերաբերուեց առաջարկիս, ուստի և ես, յուսալով կրկին վերադառնալ այդ հետաքրքրական վայրը՝ յետաձգում եմ դրա նկարագրութիւնը, որ յամենայն դէպս կը զետեղեմ սրան սահմանակից Երնջակ գաւառակի տեղագրութեան մէջ։*

Сегаль I. Л. Сборникъ свѣдѣній о Елисаветпольской губерніи. стр. 300 цѣна 2 р.

*Գանձակի գաւառի հետ ծանօթանալու և այնտեղ ուսումնասիրութիւններ կատարելու համար այս գիրքը գիւտ է։ Մեր Կովկասը այնքան քիչ է ուսումնասիրուած և այնքան աղքատ է գրականութեան մէջ այդ բաժինը, որ իւրաքանչիւր մի այդպիսի գիրք պէտք է ուրախութեամբ ընդունել։ Գ. Սեգալ այս գիրքը գրելուց առաջ անձամբ ինքը շրջագայել է ամբողջ նահանգը և դա. շատ նկատելի է երբ մարդ իւր ձեռքն է առնում այդ աշխատութիւնը, նամանաւանդ առաջի մասում։ Առաջի մասը ամբողջովին յատկացուած է նահանգի տնտեսական կեանքի և դրութեան նկարագրութեան, այստեղ նա խօսում է երկրագործութեան, անասնապահութեան, շերամապահութեան, այգեգործութեան, գինեգործութեան, բամբակաբուծութեան և այլն ճիւղերի մասին։ Շատ հետաքրքիր է բամբակի արդիւնագործութեան մասին տուած տեղեկութիւնները։*

*Բամբակի մշակութիւնը այս նահանգում սկսուել է 1884-ին և այդ տարին արտադրել են բամբակ 5,370 պուդ, իսկ 1900 թւին այդ հասել է մինչև 104633 պուդ. այսինքն 17 տարուայ ընթացքում $31^{1}/_{2}$ անգամ աւելացել է։ Շերամապահութիւնն աւելի հին է, բայց համեմատաբար աւելի դանդաղ քայլերով է առաջանում. 1871-ին արտադրուած է 63,616 պուդ բոժոժ, իսկ 1899-թուին—129,095 պուդ։ Բայց եղել են տարիներ որ աւելի շատ են արտադրած. 1875 թ.—144,243 պուդ։*

*Մեր ընթերցողի ուշադրութիւնը դարձնում ենք այն բանի վրայ թէ ինչպէս շատ անգամ ամենաչնչին և արհամարհուած գործը տալիս է ահագին արդիւնք։ Օր.* солодовый *արմատների արտադրութիւնը անգլիացի ընկերութիւնները նշանակել են իրենց գործակատարները, որոնք ահագին քանակութեամբ արտահանում են այդ արմատները արտասահման դեղեր պատրաստելու համար։ Այսպէս 1892 թ. երկու ընկերութիւններ արտահանել են 2,435,000 պուդ, միջին թւով մի պուդը հաշուելով 20 կոպ. ընտացւում է 487,000 ռուբ.։ Շատ դրա նման ուրիշ նիւթեր մեզանում կորչում են, այն ինչ տեղեակ ազգաբնակութիւնը կարող էր դրանցից էլ օգուտ քաղել. մի խօսքով անտարբերութիւնը մեզանում ամեն բանի մէջ թագաւորում է։*

Գրքի երկրորդ մասը յատկացուած է վիճակագրական տեղեկութիւնների, որոնք գլխաւորապէս վերցրած են պաշտօնական աղբիւրներից։ Հիմնուելով 1897 թ. ժողովրդագրութեան թուերի վրայ ամբողջ Գանձակի նահանգում բնակիչների թիւը հասնում է 878185 մարդ, որոնցից 398242-ը տղամարդիկ են, 479943-ը կանայք. ըստ դաւանութեան բաժանւում են

| | |
|---|---|
| Ռուսադաւան | 10016 |
| Ռուս աղանդաւորներ | 10151 |
| Հայ-լուսաւորչական | 293632 |
| Հռոմէական-կաթօլիկներ | 727 |
| Բողոքականներ | 3347 |
| Այլ և այլ քրիստոնեաներ | 299073 |
| Մահմեդականներ | 552848 |
| Հրէաներ | 2023 |

Կարդալով այս գիրքը դուք կազմում էք մի ամբողջ գաղափար այս նահանգի մասին։ Որքան մեզ յայտնի է, հեղինակը մտադիր է շարունակել իւր այս աշխատութիւնը. Բ. հատորի մէջ կը մտնեն նաև, բացի արդիւնաբերութեան միւս ճիւղերից, և հանքային արդիւնաբերութեան մասին մանրամասն տեղեկութիւններ. ինչպէս յայտնի է այս նահանգը իւր հանքերով, մանաւանդ իւր պղնձի հանքերով, առաջին տեղն է բռնում մեր երկրում։

Ց. ԿԱՐԱ—ՄՈՒՐԶԱ.



Խմբագիր՝ Երուանդ Լալայեանց

# ՕՐԴՈՒԲԱԴԻ ԿԱՄ ՎԵՐԻՆ ԱԳՈՒԼԻՍԻ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

## ԵՒ ԿԱՄ

# ԳՈՂԹՆ

Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

---

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԲՆԱԿԱՐԱՆ*)

*Գողթնում նկատելի են երեք տիպի տներ, հին՝ հայկական, միջին՝ պարսկական և նոր՝ եւրոպական։ Առաջին երկու տիպից այլևս չեն կառուցանում, այլ միայն հները կարկատելով գործածում են կամ որպէս բնակարան և կամ որպէս խոհանոց կամ պահեստի տեղեր։*

*Հին՝ հայկականը գլխատուն կամ ղարադամն է, որ առաւելապէս յատուկ է Ղարաբաղին* [1]*։ Դիտելով այս տիպի կանգուն և աւեր տները, կարելի է նկատել սրա աստիճանաբար զարգացումը. այսպէս՝ ամենահին գլխատան ձեղունը յենւում է չորս սիւների վրայ, միջին ժամանակինը՝ երկու, իսկ նորը՝ միմիայն մինի վրայ։ Այս վերջին տեսակի տներ բազմաթիւ են առաւելապէս Նախիջևանի շրջակայ գիւղերում։ Բացի սրանից նկատւում է նաև,*

---

*) Տես Ազգ. Հանդէս 1904 թ. XI-դ գիրք։

[1] *Այս տիպի տունը բաւական մանրամասն նկարագրած լինելով իմ «Բորչալուի գաւառ» և «Զանգեզուրի գաւառ» աշխատութիւնների մէջ, աւելորդ եմ համարում կրկնել։ Այստեղ կը կամենայի աւելացնել միայն այն, որ Գողթնում տարին երկու անգամ սպիտակ հողով սպիտակեցնում են (ողողում են) տան պատերը և որ բոլոր շէնքերը շինում են հում աղիւսից։*

*Կուլտուրական տեսակէտից կարևոր եմ համարում յիշել նաև այն, որ Գողթնում բոլոր տներն էլ ունեն առանձին արտաքնոցներ, մինչդեռ կուլտուրապէս աւելի առաջ գիւղերում (ինչպէս Ղափանի, Դարալագեազի) մի երկու արտաքնոց հազիւ է պատահում։*

որ փայտէ կամ կաւէ շտեմարանը, որ անհրաժեշտ կարասին է եղել այս տիպի բնակարանի, փոխանակ տան դրան մօտ շինուելու, ամփոփուել է դրան պատի մէջ, որ այս պատճառով մօտ երկու արշին լայնութեան է դառել։ Շտեմարանի բերանը գտնւում է մի պտրհանի [1]) մէջ, որ բացւում է ձեղունին մօտ։ Պատի մէջ, ներքեւումն էլ մի փոքրիկ անցք է թողնուած, փայտէ կափարիչով փակած, որտեղից հանում են շտեմարանի մէջ ածած ցորենը կամ ալիւրը։ Երրորդ փոփոխութիւնը կայանում է նրանում, որ միջնատուն կոչուած սենեակը կիսագետնափոր դարձնելով գործածել են իբր մառան, ուր առաւելապէս գինի են պահել։ Վերջերը՝ պարսկական տան ազդեցութեամբ շատ և մեծ պտրհաններ և մի կամ երկու պատուհան են շինել գլխատան մէջ։

*Միջին՝* պարսկական տիպի տները բաղկացած են 3—4, երբեմն և աւելի, սենեակներից, մառանից (մաղազա) և բաղղադուց (чуланъ)։

Այս տիպի ընդհանուր, յատկանիշ կողմը կայանում է նրանում, որ մեծ ջանք է թափուած որքան կարելի է մեկուսացնել փողոցից։ Տները գտնւում են ոչ թէ ուղղակի փողոցի վրայ, այլ գաւթում. փողոցի առջեւով ձգւում է կամ գաւթի կամ տան յետեւի կողմի, անպատուհան պատը։ Բացի սրանից նոյն իսկ գաւթի մէջ բացուող պատուհաններն էլ ծածկուած են շատ փոքրիկ բացուածքներ ունեցող փայտէ կամ երկաթէ շրջանակներով։ Գրեթէ բոլոր սենեակների մէջ կան մի կամ երկու շարք պտրհաններ, որոնցից մի քանիսը ծառայում են որպէս պատուհաններ։ Առաջնակարգ սենեակների առաստաղը ծածկուած է զանազան ձեւերով կտրատուած մանր տախտակներով։

*Նոր,* եւրոպական տիպի տները լիովին չեն ազատուած պարսկական ազդեցութիւնից։ Սրանցից շատերը նոյնպէս գտնւում են գաւթում, կամ նրանց յետեւ մասն է դարձուած դէպի փողոցը։ Այս պատճառով և՛ ճարտարապետութեան վրայ առանձին ուշադրութիւն չի դարձուած։ Սրանցից շատերն երկյարկանի են, բաղկացած 3—5 սենեակներից, բաւական մեծ պատուհաններով և ընդարձակ պատշգամբով։ Շատ շատերի առաջ կան պարտէզներ, ուր ոչ միայն կան պտղատու ծառեր, այլ և բազմազան ծաղիկներ։ Գեղեցիկ են, մանաւանդ, խաղողի վազերով շրջապատուած հովանոցները, որոնք ամառը իբր ննջարան են ծառայում։

Կահաւորութիւնը կէս պարսկական, կէս եւրոպական է. աչ-

---

[1]) Պտրհան կոչւում է պատի մէջ թողնուած բացուածքը, որ ծառայում է իբր պահարան կամ պարսկական ճաշակով գեղեցկութիւն է տալիս։

քի ընկնող մասը կազմում են գորգերը, որոնցից շատ հիանալիները ու թանգագինները կան։

## ԶԳԵՍՏ ԵՒ ԶԱՐԴ

*Ա. Կանանց.*— Ջոկերի առանձնայատուկ զգեստն ու գլխի յարդարանքը այժմ միմիայն պառաւներն են կրում։ Միջին սերունդը՝ վրացական, իսկ նորը՝ եւրոպական տարազով է, հետեւապէս և մի երկու տասնեակ տարիներից յետոյ այս տարազը եւ բոլորովին դուրս կըգայ գործածութիւնից, տեղի տալով եւրոպականին։

Կանանց զգեստը շատ պարզ է և միանգամայն նման գաւառացիներինին։ Շապիկը երկար է, ոտներից 3—4 վերշոկ բարձր, երկար թեերով և կուրծքին հասարակ կամ զառ բաֆտա (ոսկեթել ժապաւէն) կարած։ Առաւելապէս շիլա կամ ղանաւուզ կտորից։ Շապկի վրայ հագնում են արխալուղ, չթից կամ մետաքսէ կտորից։ Սա գրկելով իրանը, նուաճով սեղմւում է մէջքին և ապա լայն քղանցքներով իջնում մինչև ծնկները։ Թեերը երկար են, և ծայրերին զառ բաւթա ու արծաթէ կոճակներ կարած։ Սրա վրայից, մէջքին կապում են մետաքսէ կամ հասարակ կտորից զօտի։ Ցուրտ ժամանակ մի երկրորդ արխալուղ էլ հագնում են առաջնի վրայ, իսկ հարուստները՝ թաւիշից կամ հասարակ կտորից կարած մուշտակ։

Փողոց դուրս գալիս և մանաւանդ եկեղեցի գնալիս ամբողջովին փաթաթւում են սպիտակ չարսաւի (զօն) մէջ, ծածկելով նոյն իսկ երեսը։ Պառաւները չեն կրում այս չարսաւը։

Ոտներին հագնում են գուլպայ և քօշ՝ կանանչ կամ կարմիր։

*Բ. Տղամարդկանց.* Ջոկերի հին սերունդը, մանաւանդ աղքատները, հագնում են տեղական, հին տարազով, իսկ նոր սերունդը, մանաւանդ հարուստները՝ նոր, եւրոպական տարազով։ Վերին Ագուլիսում տեղական տարազը գրեթէ լիովին տեղի է տուել եւրոպականին, մինչդեռ միւս գիւղերում նա դեռ ես յարատեւում է։

Հին, տեղական տարազը կայանում էր հետեւեալում. Շապիկը կարւում էր կտաւից, կրծքի բացուածքը կոճկւում էր անրակի մօտ, թեերը հասնում էին մինչև դաստակը և այստեղ կոճկւում։ Սրա վրայ, ոտներին հագնում էին շալւար շալից կամ հասարակ կապտագոյն կտաւից. շալւարի վերին մասն ուչկուրով ամրանում էր, իսկ ներքին մասը, փեղքերը, դրւում էին գուլպայի մէջ և վերայից տոլաղով կապւում։ Շապիկի վրայից հագնում էին արխալուղ կապոյտ կտաւից կամ չթից և կամ ղանա-

քի ընկնող մասը կազմում են գորգերը, որոնցից շատ հնամալի-ներն ու թանգագինները կան։

## ԶԳԵՍՏ ԵՒ ԶԱՐԴ

Ա. Կանանց.—Զօկերի առանձնայատուկ զգեստն ու գլխի յարդարանքը այժմ միմիայն պառաւներն են կրում։ Միջին սերունդը՝ վրացական, իսկ նորը՝ եւրոպական տարազով է, հետեւապէս եւ մի երկու տասնեակ տարիներից յետոյ այս տարազը եւ բոլորովին դուրս կըգայ գործածութիւնից, տեղի տալով եւրոպականին։

Կանանց զգեստը շատ պարզ է եւ միանգամայն նման գաւառացիներինին։ Շապիկը երկար է, ոտներից 3—4 վերշոկ բարձր, երկար թեւերով եւ կուրծքին հասարակ կամ զառ բաֆտա (ոսկեթել ժապաւէն) կարած։ Առաւելապէս շիլա կամ ղանաւուզ կտորից։ Շապկի վրայ հագնում են արխալուղ, չթից կամ մետաքսէ կտորից։ Սա գրկելով իրանը, նուաճով սեղմւում է մէջքին եւ ապա լայն քղանցքներով իջնում մինչեւ ծնկները։ Թեւերը երկար են, եւ ծայրերին զառ քաւթա ու արծաթէ կոճակներ կարած։ Սրա վրայից, մէջքին կապում են մետաքսէ կամ հասարակ կտորից զօտի։ Ցուրտ ժամանակ մի երկրորդ արխալուղ էլ հագնում են առաջնի վրայ, իսկ հարսանները՝ թաւիշից կամ հասարակ կտորից կարած մուշտակ։

Փողոց դուրս գալիս եւ մանաւանդ եկեղեցի գնալիս ամբողջովին փաթաթւում են սպիտակ չարսաւի (զօն) մէջ, ծածկելով նոյն իսկ երեսը։ Պառաւները չեն կրում այս չարսաւը։

Ոտներին հագնում են գուլպայ եւ քօշ՝ կանանչ կամ կարմիր։

Բ. Տղամարդկանց. Զօկերի հին սերունդը, մանաւանդ աղքատները, հագնում են տեղական, հին տարազով, իսկ նոր սերունդը, մանաւանդ հարուստները՝ նոր, եւրոպական տարազով։ Վերին Ագուլիսում տեղական տարազը գրեթէ լիովին տեղի է տուել եւրոպականին, մինչդեռ միւս գիւղերում նա դեռ եւս յարատեւում է։

Հին, տեղական տարազը կայանում էր հետեւեալում. Շապիկը կարւում էր կտաւից, կրծքի բացուածքը կոճկւում էր անրակի մօտ, թեւերը հասնում էին մինչեւ դաստակը եւ այստեղ կոճկւում։ Սրա վրայ, ոտներին հագնում էին շալւար շալից կամ հասարակ կապտագոյն կտաւից. շալւարի վերին մասն ուչկուրով ամրանում էր, իսկ ներքին մասը, փեղքերը, դրւում էին գուլպայի մէջ եւ վերայից տոլաղով կապւում։ Շապիկի վրայից հագնում էին արխալուղ կապոյտ կտաւից կամ չթից եւ կամ ղանա-

ուղից։ Արխալուղի կուրծքը կոճկւում էր կամ ղայթանի և կամ մետաղեայ կոճակներով։ Մէջքին կապում էին գօտի, հասարակ կամ շալ կտորից, մօտ երեք մետր երկարութեան։ Արխալուղի վրայից հագնում էին չուխայ, շալից կամ մահուդից։ Սա երկու



տեսակ էր լինում. Թեւքատոր և չարքազի։ Առաջինը տարբերւում էր երկրորդից առաւելապէս նրանով, որ առաջնի սովորական թեւերի փոխարէն, ունէր բաւական երկար թեւեր, որոնք կամ տակից կախ էին ընկնում, թոյլ տալով որ բազկի վրայ արխալուղի ամբողջ թեւն երեւայ։ Գեղեցկութեան համար թեւա-

ւոր չուխի թևքերը կամ ձգում էին ուսերին և կամ ձախը ձգում էին ձախ ուսին, իսկ աջը բռնում էին մեջքին դրած ձեռներում։ Ոտներին հագնում էին գուլպայ և քոշ։ Գլխին ծածկում էին գառան մորթուց կարած շատ բարձր (բուխարու) կամ միջակ բարձրության փափախ։

## ԳԼԽԻ ՅԱՐԴԱՐԱՆՔ

*Ա. Աղջիկների.*— Սրանք մինչև ամուսնանալը գլուխ չէին կապում, այլ մազերը սանրում էին, երկու հավասար մասի բաժանում, յետևի մասը հյուսում, 3—7 ծամ անում, իսկ քունքերի մոտինը այտերի վրայով քաշ ձգում։ Ապա մի «ճլալխ»—կարմիր կտավից եռանկյունաձև ծալված մի կտոր—ձգում էին գլխին, ծայրերը բկով անցկացնում և ծոծրակի մոտ հանգուցում, այնպես որ ճակատից փոքր ինչ բարձր երևում էին մազերը, իսկ չհյուսած մազերի փնջերը կախ էին ընկնում այտերի վրայից մինչև կուրծքը։

Հարսնացուները աղջիկների գլխին ճլախի տակից մի արախչին էին ծածկում, որի առաջի մասում, ճակատի վրայ, արծաթի դրամներ էին շարված լինում։

Իբր բուրմունք գործ էին ածում վարդի ջուր (գիւլաբ), որ պատրաստում էին վարդը ջրի մեջ եփ տալով։

Նորափեսաները իրենց հարսնացուներին նուիրում էին «մըրխկալած խնձոր» և սրանք ամենայն խնամքով պահում էին իրենց գրպաններում, որպեսզի անուշահոտություն բուրէ։ Մըրխկալած խնձորը մի խնձոր էր, վերան չոր մեխակներ խրած և ոսկեզօծ (զառ) թղթի մեջ փաթաթած։

Գեղեցկանալու տենչացողներն աչքերին «ծարուր» (սուրմա) էին քաշում, որը պատրաստում էին այսպէս. դմակ կամ հաւի իւղի մեջ բամբակէ պատրոյգ էին անցկացնում, վառում և փոքր ինչ բարձրից մի աման բռնում, որպեսզի մուրը նստի վերան. ապա այս մուրը հաւաքում էին և լցնում հաւի ոտի կաշուց կարած պարկի մեջ ու պահում. հարկաւոր դէպքում միլով—կեռ փայտիկով—վերցնում էին այս մրից և քաշում աչքերին, որպեսզի սևորակ դառնան։

Մազերը երկարացնելու յուսով թէ աղջիկները և թէ կանայք հինա էին դնում։ Նոյնը անում էին պառաւները գլխի քոսը կտրելու, աչքերը չցաւելու նպատակով։ Հինան ջրով կամ գինով շաղախում էին, դնում միքիչ տաք տեղ՝ ձմեռը՝ քիւրսու վրայ, ամառը՝ արևի տակ՝ որ թթուի։ Յետոյ գլուխները լուանում էին,

հինան քսում գլխներին, մի շոր փաթաթում և մի օր այսպէս փաթաթած մնալուց յետ՝ հետևեալ օրը լուանում էին։ Պառաւ կանանցից շատերը այժմ էլ շարունակում են տարէնը մի կամ երկու անգամ հինա դնել։

*Մազերը կակղացնելու* համար լուանում էին մածունով, կամ թանով, և կամ ձուի դեղնուցով։ Իսկ *թեփից* ազատուելու համար գլուխը լուանալիս ջրախառն քացախ էին գործածում։

*Բ. Կանանց*.—Սրանք սովորաբար շաբաթը մի անգամ, շաբաթ օրը, լուանում էին գլուխներն սապոնով կամ գիլով և յետոյ, երբ չորանում էր, կապում էին յարդարանքը և այդպէս կապած մնում ամբողջ մի շաբաթ։ Նոյն իսկ գիշերները չէին քանդում, որովհետև կապելը 1—2 ժամ է խլում։ Որքան տանջւում էին նորահարսները մինչև որ ընտելանում էին այդ ծանր և միշտ կապած յարդարանքին։

Գլուխը սանրելուց յետոյ գագաթի մէջ տեղից հերագիծ (raie) են բաց անում, յետևի մասի մազերը հիւսում են և ծամեր անում. ապա քունքի մօտի մազերը ոլորում են և այտերի վրայով կախ ձգում, ծայրերը բռնում բերանով, ապա «*տկլի ելախը*» (եռանկիւնաձև ծալուած սպիտակ կտաւ) ձգում են գլխին, ծայրերը բերում ըկի տակով անցկացնում և կապում ծոծրակի վրայ։ Սրա վրայից կապում են *թաքեալթուն* և *պալին*.—Թաքեալթուն 9 սանտիմետր լայնութեան և 72 սանտիմետր երկարութեան երկտակ մի կտոր է, որի մէջ տեղում երեք կոճակներով միացած է պալին։ Վերջինս պատրաստելու համար 27 սանտիմետր երկարութեան զանազան կտորների վրայ շրէշ կամ խմոր են քսում և ոլորում, մինչև որ դառնում է 13 սանտիմետր հաստութեան, ապա նրան պայտաձև դիրք են տալիս։ Թաքեալթին ձգում են գագաթին, այնպէս որ ծածկում է ճակատի կէսը, ապա ծայրերն ականջի տակով անցկացնելով հանգուցում են։ Պալին նստում է գագաթին, ծայրերը դէպի ծոծրակը ուղղուած։ Պալու տակից կապում են «*պալի տակի շորը*», որ 9—12 սանտ. լայնութեան ծալուած կտաւի կտոր է. Սա կապում են, որպէսզի պալին բարձրանայ թեաքեալթից, որի հետ միացած է ղայթանի բաւական երկար ճարմանդներով։

Յետոյ մի ուրիշ կտաւէ կտոր նախ եռանկիւնաձև և ապա 23—27 սանտիմետր լայնութեան ծալելով, կապում են ճակատի վրայով ծոծրակին՝ այնպէս որ գրկում է թաքեալթին և պալին ու սրանց թիք պահում. սա կոչւում է *ղամզա*։ Ապա *բըշմաղը*, որ 72 սանտիմետրաչափ քառակուսի, սպիտակ կտոր է, եռանկիւնաձև ծալում են, բերանի ու քթի ծայրի վրայով ձգում և երկու ծայրը ծոծրակի մօտ հանգուցում են. ապա այս կտորի

կրծքի վրայ կախ ընկած եռանկիւնաձև մասը միքանի անգամ իրար վրայ ծալում են և բկի մօտ 9 սանտիմետր լայնութեամբ ամրացնում այնպէս՝ որ սա գնչի տարածութիւնը 9 սանտիմետրաչափ երկարացնում է։

Սովորութիւն է, որ ի նշան յարգանքի և չխօսկանութեան՝ մինին տեսնելիս բըշմաղը բարձրացնում են քթի վրայ, իսկ առանձին եղած ժամանակ քաշացնում են բերնից ցածր։

Բըշմաղի վրայից, երբեմն էլ տակից, կապում են վըըի ճլախը, մի մետրաչափ քառակուսի կտաւի կտորը ձգում են գըլխին, կողքերը ոլորում և քունքերի մօտով անցկացնելով բկի տակով տանում են և ծոծրակի մօտ հանգուցառում։ Ապա 36 սանտիմետրաչափ կտաւը նախ եռանկիւնաձև և ապա 18—22 սանտիմետր լայնութեան ծալելով, դնում են ճակատի վրայ և հանգուցառում ծոծրակի մօտ. սա կոչւում է ղաժզա։ Ապա 72 սանտիմետրաչափ քառակուսի, սպիտակ մի կտոր նախ եռանկիւնաձև և ապա 18—22 սանտիմետր լայնութեան ծալելով դնում են բըշմաղի վրայ, այնպէս որ բերնի մօտի բըշմաղից 5 սանտիմետրաչափ ցած լինի, և յետոյ վզի վրայ ամրացնում։ Յետոյ կապում են չալաքանղը. սա եռանկիւնաձև, երկտակ, երկու կտորներ են (31 ս. երկ. և 16 ս. բարձ.) որոնց երկու ծայրերը միացած են միմեանց հետ ժապաւէնով, իսկ երրորդ ծայրերին ամրացրած է ղայթան։ Սա անց են կացնում գլխի վերայ այնպէս, որ եռանկիւնիների հիպոտենուզան ձգւում է այտերի ուղղութեամբ և ամբողջ կտորը գրկում է ծոծրակը։ Յետոյ ծայրի ղայթաններն անցկացնում են բկի տակով և հանգուցառում ծոծրակի մօտ։ Ապա քունքի մօտի մազի փնջիկը ոլորում են և ծայրը ամրացնում այս ղայթանի վերայ։ Յետոյ կապում են մանղիլը։—Սա քիշմիր կամ շալ և կամ ուրիշ թանգագին, գունաւոր կտոր է, 45 ս. երկ. և 36 ս. լայնութեան, աստառած և վերին ծայրերում «կըպուճ»—կտորէ ժապաւէն—կարած։ Սա դնում են չընըքկապու վրայ, ժապաւէնն անցկացնում վզովը և բկի մօտ ամրացնում։ Մանղիլը ձգւում է իր երկարութեամբ (39 ս.) կրծքի վրայ։ Երբեմն մանդիլի շուրջը արծաթաթելով ծոփեր՝—գիւլաբաթլու սաչաղ—են կարում։ Յետոյ անց են կացնում Հըըսանոցը.—մի թելի վրայ անց է կացրած 16—20 հատ արծաթեայ սնամէջ և զարդարուած գնդակիկներ, որոնց միջի երկու գնդակիկների մօտ ամրացրուած են արծաթեայ քօղով եռանկիւնաձև ճարմանդներ՝ պտիկ չանգեալ՝ և մի մի արծաթեայ քորոց՝ սանճաղ պաշի. արծաթեայ շղթայով թելի վերի մասումն էլ մի պղնձեայ ճարմանդ կայ. հըըսանոցը անց են կացնում գըլխին այնպէս, որ գնդակիկները կանգնում են քունքերի մօտի

մազերի վերայ, վերի ճարմանդն ամրացնում են գագաթին, իսկ ներքևի, մի փնջակիկից վերև եղող ճարմանդներից իւրաքանչիւրը բարձրացնում են և խրում ճակատի վրայի զամքի վրայ։ Ապա մի ուրիշ 36 սանտիմետրաչափ քառակուսի կտոր՝ նախ եռանկիւնաձև և ապա 9 ս. լայնութեան ծալած կապում են բկի տակով մանգլի վրայից և ամրացնում վզի վրայ։ Յետոյ 72 սանտիմետրաչափ կարմիր մետաքսեայ մի կտոր, որ «ղըըմըզ» է կոչւում, նախ եռանկիւնաձև և ապա 9—14 սանտիմետր լայնութեան ծալելով կապում են կզակի վրայ, այնպէս որ միայն սպիտակ բըշմազից 2 սանտիմետրաչափ երևում է, իսկ միւս չնըքկալները ծածկւում են։ Սրա վրայից նոյն կերպ կապում են կանաչ ղըրմըզ և ապա Հալապի կոչւած նոյն մեծութեան և նոյն կերպ ծալւած, առաջինը կանաչ, երկրորդը դեղին ու կարմիր մետաքսեայ կտորները, մէկը միւսից փոքր ինչ ցած, այնպէս որ գնչի վրայ երևում են սպիտակ, կարմիր, կանաչ, դեղին և կարմիր գոյնի կտորները։ Ապա ծածկում են ճըկըտանոցը, որ այսպէս են պատրաստում. 54 ս. երկարութեան շաքարի թղթի վրայ չրեշ կամ խմոր են քսում, և 12 ս. լայնութեամբ 3 կամ 4 անգամ ծալում. ապա սրա վրայ շոր են կարում, յետոյ երեսին քաշում են արծաթի թելով ասեղնագործած մի կտոր։ Սովորաբար ասեղնագործում են վարդ, թռչուն, խաչ, աստղեր և այլն։ Սրա վարի եզրից ամրացնում են արծաթեայ մի շղթայ՝ չամփայ, որից արծաթեայ կարճ շղթայով կախուած են «ճիթ»-եր, որ բաղկացած են արծաթեայ երկու կամ երեք կտոր տափակ, մնամէջ, նշխուած 2 1/2 սանտիմետր երկարութեան և մօտ 1 1/2 ս. լայնութեան «թապաղայ»-ներից, որոնց միջինի վերայ ամրացրուած են կարմիր և կանաչ հասարակ ակներ։ Թապաղաների ծայրին ամրացած է 3 հատ արծաթեայ փոքրիկ գընդակիկ—պիւժիւժ կամ ճիթըպըտոկ, ճըկըտանոցի չորս ծայրերին էլ ամրացրուած են ժապաւէններ։ Ճըկըտանոցը դնում են գլխին այնպէս, որ ճիթերն իջնում են մինչև ունքերը, յետոյ յետևի մասում ժապաւէնները հանգուցում են միմեանց հետ։ Ճըկըտանոցի վրայից ձգում են՝ երիտասարդ կանայք կարմիր՝ իսկ պառաւներն՝ սպիտակ՝ կընջիկ։ Սգաւորները սգի ընթացքում, և այրիները մինչև կրկին ամուսնութիւնը կընջիկ չեն ձգում։

Կընջիկը չիթիլայ է, եռանկիւնի ծալւած, որի եռանկիւնի ծայրը ձգում են գագաթին, իսկ ուղիղ մասը ծոփերով քաշ տալիս ճըկըտանոցի երեսին՝ այնպէս որ աչքերն էլ ծածկւում են։ Կնջիկի վրայից ձգում են միծ յիլախ, որ սովորաբար լինում է գունաւոր շալ կամ մետաքսեայ կտոր՝ հալաթի, 6—7 ր. արժո-

ղութեան, քառակուսի, մօտ մէկ ու կէս մետր մեծութեան, որի մի ծայրին կայ արծաթեայ ճարմանդ-չանգեալ։ Եռանկիւնաձև ծալում են, ճարմանդաւոր մասը ձգում գլխին, ապա նոյն ծայրն անցկացնում բկի տակով և միւս կողմից նոյն շալի մէջ ճարմանդում։ Յետոյ շալի միւս ծայրը վերցնում են, իրար վերայ երկու անգամ եռանկիւնաձև ծալում և վերի ծայրերը ձգում ուսերի վերայ, ապա հըրսանոցի չանգալը, որ դամղի վրայ էր խրած, հանում են և ամրացնում այս շալի վրայ, ինչպէս և սանճաղ պաշիները։ Շալն այնպէս են ձգում, որ պառաւներինը ամբողջ ճըկլըտանոցը ծածկում է, իսկ երիտասարդներինը՝ մնում է միայն գագաթի վրայ և կնջիկը ամբողջովին երևում է։ Շալի վրայից վզի վերայով ձգում են չանգալը։ Սա արծաթեայ երեք խուփ է, իւրաքանչիւրը 2—4 ս. մեծութեան, որոնք միացած են միմեանց հետ 4—5 արծաթեայ շղթաներով, որոնցից վերջինի, ինչպէս և այս խփերի վրայ, քաշ են գալիս 2 սմտ. շղթաներով փոքրիկ արծաթեայ, մամէջ գնդակիկներ՝ պիւժոժ։ Միջին խուփի վերի մասից մի երկտակ արծաթեայ շղթայ է ձգւում, մօտ 11 ս. երկարութեան, որի ծայրին եռանկիւնաձև մի ճարմանդ՝ գլխի չանգեալ՝ է ամրացրած։ Միւս երկու խուփերից մինի վերայ ես մի ուրիշ, եռանկիւնաձև արծաթեայ ճարմանդ՝ չանգեալ՝ է անմիջապէս միացած, իսկ երրորդի վրայ՝ երկու արծաթեայ կարթեր են ամրացրուած։ Կարթերը ձգում են ըրեսանոցի ներքին գնդակիկի վրայից, այնպէս որ գնդակիկը մնում է կարթերի բացուածքի մէջ, միւս ճարմանդը վզի վերայով անցկացնելով միւս քունքերի մօտ ճարմանդում են, իսկ գլխի չանգալը ամրացնում դամղի վրայ։ Զանգալն այսպիսի երկու հատ է լինում, որ ամրացնում են գլխի աջ և ձախ կողմերում։

---

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՐՔ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՐՍԱՆԻՔԻ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Հասակ.*—Գողթան գաւառն այն սակաւաթիւ գաւառներից է եղել, ուր փոքրահասակների ամուսնութիւնը շատ հազիւ է տեղի ունեցել[1])։ Երիտասարդը 20 տարեկանից,

---

[1]) Հին հարսանիքի վերաբերութեամբ ես նիւթեր եմ հաւաքել Ցղնայում առաւելապէս պ. Գասպար Գաբրիէլեանից, և Ագուլի-

գութեան, քառակուսի, մօտ մէկ ու կէս մետր մեծութեան, որի մի ծայրին կայ արծաթեայ ճարմանդ-չանգեալ։ Եռանկիւնաձև ծալում են, ճարմանդաւոր մասը ձգում գլխին, ապա նոյն ծայրն անցկացնում բկի տակով և միւս կողմից նոյն շալի մէջ ճարմանդում։ Յետոյ շալի միւս ծայրը վերցնում են, իրար վերայ երկու անգամ եռանկիւնաձև ծալում և վերի ծայրերը ձգում ուսերի վերայ, ապա հըրսանոցի չանգալը, որ ղամղի վրայ էր խրած, հանում են և ամրացնում այս շալի վրայ, ինչպէս և սանճաղ պաշիները։ Շալն այնպէս են ձգում, որ պառաւներինը ամբողջ ճակատանոցը ծածկում է, իսկ երիտասարդներինը՝ մնում է միայն գագաթի վրայ և կնջիկը ամբողջովին երեւում է։ Շալի վրայից վզի վերայով ձգում են չանգալը։ Սա արծաթեայ երեք խուփ է, իւրաքանչիւրը 2—4 ս. մեծութեան, որոնք միացած են միմեանց հետ 4—5 արծաթեայ շղթաներով, որոնցից վերջինի, ինչպէս և այս խփերի վրայ, քաշ են գալիս 2 սանտ. շղթաներով փոքրիկ արծաթեայ, մնամէջ գնդակիկներ՝ պլուժով։ Միջին խուփի վերի մասից մի երկտակ արծաթեայ շղթայ է ձգւում, մօտ 11 ս. երկարութեան, որի ծայրին եռանկիւնաձև մի ճարմանդ՝ գլխի չանգեալ՝ է ամրացրած։ Միւս երկու խուփերից մինի վերայ եւ մի ուրիշ, եռանկիւնաձև արծաթեայ ճարմանդ՝ չանգեալ՝ է անմիջապէս միացած, իսկ երրորդի վրայ՝ երկու արծաթեայ կարթեր են ամրացրուած։ Կարթերը ձգում են ըրեսանոցի ներքին գնդակիկի վրայից, այնպէս որ գնդակիկը մնում է կարթերի բացուածքի մէջ, միւս ճարմանդը վզի վերայով անցկացնելով միւս քունքերի մօտ ճարմանդում են, իսկ գլխի չանգալը ամրացնում դանդի վրայ։ Ջանգալն այսպիսի երկու հատ է լինում, որ ամրացնում են գլխի աջ և ձախ կողմերում։

---

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՐՔ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՐՍԱՆԻՔԻ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Հասակ.*—Գողթան գաւառն այն սակաւաթիւ գաւառներից է եղել, ուր փոքրահասակների ամուսնութիւնը շատ հազիւ է տեղի ունեցել[1]։ Երիտասարդը 20 տարեկանից,

[1]) Հին հարսանիքի վերաբերութեամբ ես նիւթեր եմ հաւաքել Ցղնայում առաւելապէս պ. Գասպար Գաբրիէլեանից, և Ագուլի-

աղջիկը՝ 15-ից յետոյ միայն ենթարկուել են ամուսնական լծին, իսկ այժմ աւելի ուշ։

*Ամուսնացողների հասակի համեմատութիւնը.*— Ամուսնացող զոյգի հասակի տարբերութիւնը շատ մեծ չէր լինում. 5—10, շատ հազիւ 15 տարի։ Քսան տարեկանից բարձր աղջիկը, որ պառաւած էր համարւում՝ միայն այրիացած մարդու հետ կարող էր ամուսնանալ։ Համարեա բոլորովին չէր պատահում, որ կինը ամուսնուց տարիքով աւելի լինէր։ Այժմ համեմատաբար շատ աւելի բարձր հասակում են ամուսնանում։

*Ամուսնացողներն ըստ ազգութեան.*—Հնումը հազիւ էր պատահում, որ զոկը ուրիշ գաւառացի հայի և մանաւանդ օտարազգի հետ ամուսնանար։ Ահագին հեռաւորութիւնից վերադառնում էր իւր հայրենի գիւղը յատկապէս պսակուելու նպատակով, միքանի ամսից յետոյ թողնում էր կնոջը և նորից պանդխտում 1—3 -5—7 տարի մնալով օտար երկրներում։ Շատ շատերի համար ծննդավայրի հետ կապող կապը միայն կինն ու երեխաներն էին լինում։ Բայց այժմ շատ յաճախ պատահում է, որ զոկը ոչ միայն ուրիշ գաւառացի հայի, այլև օտարազգու հետ ամուսնանում է, շատ անգամ ընդ միշտ կտրուելով իւր ծննդավայրից։ Եւ այս երևոյթն առաւելապէս նկատւում է ուսում, մանաւանդ բարձրագոյն ուսում, առած մարդկանց մէջ։ Իգական սեռից թէպէտ և շատերը հաճութեամբ հարս են գնում Մեղրի, Օրդուբադ, Նախիջևան և այլ տեղերի հայերի տները, բայց դեռ չէ պատահած մինը՝ որ ամուսնացած լինէր մի օտարազգու հետ։

*Ամուսնացողների համաձայնութիւնը.*— Հնումը զոկերը ևս ամուսնական խնդրում առանձին նշանակութիւն չէին տալիս փեսացուի և մանաւանդ հարսնացուի կամքին ու համաձայնութեան։ Շատ անգամ օտարութեան մէջ եղող

ում՝ պ. Գրիգոր Աբրեանից։ Բացի սրանից ի նկատի եմ ունեցել Տէր Յակոբ հօր տետրը՝ Ներքին Ագուլիսի և պ. Հախնազարեանինը՝ Վերին Ագուլիսի վերաբերութեամբ։

որդին նամակ էր ստանում ծնողներից, որ իրեն նշանել են և պատուիրում են, որ մի քանի ամսից վերադառնայ պսակուելու։ Աղջկայ համար չափազանց մեծ ամօթ էր համարւում, որ հետաքրքրուէր ամուսնու ընտրութեամբ. այդ մասին խօսք լինելիս՝ նա անշուշտ պիտի հեռանար և լռէր։ Այժմ այդ «նամուսի» ժամանակներն անցել են, և ոչ միայն տղան այլ և աղջիկը իրենց ձայնը լսելի են դարձնում։

Փառակայում աւանդաբար պատմում են, թէ հին ժամանակներում իրենք աղջիկներն էին ընտրութիւն անում և ոչ թէ տղաները։ Եւ ում հետ որ կամենում էին ամուսնանալ, գնում էին նրա տան հերթիկից մլաւում։ Ուշագրաւ է նաև այն, որ Աղէքսանդրապօլում երբ մի աղջկայ համար կամենում են ասել թէ ցանկանում է ամուսնանալ՝ հեգնում են, թէ մռնխաւ է կանչում։

Օրօրոցախազի սովորութիւնն այս գաւառում ևս տեղի է ունեցել։ Ծնողները միմեանց հետ բարեկամանալու և մանաւանդ վրէժխնդրութիւնը կամ տոհմային թշնամութիւնը վերացնելու նպատակով խոստանում էին իրենց երեխաներին միմեանց հետ ամուսնացնել, երբ 10—11 տարեկան դառնան։ Նոյնն անում էին նաև այն ծնողները, որոնց որդիները չէին ապրում. յուսալով, որ նշանածի արևը կարող էր պահպանել այսպիսի որդուն, նրան շուտով նշանում էին։ Այժմ այս սովորութիւնը բոլորովին վերացել է։

Աղջիկ փախցնելու սովորութիւնը շատ հազուադէպ է եղել, իսկ այժմ բոլորովին վերացել է։

Լեվիրատ.--Իբր այս վաղեմի սովորութեան մնացորդ նկատելի է այն՝ որ վախճանուած փեսացուի փոխարէն՝ նրա եղբայրն է ամուսնանում սրա նշանածի հետ, ինչպէս այդ պատահել է Փառակայում, և կամ վախճանուած հարսնացուի փոխարէն՝ նրա քոյրն է հարսնանում սրա նշանածին, ինչպէս եղել է Ցոնայում։

Աղջիկ ուզել.—Հարսնացուի ընտրութեան միջոցին

մեծ ուշադրութիւն դարձնում են նրա մոր.բնաւորութեան վրայ, առաջնորդուելով այն սկզբունքով, թէ «Եթէ մայրը ծառը բարձրանայ՝ աղջիկը ճիւղերի վրայ ման կը գայ»։ Ընտրութիւնից յետոյ երիտասարդի մօրեղբայրը կամ քեռայրը իբր «խնամախօս» գնում է աղջկայ ծնողների մօտ և ասում. «Աստծոյ հրամանաւը նո՞ղըմ ըք ձիր ախչիկը միր տղին հետի, եթէ ցղնեցի է, կամ՝ նիգա՞մ ըք ձիր ախչիկը միր տղան հա՞ռի, եթէ ազուլեցի է։

Եթէ կամենում են մերժել՝ ասում են. Ակնեխ վա՞րա՞ն ըս ակալ, տղաղ ալ ա օքուտ, տօնդ ալ ա օքուտ, ամա միզ ախչիկ չօնըք ձիր տղան տալու»։

Իսկ եթէ մտադիր են տալու, մի երկու օր ձգձգում են, իբր թէ խորհրդակցելու են և ապա խօսք տալիս։ Իսկոյն օղի են մատուցանում, որ հետևեալ կերպով բարեմախտելով խմում են. Աստուած շնորհաւոր արի, Աստուած պարի վայելում տօ։

*Բալգան*.—Աղջկայ ծնողներից համաձայնութեան խօսքն առնելուց յետոյ եթէ փեսացուն բացակայ է լինում գիւղից, նրա ծնողները կամ խընըմախօսները խնձորի մէջ խրած մի մատանի տանում են աղջկայ տունը, հիւրասիրւում և մատանին հրապարակաւ դնում աղջկայ մատը։ Եթէ երիտասարդը ներկայ է լինում՝ բալգան տեղի չի ունենում, այլ ուղակի՝ նշանադրութիւն։

*Նըշընդըլիք*.—Միքանի օրից յետոյ մի երեկոյ փեսացուի մայրը մրգեր է ածում մի խոնչի մէջ, նշանի մատանին մի մետաքսեայ թաշկինակի ծայրին կապած դնում վերան և փեսացուի ու մօտիկ բարեկամ տղամարդկանց ու կանանց հետ դափ ածելով ու երգելով գնում հարսնացուի տունը։ Ներս մտնելով «բարիլոյս» էին ասում, չնայելով որ երեկոյ էր, որպէսզի չարը խափուի թէ լոյս է և չմերձենայ իրենց։ Փեսացուն քաւորի հետ միասին կանգնում էր դրսի դռան առաջ, մինչև որ զոքանչը, քենին և այլ խնամիներ չէին գալիս բերում նրան ու ներս հրաւիրում, տալով նրան զանազան քաղցրեղէններ. ոմանք

նույնիսկ մի կտոր շաքար դնում էին նրա բերանը, իսկ նա հանում էր և տալիս խաչեղբորը՝ որ պահի։ Երբ մոտենում էր դահլիճի դուռը՝ ներսից նրա բարեկամները ծիծաղելով հարցնում էին հարսնացուի հորը, թէ՝ ինչ է ընծայելու փեսացուին, որ ներս մտնի։ Նա էլ կատակով խոստանում էր մի այգի, մի պարտէզ ընծայել։ Փեսացուն մտնում էր ներս, համբուրում աներոջ ձեռքը, սա էլ նրա ճակատը և ապա խելօք կանգնում քաւորի մօտ։ Ամօթ էր համարւում նստել, խօսել և կամ՝ ընթրիքի ժամանակ հաց ուտել։ Մի քիչ յետոյ հարսնացուն մի կնոջ առաջնորդութեամբ գալիս էր և կանգնում փեսացուի դէմը. քահանան, որ նոյնպէս հրաւիրուած էր լինում, օրհնում էր մատանին և տալիս փեսացուին, որ անց էր կացնում հարսնացուի աջ ձեռի միջամատը։ Ապա հարսնացուն հեռանում էր, իսկ միւսները նստում էին ընթրելու։ Հիւրերը ցրուելիս փեսացուին թոյլ չէին տալիս գնալու, նորից սփռոց էին ձգում և գլխաւորապէս կանայք սկսում էին հիւրասիրել նրան։ Զոքանչը և սրա հետևողութեամբ միւս կանայք մի-մի բաժակ գինի էին մատուցանում փեսացուին, որ խմելուց յետոյ մի դրամ (30 կ.) կամ մի փանաքանդ (15 կ.) էր ձգում բաժակի մէջ և յետ տալիս։ Այս բաժակը կոչւում էր՝ փայլթոս—փեսայի թաս։

Այսպէս կատարւում էր Ներքին Ագուլիսում և Ցղնայում, մինչդեռ Վերին Ագուլիսում նշանադրութիւնը երկու հանդիսով էր կատարւում. «Նշան կապել» և փալկանչ։ «Նշանը» տարւում էր փեսացուի տանից առաջ փեսայի կամ մի ուրիշ մօտիկ բարեկամի առաջնորդութեամբ, մի-քանի ազգականների հետ։ «Նշանը» մի մեծ մատուցարանի մէջ ածած չոր և թաց մրգեր էր, մէջտեղ մի փոքրիկ գըլուխ շաքար դրած, կողքին մի գեղեցիկ, փոքրիկ, յաճախ արծաթեայ, տուփի մէջ 10—20 ոսկիներ և մի մատանի դրած, վրան էլ մի մետաքսէ թաշկինակ ձգած, ու ամբողջը ծաղկի փնջերով զարդարուած։ Շատ անգամ չորացած մեխակներ ցցելով մի մեծ խնձորի մէջ դրում էին

հարսնացուի անունը։ Շաքարի գլուխը և մրգերից շատերը լաժվարդած էին լինում—ոսկեփոշով ոսկեզօծած։ Հարսնացուի տանն էլ հրաւիրւում էին նրա բարեկամ տղամարդիկ և կանայք «նշանը բաց անելու», մէկ մէկ վերցնում էին ուղարկուած իրերը, նայում և շնորհաւորում։ Ապա ընթրում էին և ցրւում։ Հետևեալ օրը նոյն մատուցարանի մէջ լցնում էին նոյնպիսի չոր և թաց մրգեր, զարդարում ծաղկի փնջերով, մի խնձորի վրայ մեխակով գրում փեսացուի անունը և ուղարկում փեսացուին։ Այս դարձի նուէրի մէջ դրուած էր լինում նաև մի մետաքսէ թաշկինակ, իբր «խալաթ» «նշան բերող» փեսային։

Մի քանի օրից յետոյ հարսնացուի ծնողները հրաւիրում էին փեսային նրա ծնողների և բարեկամների հետ իրենց մօտ, ուր ժողովւում էին նաև իրենց բարեկամները։ Այս հրաւէրը կոչւում էր *փսականչ*.—Փեսացուն մի ոսկի մատանի, իսկ իւր բարեկամները մի մի զարդ էին տանում հարսնացուի համար։ Երեկոյեան փեսացուն տեսնւում էր հարսնացուի հետ և ամենից ուշ վերադառնում տուն։

Այժմ «նշան տանելը» վերացած է, կատարւում են միայն «փեսականչը», երբ քահանան օրհնում է փեսացուի բերած մատանին և դնում մատանեմատը։ Փեսացուի ծնողները այս հանդիսին—փսականչին—չեն մասնակցում։

*Շալակ*.—Նշանադրութիւնից յետոյ փեսացուն շատ հազիւ էր այցելում աներանց տուն, ամաչում էր նոյն իսկ աներոջ հետ խօսել։ Նրա նշանածն էլ նրանից էր փախչում, թաք կենում, ինչպէս Ա. Կ. որ փախել մտել էր թոնրը և խուփը վրայից ծածկել։ Մինչդեռ նշանուածները այսպէս հեռու էին մնում միմեանցից, ծնողները միմեանց հետ շարունակ տեսնւում էին, ամէն նշանաւոր տօն օր միմեանց նուէրներ ուղարկում։ Այս նուէրները *շալակ* էին կոչւում և բաղկանում էին թաց ու չոր մրգերից ու մի որևէ զարդից կամ հագուստից։ Շալակը մեծ մասամբ ուղարկւում էր փեսացուի տանից։ Փեսացուի քոյրն անշուշտ գնում էր շալակ տանողի հետ և հիւրասիրւում։ Ծննդեան

և գառկի երեկոները փեսացուի քոյրը կամ եղբօր կինը և կամ մի այլ մօտիկ ազգականուհի շալակ տանելով հարսնացուին՝ իւր հետ բերում էր եկեղեցի, ուր փեսացուի ազգականները համբուրում էին նրան և քաղցրեղէն ու մի մի մատանի, զարդ, ոսկի կամ արծաթ դրամ նուիրում նրան։ Այս նուէրները կոչւում էին *իրխատեսուկ*։ Այս սովորութիւնը ևս այժմ վերացել է։

*Հարսնքախարջ*.—Հարսանիքից մի քանի շաբաթ առաջ փեսացուի մօրեղբայրը կամ քեռայրը և կամ հօրեղբայրը գնում էր խնամոնց տուն, ուր ճաշով հիւրասիրուելուց յետ սակարկութեան էր մտնում հարսնացուի հօր հետ և վերջ ի վերջոյ որոշում, որ փեսացուի հայրը տայ նրան իբր հարսնքախարջ 2 փութ միս կամ մի ոչխար, մի փութ բրինձ, 10 ֆունտ իւղ, 5 փութ հաց, 1—2 գլուխ շաքար և 4—5 ռուբլիանոց մետաքսէ *թափտա* (արխալուղի կամ շապկի կտոր) հարսնացուի մօրը՝ իբր ծծագին և մի չուխայ՝ հօրը։

Երբեմն այս բոլորը գնահատում էին և դրամով վճարում։

Այժմ այս սովորութիւնը վերանալով՝ ոչ թէ փեսացուի հայրն է վճարում, այլ հարսնացուի հայրը՝ հարիւրից մինչև միքանի հազար ռուբլի և կամ մի որևէ կալուածք, իբր օժիտ։

*Շորաձևանք*.—Հարսանիքից մի շաբաթ առաջ մօտիկ ազգականուհիները հրաւիրւում են փեսացուի տունը և մինչդեռ սրանք այստեղ հիւրասիրւում են, երկու կին մի կտոր շաքարի վրայ կանաչ կարմիր թել են փաթաթում և մի իրխատեսուկ (մի զարդ կամ դրամ) առած գնում խնամոնց տունը, իրխատեսնուկը և շաքարը տալիս հարսնացուին և կանաչ կարմիր թելով չափն առնում, որ շապիկ կարեն։ Ապա վերադառնում են փեսացուի տունը և սկսում են ձևել։ Սակայն նախ նուէր են պահանջում, պատճառաբանելով թէ մկրատը չի կտրում։ Նոյն օրը փեսացուի համար ևս շորեր են կարում։

*Տօշտօղրիկ.*—Հնում հարսանիքները մեծ մասամբ ձըմեռն էր լինում, երբ մարդիկ համեմատաբար ազատ էին, իսկ այժմ՝ ամառը, որովհետև ձմեռը պանդխտում են ուրիշ քաղաքներ աշխատելու և այս ժամանակ վերադառնում են հայրենի գիւղը իբր ամառանոց:

Հարսանիքի պատրաստութիւնը միշտ սկսւում է չորեքշաբթի օրը: Թէ տղայի և թէ աղջկայ տանը հաւաքւում են մօտիկ ազգականուհիները հարսանեկան հացի ալիւրը մաղելու: Երեկոյեան դէմ հացթուխը վերցնում է շամփուրն ու հացառը, ալիւր մաղողը՝ մաղը, խոհարարուհին՝ չերեփը, և երաժշտութեան ներդաշնակութեամբ պարում, իւրաքանչիւրը ձևացնելով իւր անելիքը,—ալիւր մաղել, հաց թխել, կերակուր եփել և այլն: Տանտիկինը և ազգականուհիները սրանց նուէրներ էին տալիս: Բաւական երկար պարելուց յետոյ ազգականուհիները ընթրում էին և ցրւում, իսկ բանւոր կանայք ալիւրը մաղում պատրաստում: Հինգշաբթի առաւօտեան շատ վաղ սկսում էին թխել ոչ միայն հաց, այլ և գաթայ (եղահաց): Ապա փեսացուի տանից մի սկուտեղի վրայ կենտ թուով հաց, գաթայ, կոտապ [1]), մի կում գինի դրած՝ նազարա-զուռնի առաջնորդութեամբ տանում էին հարսնացուի տունը, որտեղից նոյնպէս միևնոյն բաներից, միայն զոյգ թուով, բերում էին փեսացուի տունը:

*Նշանը մորթելը.*—Ուրբաթ առաւօտեան նազարա-զուռնան ածում էր թագաւորի տան առաջը: Միքանի երիտասարդներ մի եզը բռնած կանգնում էին թագաւորի հանդէպ, իսկ աղջիկներ ու նորահարսներ եռանդով պարում էին: Ի վերջոյ երիտասարդները վայր էին գլորում եզանը և մի նուէր առնելով թագաւորից՝ մորթում: Վերջինս իւր գրչահատը խաչաձև քսում էր արեան մէջ, փակում և գըրպանը դնում, զգուշանալով, որ առագաստի գիշերից վաղ բաց չանի, որպէս զի «կապ չընկնի»—առնականութիւնը կորցնի:

[1]) Ալխոճ, (кропива), սոխ, սամիթ և այլ կանաչեղէն դնելով խմորի մէջ, բարակ և երկար ձև են տալիս և եփում:

Սրանից յետոյ թագաւորի անեցիներից միքանիսը նաղարա-զուռնի առաջնորդութեամբ գնում են մի մօտիկ ազգականի հրաւիրում «մակար-բաշի» լինելու, ու մի գաւազանի ծայրին մի թաշկինակ կապում տալիս ձեռը։ Սա էլ նոյն նաղարա-զուռնայով շրջում է և հրաւիրում երիտասարդներին՝ իբր մակարներ — թագաւորի թիկնապահներ։ Միևնոյն միջոցին տատմէրը մի թաշկինակի մէջ (ձմեռը՝ չորացած, ամառը՝ թարմ) ծաղիկներ ածած շրջում է տնից տուն և մի մի փնջիկ տալով՝ հրաւիրում էր հարսանիքի, իբր այդ ծառայութեան համար մի մի հաց նուէր ստանալով։ Այժմ հրաւիրագրեր են ուղարկում։

Երբ մակար-բաշին կազմակերպում է մակարների խումբը, նաղարա-զուռնի առաջնորդութեամբ գնում է քաւորի տունը՝ նրան հրաւիրելու։

Քաւորը գիւղերի մէջ եօ տոհմական է լինում և շատ հազիւ դէպքերում փոխւում է։ Սանամայրը նրանից սաստիկ պատկառում է, անխօս էր մնում։

Քաւորենց տանը մի մեծ խոնչա են պատրաստած լինում.— մի մեծ սկուտեղի վրայ ածած են լինում մրգեր, վերան գաթաներ, մի եփած հաւ, մի զոյգ կարմիր դանաւուղ, և մի կարմիր աղլուխ կամ մի արխալուղացու դրած։ Կարմիր դանաւուղը նրա համար էր լինում, որ թագաւորը պսակ գնալիս՝ իրենց տնից վերցրած կանանչ կտորի հետ խաչաձև կապէ իւր կրծքին։

Բացի այս խոնչից, պատրաստած են լինում նաև մի «ուռի ճիւղը».--Մի ուռի ճիւղի վրայ շարում են չամիչ, արմաւ, բակլի, սիսեռի, ընկոյզի, զանազան կորիզների շարաններ (մաղաշար)։

Քաւորի տանը փոքր ինչ ուրախութիւն անելուց յետոյ մակարները՝ խոնչան և ուռի ճիւղը երկու մարդու ձեռք տուած՝ նաղարա-զուռնի առաջնորդութեամբ գալիս են թագաւորի տունը, որտեղից սանամայրը թագաւորաքուրերի և միքանի անեցիների հետ հարսնացուին հինա է տանում։

*Ծընըրուըրիք*.—Մի մեծ սկուտեղի՝ խոնչի՝ մէջ ածում էին մրգեր, վերան դնում հարսնացուի մօր՝ ծծագինը—արխալուղի կամ շապկի կտոր—հօր չուխէն, մի գլուխ շաքար՝ ոսկեզօծած և գագաթին մի մետաքսէ թաշկինակ կապած, մի ափսէով հինա՝ մէջտեղը մի նուռ՝ վերան մի վառած մոմ, մի կուժ գինի, օղի, ներկած ձուեր, գաթաներ և այլն։ Զուռնա մեղրամոմ էլ վառում էին խոնչի շուրջը։

Մի խոյի մէջքին էլ հինայով խաչաձև նշխեր էին անում, եղջիւրներին երկու մոմ վառում։ Ապա սանամայրը մի քանի մարդկանց հետ այս խոնչան և խոյը առած թոյպաշու՝ առաջնորդութեամբ գնում էր հարսնացուի տունը։ Այստեղ, ընթրիքից յետոյ սանամայրը հինայի ափսէն ձեռն առած, կամ գլխին դրած, պարում էր, հրաւիրեալները դրամներ էին ձգում հինի վրայ. Նրան հետևում էին մի-քանի աղջիկներ ու հարսներ։ Հինան այսպէս պար ածելուց յետոյ սանամայրը վերցնում էր իրեն նուիրած դրամները և հինան շաղախում, դնում նախ հարսնացուի ձեռներին ու ոտներին և ապա ներկայ եղող բոլոր աղջիկների ու հարսների ձեռներին։

Նոյն գիշերը թագուորը և սրա մօտ եղած աղջիկներն ու հարսներն էլ հինա էին դնում իրենց ձեռներին։ Այս սովորութիւնը այժմ բոլորովին վերացել է։

*Սափրելու ծէսը*. Հետևեալ օրը, շաբաթ, առաւօտեան, մակարները հաւաքւում էին թագուորի տանը, որոնց հրաւիրելու համար գնում էր թոյպաշին նաղարա-զուռնի առաջնորդութեամբ։ Ամէն մի հրաւիրեալ մի թաշկինակ էր կապում նաղարի վերայից՝ իբր նուէր։ Հրաւիրւում էր սափրիչը և նախ մակարների, ապա քաւորի միրուքն ու գլուխը սափրում։ Բոլորից յետոյ սափրում էր թագուորի միրուքը, և գագաթին խաչաձև մի բացուածք անում. յետոյ հրաւիրում ներկայ եղողներին, որ համբուրեն թագուորի գագաթի այդ մասը։ Նախ քաւորը և ապա մակարները համբուրում էին և դրամ ձգում թագուորի մօտ դրած ափսէի մէջ։ Ի վերջոյ սափրիչը վերցնում էր այդ

դրամները և յետոյ սափրում թագաւորի գլուխը՝ ու կատարին մի փնչիկ թողնում, որ «քանքիւլ» էր կոչւում։ Այս սովորութիւնը ևս այժմ վերացած է։ Սափրուելուց յետոյ դնում էին քաղցրի խոնչա—մատուցանում էին մեղր, կարագ, հրեշակ, գաթայ և օղի։ Ներկայ եղողները մի մի բաժակ օղի էին խմում, մի քիչ բան ուտում։ Ապա մի խոնչի մէջ դրած բերում էին թագաւորի և հարսի շորերը. քահանան օրհնում էր, քաւորը խաչակնքում և վերցնում էր թագաւորի գտակը՝ դնում նրա գլխին, յետոյ գօտին կապում և չուխան հագցնում. ապա իրենց տնից բերած կարմիր և սրանց տանից վերցրած կանանչ կտորները խաչաձև կապում էր կրծքին՝ Աստուած շնորհաւոր անի, բարի վայելում ասելով։ Այս կանանչ-կարմիր կտորը կոչւում էր օրսակ և նշան էր թագաւորութեան [1]։

Այս միջոցին մակարբաշին վերցնում էր շորերի խոնչան, ուր մնացել էր միայն հարսնացուի շորերը՝ շապիկ, քող, գլխի շորեր և այլն, մրգերի և ծաղիկների մէջ դրած ու մի մեծ, մետաքսէ թաշկինակով փաթաթած։ Ապա «Աստուած շնորհաւոր անէ» ասելով դնում մի երիտասարդի գլխի, մոմեր էր բաժանում բոլոր ներկայ եղողներին, մի մի հատ մոմ էլ տալիս թագաւորին ու քաւորին, յետոյ հարսնքատիրոջից թաշկինակներ առնում ու քաշ անում մակարների գօտիներից, որպէս նշան նրանց թիկնապահութեան։ Յետոյ պարզելով գաւազանի ծայրին կապած իւր թաշկինակ-դրօշակը, ուռա՛ էր կանչում և ուղեւորւում դէպի հարսնքատունը։ Նրան հետեւում էին թագաւորն ու քաւորը մակարներով և թագաւորաքոյրերով շրջապատուած։ Թագաւորի ծնողները չէին գնում, այլ սպասում էին, որ հարսը գայ իրենց տուն։

Թէպէտ և լոյս է լինում, բայց և այնպէս՝ բոլորն էլ մոմերը վառած են գնում։

Երբ հասնում են հարսնատուն, դռան առաջ կանգ են

[1]) Ներքին-Ագուլիսում օսկապը քահանան էր կապում եկեղեցում պսակի խորհուրդը կատարելուց յետոյ։

տանում, և հարսի շորերը կրող կինը պար է գալիս։ Հարսնացուի մայրը և մօտիկ ազգականուհիները դուրս են գալիս, համբուրում Թագուորին և մի կտոր շաքար, կամ մի խնձոր կամ մի նուռն նուիրում էր նրան, որ վերցնում էր և դնում կողքին բռնած խոնչայի մէջ։ Մի նուէր—մի Թաշկինակ—ևս տալիս են շորերը պար ածող կնոջը և բոլորին ներս հրաւիրում։ Մի քիչ յետոյ գալիս է հարսնացուի քահանան և նշանը օրհնում։ Սանամայրը վերցնում է հարսնացուի համար բերուած շորերն և տանում նրան հագցնում։ Յետոյ սկսելով գլուխը յարդարել, սանամայրը մկրատը դնում է քունքի մօտի ծամի վերայ և կամենում է կտրել՝ ասելով. «սաչի քցի պրայիք»։ Թագուորը և նրա հետ եկողները միքանի փանաբաթ էին նուիրում։ Սանամայրը մի քիչ կտրում էր ծամի ծայրից և սկսում գլուխը կապել։ Գլխի «դազման» կապելիս կրկին փող էր ուզում —գլխի կապի պրայիք։ Դարձեալ Թագուորն ու նրա բարեկամներն էին նուէր տալիս։ Ներքին Ագուլիսում հարսնացուի գօտին հարսնեղբայրն էր կապում, մի որևէ ընծայ տալով։ Այս միջոցին հարսնացուի ծնողները մակարների գօտիներից և զուռնի վրայից մի մի Թաշկինակ էին կապում։ Հարսնացուին հագցնելուց յետոյ սանամայրը առաջ էր բերում և կանգնեցնում Թագուորի աջ կողքին, ինքն էլ կանգնում մօտը։ Թագաւորի ձախ կողմումն էլ քաւորն էր կանգնում, վառած մոմը ձեռին մի Թաշկինակի հետ, որի միւս ծայրը Թագուորն էր բռնում, դարձեալ մի վառած մոմի հետ։ Երբ մակարբաշին ուռայ կանչելով առաջ էր ընկնում, Թագուորը բռնում էր հարսի ձեռը և նրան հետևում։ Բոլորը վառած մոմերը ձեռներին, նաղարազուռնի առաջնորդութեամբ, երգելով, պարելով գնում էին եկեղեցի։ Ներքին Ագուլիսում մի «ուռի ճիւղն» էլ էին տանում իրենց հետ եկեղեցի։ Այս ուռի ճիւղն էլ վերև յիշուածի նման զարդարուած էր լինում վարաղած Թղթի կտորներով, բակլայի, սիսեռի, չամիչի, չոր ծաղիկների, ընկոյզի շարաններով։ Ճիւղի վերին մասում մի նուռ էր

խփած լինում, իսկ ներքեւում, մի լաւաշ հաց, մէջը աղ ածած և ծալած։ Երբ գնացքը հասնում է եկեղեցուն, մօտիկները հսկում են, որ չարամիտ մարդիկ թել չգնեն եկեղեցու-դռան սեմի վրայ և թագաւորի անցնելուց յետոյ հանգոյց ձգեն, որպէսզի թագաւորը կապ ընկնի։ Միեւնոյն նպատակով թագաւորն էլ մի կողպէք էր կողպում ու պահում գրպանում, արխէոտ դանակի հետ, որ միայն առագաստի երեկոյեան պիտի բաց անէր։ Քահանան հարս ու թագաւորին առանձնապէս խոստովանեցնելուց, և նրանց համաձայնութիւնը միմեանց հետ ամուսնանալու վերաբերութեամբ առնելուց յետոյ, կատարում էր պսակի խորհուրդը։ Երբ ամոլները գլուխ գլխի էին դնում՝ թագաւորը մի զարդ (մատանի) կամ դրամ էր տալիս հարսնացուին։ Եւ երբ երեսները պիտի դարձնէին դէպի սեղանը, սրանցից իւրաքանչիւրն աշխատում էր առաջինը կոխել միւսի ոտը, որպէսզի ապագայում ինքը գերիշխէ նրա վրայ։ Պսակի խորհուրդը կատարելուց յետոյ ծաղիկներով զարդարուած թագը դնում էին թագաւորի գլխին և տանում սեղանի մօտ կանգնեցնում. մի թաշկինակ էլ ձգում վզին, ու սրա ծայրերը տարածելով կրծքին՝ Աւետարանը դնում էին վերան, Նորահարսի ձեռն էլ Աստուածածնի պատկերն էին տալիս, իսկ քաւորին՝ խաչը։ Ապա հրաւիրում էին բոլոր հարսնեւորներին, որ համբուրեն Աւետարանը և խաչհամբոյր ձըգեն յօգուտ քահանայի։

Յետոյ արդէն նոյն կարգով, միայն այժմ աւելի մեծ աղմուկով և ուրիշ փողոցով վերադառնում են հարսի տունը։ Ճանապարհին բարեկամների տան մօտից անցնելիս սրանք քաղցր խոնչա էին դուրս բերում—մի խոնչի մէջ գինի, օղի, հրեշակ, գաթայ, հաց, մեղր, ձուաձեղ և այլն։ Մակարբաշին այս խոնչից մի բաժակ գինի վերցնելով մօտեցնում էր թագաւորի շրթունքին և բղաւում.

«Ա՜յ թագաւորի մակարներ»։

Սրանք միաբերան բղաւում էին.

—Հա՛ բալի. (հրամայիր)։

«Թագաւորի խումբ անո՜ւշ, անուշ, անուշ։

—Անո՜ւշ, ձայնակցում էին մակարները։

Թագուորը գինին խմելուց յետոյ մակարբաշին կրկին ձայն էր տալիս, այս անգամ յիշատակելու խոնչա բերողի անունը։

«Ա՛ Թագաւորի մակարներ։

—Հա՜ բալի։

«Աստուած չէն պահի այսինչի տօնը (տունը), փուխը (փոխարէնը) սրա որդոցը ընէ։

—Շէ՜ն կենայ, գոչում էին մակարները։

Երբ հասնում են հարսի տունը՝ հարսը գնում էր ներսի սենեակը, իսկ Թագուորը գնում նստում էր յատուկ իրեն համար պատրաստուած թախտի վրայ, միքանի կոպէկ տալով այն երեխային, որ նախապէս զբաղում էր այդ տեղը։ Քաւորն էլ բարձրանում նստում էր կողքին։ Մի քիչ յետոյ ծառայողներից մինը հացի սփռոցը ձեռին պար էր գալիս և ապա սփռում գետնին։ Անմիջապէս ծալապատիկ նստում էին և սկսում էին ճաշել։ Սովորաբար մատուցանում էին դնդում-խորոված, բոզբաշ, փլաւ, պէանճար, խորոված և տոլմա—վեց տեսակ։ Ընտրում էին թամադա—սեղանապետ և նրա առաջարկով խմում էին 1) քահանայի, 2) Թագուորի, Թագուհու և քաւորի, 3) երկու կողմի խնամոնց, 4) հարսնևորների մի առ մի կամ միքանիսինը միասին, վերջը՝ Թամադու կենացը։

Ճաշից յետոյ բոլորը խմբւում էին բակում, մինը գլխին էր դնում հարսնահօր կողմից Թագուորին նուիրելու վերարկուն և պարում, որից յետոյ հագցնում էին Թագւորին։ Այս ժամանակ սանամայրը առաջ էր բերում հարսին, որի ձեռքը բռնելով հայրը՝ տալիս էր Թագուորին՝ ասելով. Բարով վայելես։ Հարս ու Թագուոր խոնարհում էին և համբուրում նրա ձեռքը։ Իսկոյն բոլոր հանդիսականները մոմերը վառում էին և մակարբաշու առաջնորդութեամբ, նաղարա-զուռնով ուղևորւում դէպի Թագւորի տունը։ Հարսի հետ գնում էր մի կին, որ կոչւում

էր «ենգահ», և հարսի եղբայրը կամ մօտիկ ազգականը, որ կոչւում էր հարսնախպէր։ Հարսի ծնողները չէին գը-նում, այլ յետևից նայելով մի կաւէ աման էին կոտրում, որպէսզի հարսն այլևս յետ չդառնայ, այսինքն չայրիանայ ու հօրանց տուն վերադառնայ։

Տան ծառան կանգնում էր և այժմ էլ կանգնում է դրան առաջ և թոյլ չի տալիս հարսին տանելու, մինչև որ քաւորից մի ընծայ չի ստանում։

Հարսնաւորները բարեկամ տներից քաղցր խոնչա ըն-դունելով գնում էին մինչև Թագւորի տան դուռը, ուր կանգ էին առնում։ Թագւորի հայրն ու մայրը ընդառաջ էին գալիս, համբուրում նախ Թագւորին և ապա հարսին ու քաւորին [1]) Յետոյ Թագւորի մայրը միքանի լաւաշ հացեր ծալելով դնում է հարսի կռների տակ, որպէսզի «դովլաթով» ներս մտնի, դրան առաջն էլ մի գորգ էր սփռում, որ նրա վրայով անցնեն։ Ապա երբ մտնում էին բակը, Թագւորի հայրն ու մայրը սկսում էին միասին պարել։ Թագւորի մայրը մի ափսէի մէջ ածած մրգեր՝ ծիրան, փշատ, ընկոյզ, կաղին և այլն, բերում էր և շաղ տալիս հարսի գլխին։ Հարսնաւորները և մանաւանդ երեխաները միմեանց հրհրելով սկսում էին հաւաքել։ Ցղնայում այս փոքր ինչ տարբեր կերպով էր կատարւում. այնտեղ Թա-գւորի մայրը՝ ձեռին մրգերով լի խոնչան՝ պար էր գալիս սանամօր հանդէպ, որ նոյնպէս պարում էր ձեռին մի ափսէ բռնած, որի մէջ դրուած էր լինում խաշած հաւի մի բուդ, մի գաթայ, մի աման հրեշակ (հալուայ) և մի սրուակ վարդաջուր։ Պարի աւարտին՝ Թագւորի մայրը միրգը ածում էր հարսի գլխին, իսկ սանամայրը վարդա-ջուրը շաղ էր տալիս հասարակութեան վրայ, իսկ հաւի բուդը, գաթան և հալուան տալիս հարսին։ Սրանից յետոյ մօտիկ բարեկամները մէկ մէկ, կամ զոյգ զոյգ պարում էին, ձեռքին ունենալով միորևէ զարդ կամ կտոր, որը և

---

[1]) Թագաւորի մայրը քաւորի ձեռն էր համբուրում, որքան էլ փոքրահասակ լինէր սա։

պարից յետոյ ձգում էին հարսի գլխին։ Իսկոյն մակարբաշին բարձր ձայնով յայտարարում էր, որ չէն կենայ այս ինչ բարեկամը, այս տեսակ նուէր տուեց հարսին։

Ի վերջոյ Թագաւորի հայրը կամ մակարբաշին մի ընծայ՝ շորեղէն կամ դրամ՝ էր տալիս հարսնեղբօրը, որ թոյլ տայ հարսին տուն մտնելու։ Եւ երբ բոլորը ներս են մտնում, հարսին տանում են կանանց բաժինը և խնդրում նստել թախտի վրայ, սակայն սա չի նստում, մինչև որ սկեսուրից մի որևէ ընծայ չի ստանում։ Հոգատար սկեսուրը անմիջապէս մի արու երեխայ է բերում և դնում հարսի գիրկը, որպէսզի սրա առջինեկը արու տղայ լինի։ Հարսն էլ իւր հետ բերած մանր քիսաներից մինը տալիս է այս երեխային, իսկ միւսները յանձնում մինին, որ բաժանի տան երեխաներին։

Թագաւորը քաւորի հետ բարձրանում էր իւր համար յատկապէս պատրաստուած թախտի վրայ, այս անգամ էլ մի նուէր տալով այդ տեղը գրաւող երեխային։ Այս տեղ Թագաւորը բարև բռնում (ձեռները կրծքին դնել) կանգնում էր, իրաւունք չունենալով նստել՝ մինչև որ սփռոցը պար կածէին, կը սփռէին, տղամարդիկ կը նստէին ընթրելու և կը մատուցուէր «պանձար» կոչուած կերակուրը։ Այս ժամանակ Թագաւորը նստում էր, ծանր ու մեծ, անխօս։ Նրա համար յատուկ բաժին էին բերում նաղարովզուռնով, բաղկացած ամենալաւ կերակրներից։ Մի քիչ յետոյ էլ հարսի հօրանց տնից հարսի համար բաժին—կընճըթաման—էին բերում, որը նաղարա-զուռնի առաջնորդութեամբ տանում մատուցանում էին հարսին։ Սովորութիւն էր, որ հարսն այդ առաջին օրը ոչ թէ սկեսրանց, այլ իւր հայրական հացով պիտի կերակրուէր։

Ընթրիքից յետոյ հարսնեւորները ցրւում էին, հարսը քնում էր ենգահի (նրան ուղեկցող կնոջ) մօտ, իսկ Թագաւորն առանձին. քաւորն էլ գնում էր իրենց տուն։

Պէտք է նկատել, որ երբեմն այս ընդհանուր կարգից շեղումներ էին պատահում. այսպէս երբեմն Թագաւորն

ուղղակի եկեղեցի էր գնում և այնտեղ սպասում, մինչև որ իւր մակարների մի մասը գնում և հարսին բերում էր։

Եթէ հարսնացուի ծնողները չքաւոր էին լինում, պսակից յետոյ հարսնաւորները եկեղեցուց այլևս հարսի տունը չէին գնում, այլ ուղղակի թագաւորի տունը։ Այս դէպքում հարսի հայրը մակարներին հիւրասիրում էր եկեղեցում քաղցրի խոնչով և մի մի հատ թաշկինակ նուիրում։

*Խնամականչ*.—Հետևեալ օրը, կիրակի, առաւօտեան թագաւորի տան կտրին նաղարա-զուռնան ածում էր սահարի կոչուած եղանակը։ Իսկոյն մակարները հաւաքւում էին, սկսում էին պարել, գոտեմարտել, երգել։ Ապա մակարբաշու առաջնորդութեամբ, առանց թագաւորի, նաղարա-զուռնի առաջնորդութեամբ գնում են հարսի հօրն ու մօրը հրաւիրում և իրենց հետ բերում թագաւորի տունը, ուր նրանց հիւրասիրում էին ճաշով։ Այս հրաւէրքը կոչւում էր խնամականչ։

*Ուլա*։—Երեկոյեան մակարները դուրս էին գալիս բակը և այստեղ հերթով վերցնելով մի հաւ և քաւորի դաշոյնը կամ սուրը՝ պար էին գալիս։ Երբեմն այդ հաւը հարսի տնից էր ուղարկուած լինում մի կում գինու հետ։ Պարելիս մակարներն ատամներով պոկում էին հաւի փետուրներից և դէպի վեր փչում։ Ի վերջոյ պարելու հերթը հասնում էր թագաւորին. սա էլ թուրը ձախ՝ իսկ հաւը աջ ձեռին բռնած միքիչ պարելուց յետոյ հաւի վիզը խըփում էր սրին և կտրում։ Իսկոյն մակարները կեցցէ էին բղաւում և նրան գրկում, վեր բարձրացնում։ Իսկ զուռնաչին շտապում էր հաւը վերցնել, որովհետև այդ նրան պիտի պատկանէր։

Սրանից յետոյ գալիս էր քահանան և թագաւորի ու հարսի նարօտն արձակում խաչեղբօր ներկայութեամբ, որ այդ ծիսակատարութեան միջոցին մի մերկացրած թուր էր բռնած ունենում ձեռին։

Եթէ սրա հետևեալ օրը պահք լինէր, այսինքն չորեք-

շարթի կամ ուրբաթ, նարօտը չէին արձակել՝ մեղք համարելով, և յետաձգում էին հետևեալ օրուան։

Գիշերը ենգանը պատրաստում էր առագաստը և հետևեալ առաւօտ սաւանը տանում ցոյց տալիս թագւորի և հարսի մայրերին ու ընծայ ստանում։

Թագւորը սոյն, առագաստի գիշերը մի ընծայ էր տալիս հարսին իբր *բերանաբացէք*, որ իւր հետ խօսի։

*Մակարի խոնչա.*—Հետևեալ առաւօտ նաղարա-զուռնան նորից հնչեցնում էր սահարի եղանակը թագւորի տան կտուրից։ Մակարբաշին և մակարները մի մի «քաղցրի խոնչա» առած գալիս էին թագւորի տուն։ Այստեղ հաւաքւում էին նաև բարեկամ կանայք։ Երբ բաւական բազմութիւն արդէն հաւաքուած էր լինում, քաղցրի խոնչաները մէկ մէկ ցոյց էին տալիս և յիշատակում թէ ով է բերել։ Յետոյ խմում էին այդ բերած օղիից և ուտում քաղցրեղէններից։ Կէսօրին ճաշի էին նստում և ուտում «խաշ»։

Կանանց ճաշելուց յետոյ նորահարսը մի կնոջ առաջնորդութեամբ գալիս էր կանանց մօտ և հերթով համբուրում բոլորի ձեռքերը։ Սրանք էլ մի մի ընծայ՝ մատանի, արծաթի դրամ, թելի վրայ շարուած բուստեր և այլն, ընծայ էին տալիս նրան։ Այս ընծաները ևս կոչւում էին *ըրխտասաւկ*։ Այնուհետև շարունակւում էին պարել, երգել, կատակներ անել։ Շատ անգամ մակարները միմեանցից գանգատւում էին թագաւորին՝ կատակով մեղադրելով մի-որևէ յանցանքի մէջ։ Թագաւորն էլ կարգադրում էր իբր տուգանք մի հաւ, մի կուժ գինի, կամ մի ուրիշ ուտելիք կամ խմելիք պահանջել մեղադրուածից։ Իսկոյն միւս մակարները բռնում էին մեղադրուածին, սեանից կապում, ոտները շղթայում, մինչև որ զոքանչը նշանակուած տուգանքը կբերէր։

Այսպիսով վերջանում էր պսակադրութեան հանդէսը։ Երեք-չորս օրից յետոյ նորահարսը ջուր էր տաքացնում և լուանում սկեսրարի, սկեսրոջ, և տէգրների ոտները, սկես-

լով միշտ աջ ոտից։ Իւրաքանչիւրի ոտը լուանալուց յետոյ խոնարհւում էր և համբուրում, կամ ձևացնում թէ համբուրում է։ Մի քանի փանաքանդ ձգում էին տաշտի մէջ՝ իբր վարձատրութիւն։

*Գըլխըլուայ.*—Պսակից մի շաբաթ յետոյ հարսի տանից մի կին վերցնելով մի որև է զարդ և սապոն, սանր ու սրբիչ, գալիս էր հարսի մօտ, զարդը նուիրում նրան, և գլուխը լուանում, սանրում։ Հարսի սկեսուրն էլ իւր կողմից մի ընծայ էր տալիս այս կնոջը։ Այս սովորութիւնն էլ այժմ վերացել է։

Մի քանի շաբաթից, երբեմն նաև ամիսներից յետոյ մի կնոջ առաջնորդութեամբ բերւում էր հարսի օժիտը։ Նոյն օրը հրաւիրում էին մօտիկ ազգականներ, որոնց մի առ մի ցոյց էր տրւում այդ օժիտը։

## ՏՂԱԲԵՐՔ ԵՒ ԿՆՈՒՆՔ

*Ամլութիւն.* – Գողթնում ևս ամլութիւնը մեծ վիշտ է պատճառում և աստուածային պատիժ է համարւում, ուստի և՛ ոչ միայն բժիշկների, այլ և սրբերի օգնութեան են դիմում երեխայ ունենալու համար։ Շատերը ուխտ են գնում Դաստա, այժմ Թրքաբնակ, գիւղի Քեշիշի (քահանայի) գերեզմանին, նրա հողից ածում իրենց վրայ, ուրիշները նոյն իսկ ոտաբոբիկ գնում են Ս. Ստեփանոս, Ս. Կարապետ և այլ ուխտատեղիներ, ուր երեխայ ունենալու վառ ցանկութիւնը աղօթքով յայտնելուց յետ՝ մասունքի վրայից մի մատանի են գողանում, խոստանալով, որ եթէ սուրբը կատարէ իրենց խնդիրը և երեխայ տայ՝ ոչ միայն այդ մատանին յետ կբերեն, այլ և մի խաչ կընծայեն։ Եւ յիրաւի, երբ երեխայ են ունենում, դռնէ դուռ են ընկնում, մուրում և ստացած դրամով մի արծաթէ շղթայ և մի փոքրիկ խաչ շինել տալիս, կախում երեխայի վզից։ Երբ վերջինս 3—4 տարեկան է դառնում, այդ շղթան ու խաչը հալել և մի մեծ խաչ են շինել տալիս, ու գողա-

լով միշտ աջ ոտից։ Իւրաքանչիւրի ոտը լուանալուց յետոյ խոնարհւում էր և համբուրում, կամ ձևացնում թէ համբուրում է։ Մի քանի փանաքանդ ձգում էին տաշտի մէջ՝ իբր վարձատրութիւն։

*Գըլխըլուայ.*—Պսակից մի շաբաթ յետոյ հարսի տանից մի կին վերցնելով մի որև է զարդ և սապոն, սանր ու սրբիչ, գալիս էր հարսի մօտ, զարդը նուիրում նրան, և գլուխը լուանում, սանրում։ Հարսի սկեսուրն էլ իւր կողմից մի ընծայ էր տալիս այս կնոջը։ Այս սովորութիւնն էլ այժմ վերացել է։

Մի քանի շաբաթից, երբեմն նաև ամիսներից յետոյ մի կնոջ առաջնորդութեամբ բերւում էր հարսի օժիտը։ Նոյն օրը հրաւիրւում էին մօտիկ ազգականներ, որոնց մի առ մի ցոյց էր տրւում այդ օժիտը։

## ՏՂԱԲԵՐՔ ԵՒ ԿՆՈՒՆՔ

*Ամլութիւն.*—Գողթնում ևս ամլութիւնը մեծ վիշտ է պատճառում և աստուածային պատիժ է համարւում, ուստի և՛ ոչ միայն բժիշկների, այլ և սրբերի օգնութեան են դիմում երեխայ ունենալու համար։ Շատերը ուխտ են գնում Դաստա, այժմ Թըքարճնակ, գիւղի Քեշիշի (քահանայի) գերեզմանին, նրա հողից ածում իրենց վրայ, ուրիշները նոյն իսկ ոտաբոբիկ գնում են Ս. Ստեփանոս, Ս. Կարապետ և այլ ուխտատեղիներ, ուր երեխայ ունենալու վառ ցանկութիւնը աղօթքով յայտնելուց յետ՝ մասունքի վրայից մի մատանի են գողանում, խոստանալով, որ եթէ սուրբը կատարէ իրենց խնդիրը և երեխայ տայ՝ ոչ միայն այդ մատանին յետ կբերեն, այլ և մի խաչ կընծայեն։ Եւ յիրաւի, երբ երեխայ են ունենում, դռնէ դուռ են ընկնում, մուրում և ստացած դրամով մի արծաթէ շղթայ և մի փոքրիկ խաչ շինել տալիս, կախում երեխայի վզից։ Երբ վերջինս 3—4 տարեկան է դառնում, այդ շղթան ու խաչը հալել և մի մեծ խաչ են շինել տալիս, ու գողա-

ցած մատանու նման մի մատանի և երեխայի բարձրութեան երկու մոմ առած՝ երեխայի հետ գնում են ուխտատեղին, ու իրենց շնորհակալութեան աղօթքը անելուց յետոյ մոմերը վառում են ու մատանիներն ու խաչը կապում մատուռքից։

Յղութեան միջոցին կանանց բոլոր քմահաճութիւնները կատարում էին և այժմ էլ կատարում են. ինչ էլ որ ցանկանայ ուտել՝ ինչ էլ որ լինի նրա «սրբարգելիք»-ը՝ անշուշտ գտնում տալիս են։

Բայց երբ չափից անցնում էին նրա պահանջները՝ մի առաւօտ վաղ գնում էին և եօթը անից եօթ տեսակ կերակուր հաւաքում և բոլորը մի սկուտեղի վրայ դրած բերում դնում էին յղի կնոջ առաջը և մէջքին թեթեւութեամբ խփելով ասում. կեր կշտացիր։

Միևնոյն ժամանակ հաւատալով, որ երեխան արգանդում խաղալիս մայրը ում դէմը որ կանգնած լինի՝ երեխան նրա բնաւորութիւնը կստանայ, աշխատում էին լաւ մարդկանցով շրջապատել նրան։

Յղի կանայք իրենց պաշտպան համարում էին կիրկամուտ, չըրըքշըբըթամուտ, ըրըըթամուտ ոգիները, ուստի և նրանց պատուի համար շաբաթ, երեքշաբթի և հինգշաբթի երեկոները չէին աշխատում և առագաստ չէին մտնում։

Ծննդեան օրերը մօտենալիս երկիւղ կրելով, թէ միգուցէ չկարողանան ազատուիլ, հաղորդւում էին։

Երկունքի ժամանակ հրաւիրում են տատմօրը և, եթէ առաջին ծնունդն է, ծննդկանի մօրը։

Սովորաբար պարկած են ազատւում, ոմանք էլ կանգնած կամ չոքած։

Ծնունդը հեշտացնելու համար դիմում են հետևեալ միջոցների.

Աղ ու հաց են մօտեցնում ծննդկանին, որի վրայ սա դնում է ձեռքը և պատուիրում տանել աղքատներին տալ։

Ենթադրելով, թէ ծննդկանը «հոտ է առել», այսինքն

մի որևէ ուտելիքի հոտ է առել, ցանկացել է ուտել, բայց չեն տուել, ուստի և «երեխան չի ծնւում», տառեխի գըլուխ, ձուի կեղև, վազի փայտ և գինի խառնում են իրար, վառում և ծուխը թողնում ծննդկանի շապկի տակ, որպէսզի «երեխան հոտն առնի՝ դուրս գայ»։

Աւագ ուրբաթ գիշերը առանց խօսելու շինուած մատանի են ձգում ծննդկանի մատը, որպէսզի չարերը հալածուեն և նա հեշտութեամբ ազատուի։

Ծով անցած կամ զուգաւորուած օձերը միմեանցից բաժանած մարդը իւր փէշով ջուր է տալիս ծննդկանին խմելու։

Եթէ ծննդկանը ուշագնաց էր լինում՝ հրացան էին արձակում, և երբ ուշքի էր գալիս՝ մի մեծ բեռ էին մեխում ուշագնաց եղած տեղում։

Երբ ծննդկանը ազատւում էր, նրան պառկեցնում էին տաք մոխրի վրայ, վերան վերմակով ծածկում։ Յետոյ տատմայրը «պըրտկըտրի» է պահանջում և միքանի կոպէկ նուէր ստանալով կտրում է երեխայի պորտը, որ տանում ձգում են եկեղեցում, որպէսզի երեխան ժամասէր լինի, թաղում են տան մի անկիւնում՝ որպէսզի տնարար լինի։ Ընկերքն էլ չոր տեղումն են թաղում, որպէսզի երեխայի աչքերը չճպռոտի։ Յետոյ տատմայրը լողացնում է երեխային, աղ ցանում վերան, փաթաթում խանձարուրի մէջ և դնում ծննդկանի աջ կողմը, խրատելով վերջինիս, որ շարունակ աջ կողքի վրայ պառկի, որպէսզի հետևեալ ծնունդը արու լինի։ Ապա հոգատար տատմայրը մի սոխ էր անցկացնում մի շամփուրի վրայ և սկսում պատերին զանազան պատկերներ նկարել։ Մինը դիտմամբ հարցնում էր թէ ինչ է անում։ Նա էլ լրջութեամբ պատասխանում էր, թէ Աստուածածնայ պատկերն է նկարում, որպէսզի չարը չհամարձակուի ներս մտնել։ Պատկերը նկարելուց յետոյ՝ շամփուրը դնում էր ծննդկանի բարձի տակը, ուր շատ անգամ դնում են նաև Կիպրիանոս, դաշոյն և այլն, որպէսզի «չարերը» չմօտենան։

Այս բոլորից յետոյ հրաւիրում են քահանային, որ գայ տունը փարատէ։ Սա օրհնում է ջուրը և շաղ տալիս ծննդկանի, անկողնի, սենեակի պատերի վրայ։ Այս օրհնուած ջրով ծննդկանը լուանում է իւր ծծերը և ապա ծիծ տալիս նորածնին։ Այս «փարատմամբ» հեռացնում են չար ոգիներին, բայց չեն սրբում ծննդկանին, որ պիղծ է համարւում մինչև երեխայի մկրտութեան օրը, այնպէս որ նրան առանձնացնում են, նրա գործածած ամանները ու շորերը ջոկում, առանձին պահում, թոյլ չեն տալիս ձեռք տալ ոչ մի բանի, որ իրեն չի յատկացրուած։

Սկսելով խնամել ծննդկանին, նախ և առաջ մի բաժակ ձէթ էին խմացնում, որպէսզի նրա «մէջքը պինդ լինի», յետոյ խաւիծ էին տալիս, (զանճաֆիլով) թէյ խմացնում։ Սովորաբար նրան տալիս էին ուտելու ճըլըմբուռ, շըշըլտռայնգ, և աղաձու (եղաձու)։ Այս կերակըրները մեծ մասամբ բերում են բարեկամ կանայք, որ տեսութեան գալով շնորհաւորում են որդեծնութիւնը։ Տատմէրը երեխային վերցնում է և դնում այցելուի գիրկը՝ յուսալով մի քանի կոպէկ նուէր ստանալ։ Այս այցելուներն զգուշանում են, որ իրենց վերայ ոսկէ դրամ կամ ոսկէ զարդ չունենան, այլ թէ ոչ՝ երեխան դեղնուց կարող է ըստանալ։ Այսպիսի անզգուշութիւնից յառաջացած դեղնութիւնը բժշկելու համար վերցնում էին այդ ոսկէ դրամը կամ զարդը, դնում տաշտի մէջ և երեխային նրա վրայ լողացնում։

Թէ ծնողները և թէ բոլոր այցելուները աւելի մեծ ուրախութիւն են արտայայտում երբ նորածինը արու է։

Մկրտութիւն.—Սովորաբար նորածնին մկրտում են ծննդեան ութերորդ օրը, թէպէտ և պատահում է աւելի ուշ, երբեմն նոյն իսկ մի տարի յետոյ։ Մկրտութեան նախորդ օրը տատմէրի ձեռքով «կնքալուսիկ» են ուղարկում քաւորին, խնդրելով գալ երեխան մկրտելու։ Կնքալուսիկը բաղկացած էր լինում չորս խնձորից, մի փունջ ծաղկից և մի կուժ գինուց։

Մկրտութեան օրը տատմայրը պատրաստելով լողացնել երեխային, հրաւիրում է տնեցիներին, որ դրամ ձգեն տաշտի մէջ իբր վարձատրութիւն նրա կրած աշխատանքի։ Ապա մի պողպատ է դնում տաշտի մէջ, որպէսզի «չարերը հալածուեն», որովհետև նրանք սաստիկ վախենում են պողպատից, տաք ջրով լողացնում երեխային և փաթաթում՝ եթէ աղջիկ է՝ նրա տատի ընծայ բերած խանձարուրի մէջ։ Մի քիչ յետոյ ինքը վերցնում է երեխային, իսկ մի ուրիշ կին մի աման տաք ջուր և մի «կնքակրտով» (կնկուղ) և գնում եկեղեցի։ Այստեղ գալիս է նաև քաւորը, երկու մոմ, և սանամօր համար մի որևէ ընծայ՝ գլխի փաթաթան կամ մի այլ բան, և մի սաւան առած։ Քահանան կատարում է մկրտութեան խորհուրդը և երեխային տալով քաւորի գիրկը, ինքը շուրջառը վրան ձգած, մի փոքրիկ զանգ ձեռին, Լոյս ի լուսոյ շարականն ասելով առաջնորդում էր ծննդկանի տունը։ Երբ մօտենում էին՝ քահանան սկսում էր զանգահարել, ծննդկանը և բոլոր ներկայ եղողները ոտի էին կանգնում։ Քաւորը ոտը դընում էր մի բարձի վրայ և սանամայրը խոնարհելով համբուրում էր ու վերցնում երեխային, դնում իւր աջ կողմը։ Այժմ այլևս ոտը չեն համբուրում, այլ երեխայի խանձարուրը։ Երբ աւարտում էր մկրտութեան խորհուրդը, բոլոր ներկայ եղողները համբուրում էին քահանայի ձեռին բռնած աւետարանը և խաչհամբոյր տալիս։ Անմիջապէս քահանան և քաւորը նստում էին ծննդկանի մօտ և օղի խմելով ձուաձեղ ուտում, որպէսզի երեխան լացկան չլինի [1])։ Ապա գնում էին միւս հանդիսականների մօտ, որոնք յատկապէս հրաւիրուած էին լինում, և ճաշում էին։

Ներքին Ագուլիսում քաւորը կնքալուսիկն ստանալուց յետոյ ոչխարի մի բուդ (հում) և մի կուժ գինի, և կամ մի «թաբախ» էր ուղարկում սանամօրը։ «Թաբախ»-ի մէջ դրուած էր լինում մի շիշ օղի, մի ափսէ հրեշակ, վերան կարմիր ձուեր շարած, մի տապակած հաւ, մի սրճա-

[1]) Տէր Յակոբի տեղից։

ման ժիրով (մեղրով ու կոճապղպեղով պատրաստած թէյ՝ ծննդկանի համար), և կոճապղպեղի փոշի. վերջինս ուղարկւում էր նրա համար, որ կանայք քաւորի կնոջը խմելիս այդ փոշուց ածէին գինու բաժակի մէջ [1]։ Կնունքի ճաշի ժամանակ այս «թապախը» բերում և ցոյց էին տալիս հանդիսականներին, իսկ ճաշի աւարտին՝ ծննդկանի կողմից ևս մի թապախ էին բերում և դնում քահանայի առաջ։ Սրա մէջ դրուած էր լինում երկու խնձոր կամ սերկևիլ և կամ նուռ, վերան մի թաշկինակ՝ ծայրին կապած այնքան դրամ, որքան կարժենար քաւորի բերած սաւանը և ընծան։ Քահանան վերցնում էր մրգերից մինը, դնում իր գրպանը, իսկ թապախը տալիս քաւորին։

Մկրտութեան հետևեալ օրը «մաղնհանիքյ» էին անում առանց մի որևէ առանձին ծիսակատարութեան լողացնում էին երեխային և մեռոնաջուրն ածում թոնիրը կամ գետը։

10—15 օրից յետոյ ծննդկանը վեր է կենում անկողնուց, զգուշանալով, որ մինչև քառասներորդ օրը արևի երես չտեսնի, սեամից էլ անցնելիս ծայրին սոխ ցցած շամփուր առնի ձեռքն, որ «չարերը չփխեն»։

Քառասունքին բարեկամ կանայք հաւաքւում են ծննդկանի տանը, և երեկոյեան ժամասացութեան ժամանակ ծննդկանին առաջնորդում եկեղեցի. տատմայրն էլ երեխան գրկին հետևում է նրանց, տանելով նաև մի եփած վառեկ, 2—4 հատ գաթայ, մի հաց և մի շիշ գինի։ Ժամասացութեան աւարտին քահանան եկեղեցում կատարում է քառասունքի ծէսը, և ժամուորների հեռանալուց յետոյ եկեղեցու սպասաւորների հետ ուտում վառեկը, որ նշանակ է ս. Աստուածածնի տաճարին ընծայած տատրակին։

Մանկատածութիւն.—Որպէսզի երեխան չը կոխուի, չըլով չընկնի, (Նիհարի և մեռնի), ծննդաբերութիւնից յետոյ առաջին անգամ հայրը տուն գալիս երեխային վերցնում են, ընդառաջ տանում և դնում նրա աջ ուսին և այդպէս ներս բերում։ Նաև մինչև քառասունքը երեխային

[1]) Այս բաժակը կոչւում էր ախտաթօս-պղպեղի բաժակ։

բարձրացնում են տեղից և դուրս տանում երբ մեռել են անցկացնում տան մօտից և միս են բերում տուն։ Իսկ եթէ չեն զգուշացել և երեխան կոխուել է՝ եթէ մեռելից է՝ մի ուրիշ մեռելի տակից անց են կացնում, իսկ եթէ այս կամ այն մարդուց՝ գնում նրա տան կտրանը միզում են։

Չնայելով, որ հաւատում էին, թէ շատ ծիծ տան՝ ըթամիտ կըլինի երեխան, այնուամենայնիւ 2—4 տարի ծիծ էին տալիս։ Սակաւ կաթ ունեցողները փշատը փըշրում էին, կաթի մէջ շաղախում և ուտեցնում։ Շատ անգամ էլ խաշխաշ էին ուտեցնում, որ երկար քնի, կաթ չուզէ։

Ծծից կտրելիս ծծի վրայ կուպր էին քսում, և ցոյց տալով երեխային ասում. «Քըխ ա» (վատ է)։ Նոյն նպատակով մի կարմիր ձու էին դնում կժի բերանին, և երբ երեխան ծիծ էր ուզում, ցոյց էին տալիս ձուն և ասում. ա՜յ գնա վեր առ։

Աղջիկ ունեցողի կաթը երբ դեղ գործ էին ածում։ Բամբակը թրջում էին այդ կաթի մէջ և դնում ցաւող աչքերի վրայ։

Ատամ հանելիս սոխ էին տալիս ձեռը, որ կըծի, քորը կտրուի. գլուխն էլ յաճախ լուանում էին։

Եթէ նախ վերին ծնօտի վրայ ատամ դուրս գար, ասում էին, թէ սա «մարդու գլուխ է ուտելու»—ամնից մինը մեռնելու է։

Երեխայի եղունգներն ու մազերը չէին կտրում, ոչ էլ սանրում, որպէսզի «ատամները միմեանցից հեռու դուրս չգային»։

Երեխային ձու չէին ուտեցնում, որպէսզի ուշ լեզու չելնի. և եթէ ուշ էր սկսում խօսել, բերում էին եկեղեցու դռան բանալին և երեխայի լեզուն անցկացնում նրա կոթի ծակի մէջ, որ շուտով լեզու ելնէ։

Եթէ ուշ էր ոտ ելնում, Ցղնայում տանում էին Ճըղնաւորի քարի անցքով երեք անգամ անցկացնում։ Մկրատ

ձգելով իմանում էին, թէ ո՛ր սըրիցն է և այն սըրի դուռը տանում երեխային, մատաղ անում։

Եթէ երեխան չէր քնում, վախեցնում էին, որ քնի. Օլը (ալը) ակալ ա, քուն ըլի։ Կուլի կուլին (շունը) ակալ ա, քուն ըլի։

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔ

Զօկերի ընտանեկան կեանքը ուշագրաւ է առաւելապէս նրանով, որ նա ներկայացնում է նահապետական կեանքից ընտանեկան կեանքի անցողական շրջանը։ Զօկ ընտանիքն այլեւս կաշկանդուած չէ նահապետական գերդաստան բռնակալական շղթաներով, սակայն և՛ հասած չէ անհատական ազատութեան։ Զօկ կինը թէև գերդաստանի ստրուկը չէ, բայց և՛ ամուսնու հաւասար ընկերը չէ, թէպէտ և նա ազատուած է առանձնացած, փակ կեանքից, բայց և այնպէս դեռ ևս լիովին չի ընտելացել տղամարդկանց հասարակութեանը, նա սրանց մէջ մի առանձին խումբ, մի առանձին շրջան է կազմում, նրանց ընդհանուր խօսակցութեան չի մասնակցում։ Միշտ նկատելի է, որ մի վիհ բաժանում է այս երկու սեռի էակներին, թէպէտ և այն ևս զգալի է, որ այդ վիհն արագութեամբ փոքրանում է։

Զօկ կինը տղամարդու պէս՝ աւելի մտքի, քան զգացմունքի էակ է, նրա մէջ աւելի խելքը քան սիրտն է զարգացած։ Մտքի զարգացմամբ նա իրեն պահել գիտէ և կարող է յարմարուել ամէն շրջանի ու հանգամանքի. նա ամենայն արագութեամբ ընդունում է իրեն շրջապատող քաղաքակրթութիւնը, շատ հեշտութեամբ սովորում է լեզուներ, հեշտութեամբ ըմբռնում է իւր ամուսնու առևտրական ձեռնարկութիւնների ոգին և նրան խորհրդատու է հանդիսանում։ Նա նաև լաւ տանտիկին է, խնայող, որ, սակայն, ոմանց մէջ չափազանցութեան է հասնում, տնտես, նրա տունը միշտ լի է զանազան, նրա ձեռքով պատրաստուած պաշարեղէնով, բռնուածքներով և այլն։ Նրա աշխատասիրութիւնն այն աստիճանի է հասնում, որ ամենահարուստ տներումն անգամ խոհանոցի ամբողջ հոգսը նրա վրայ է ընկած։

Զօկ կնոջ մի գովելի յատկութիւնն էլ նրանումն է կայանում, որ նա միանգամայն ըմբռնելով ուսման կարևորութիւնը, ամենայն կերպ աշխատում է իւր որդիներին ուսման տալ։ Զօկ կնոջ պարծանքի առարկան, նրա նախանձի շարժառիթը՝ որդիների կրթու-

*ձգելով իմանում էին, թէ ո՛ր սրբիցն է և այն սրբի դուռը տանում երեխային, մատաղ անում։*

*Եթէ երեխան չէր քնում, վախեցնում էին, որ քնի. Օլը (ալը) ակալ ա, քուն ըլի։ Կուլի կուլին (շունը) ակալ ա, քուն ըլի։*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔ

*Ջօկերի ընտանեկան կեանքը ուշադրաւ է առաւելապէս նրանով, որ նա ներկայացնում է նահապետական կեանքից ընտանեկան կեանքի անցողական շրջանը։ Ջօկ ընտանիքն այլևս կաշկանդուած չէ նահապետական գերդաստան բռնակալական շղթաներով, սակայն և՛ հասած չէ անհատական ազատութեան։ Ջօկ կինը թէև գերդաստանի ստրուկը չէ, բայց և՛ ամուսնու հաւասար ընկերը չէ, թէպէտ և նա ազատուած է առանձնացած, փակ կեանքից, բայց և այնպէս դեռ ևս լիովին չի ընտելացել տղամարդկանց հասարակութեանը, նա սրանց մէջ մի առանձին խումբ, մի առանձին շրջան է կազմում, նրանց ընդհանուր խօսակցութեան չի մասնակցում։ Միշտ նկատելի է, որ մի վիհ բաժանում է այս երկու սեռի էակներին, թէպէտ և այն ևս զգալի է, որ այդ վիհն արագութեամբ փոքրանում է։*

*Ջօկ կինը տղամարդու պէս՝ աւելի մտքի, քան զգացմունքի էակ է, նրա մէջ աւելի խելքը քան սիրտն է զարգացած։ Մտքի զարգացմամբ նա իրեն պահել գիտէ և կարող է յարմարուել ամէն շրջանի ու հանգամանքի. նա ամենայն արագութեամբ ընդունում է իրեն շրջապատող քաղաքակրթութիւնը, շատ հեշտութեամբ սովորում է լեզուներ, հեշտութեամբ ըմբռնում է իւր ամուսնու առևտրական ձեռնարկութիւնների ոգին և նրան խորհրդատու է հանդիսանում։ Նա նաև լաւ տանտիկին է, խնայող, որ, սակայն, ոմանց մէջ չափազանցութեան է հասնում, տնտես, նրա տունը միշտ լի է զանազան, նրա ձեռքով պատրաստուած պաշարեղէնով, բանուածքներով և այլն։ Նրա աշխատասիրութիւնն այն աստիճանի է հասնում, որ ամենահարուստ տներումն անգամ խոհանոցի ամբողջ հոգսը նրա վրայ է ընկած։*

*Ջօկ կնոջ մի գովելի յատկութիւնն էլ նրանումն է կայանում, որ նա միանգամայն ըմբռնելով ուսման կարևորութիւնը, ամենայն կերպ աշխատում է իւր որդիներին ուսման տալ։ Ջօկ կնոջ պարծանքի առարկան, նրա նախանձի շարժառիթը՝ որդիների կրթու-*

թյունն է։ Որքան էլ որ բարձր լինի որդիներին ուսում տալու ծախքը նրա նյութական դրությունից, այնուամենայնիվ գողթնեցին կաշուց դուրս է գալիս, հազար ու մի զրկանքի է ենթարկում իրեն, որպեսզի իր որդին հարևանի որդուց յետ չմնայ, որպեսզի ինքն էլ կարողանայ պարծիլ, թէ իր որդին էլ ուրիշ քաղաքում է սովորում։

Սակայն այս լաւ կողմերի հետ գողթնեցին ունի նաև բաւական պակասութիւններ.—նախ նրա ներքինն արտաքինից շատ պակաս է զարգացած, ուստի և շատ աւելի բամբասասէր է, քան կարելի էր սպասել՝ դատելով արտաքինից. նա նաև այնքան մաքրասէր չէ, որքան, օրինակ, ախալքալաքցին. նրա մաքրասիրութիւնն էլ արտաքուստ է, բոլոր գիւղերից միայն Վերին Ագուլիսը մի բաղանիս ունի, որը և տարուայ մեծագոյն մասը փակ է։ Սակայն այս բոլորից աւելի ցաւալին այն է՝ որ նրա սիրտը, հոգեկան կեանքը, մտքի համեմատութեամբ քիչ է զարգացած։ Սէրը, անկեղծ, սրտագին բարեկամութիւնը, օրօրը, երգեցողութիւնը, նուագածութիւնը միանգամայն թերի են։ Ամբողջ Զօկաստանում մի սիրային արկածք կամ այդ մասին մի սրտաբուղխ երգ յայտնի չէ, «Բօրդի պլտական էլիս աղիկյ այ, քան թէ սուրբի» առածը ցոյց է տալիս նրա կրօնական զգացմունքը, ժողովրդական երգերի պակասութիւնն ապացուցանում է նրա սրտի չորութիւնը։

Եւ ինչպէս կարող էր չչորանալ նրա սիրտը, երբ երկար տարիների ընթացքում բացակայում են նրա սիրոյ առարկաները՝ ամուսինը և զաւակները [1]։

## ԹԱՂՈՒՄՆ ԵՒ ՄԵՌԵԼՈՑ

Հիւանդը մերձիմահ դառնալիս՝ նրան խնամողները շտապում էին հրաւիրել քահանային, որ հաղորդութիւն տայ նրան։ Ապա՝ դեռ չմեռած՝ երեսը դարձնում էին դէպի աղօթարան՝ արևելք։ Երբ աւանդում էր հոգին՝ ձեռները խաչում էին կրծքին, աչքերը հուփ տալիս՝ որ խփուէին։

[1]) Հետևելով մեր ընդունած ծրագրին, պէտք էր, որ խօսէինք նաև գողթնեցիների գործածած կերակուրների, ժողովրդական դեղերի մասին ևս, սակայն որովհետև սրանց վերաբերեալ ոչ մի առանձնայատուկ բան չգտանք, ուստի և զանց ենք առնում, իսկ հաւատքի և դպրոցների մասին կը խօսենք ամբողջ Նախիջևանի գաւառի մասին միանգամից։

*թիւնն է։ Ո՛րքան էլ որ բարձր լինի որդիներին ուսում տալու ծախքը նրա նիւթական դրութիւնից, այնուամենայնիւ զօկ կինը կաշուց դուրս է գալիս, հազար ու մի զրկանքի է ենթարկում իրեն, որպէսզի իր որդին հարեւանի որդուց յետ չմնայ, որպէսզի ինքն էլ կարողանայ պարծիլ, թէ իր որդին էլ ուրիշ քաղաքում է սովորում։*

*Սակայն այս լաւ կողմերի հետ զօկ կինն ունի նաեւ բաւական պակասութիւններ.—նախ նրա ներքինն արտաքինից շատ պակաս է զարգացած, ուստի և շատ աւելի բամբասասէր է, քան կարելի էր սպասել՝ դատելով արտաքինից. նա նաև այնքան մաքրասէր չէ, որքան, օրինակ, ախալքալաքցին. նրա մաքրասիրութիւնն էլ արտաքուստ է, բոլոր գիւղերից միայն Վերին Ագուլիսը մի բաղնիս ունի, որը և՛ տարուայ մեծագոյն մասը փակ է։ Սակայն այս բոլորից աւելի ցաւալին այն է՝ որ նրա սիրտը, հոգեկան կեանքը, մտքի համեմատութեամբ քիչ է զարգացած։ Սէրը, անկեղծ, սրտագին բարեկամութիւնը, օրօրը, երգեցողութիւնը, նուագածութիւնը միանգամայն թերի են։ Ամբողջ Զօկաստանում մի սիրային արկածք կամ այդ մասին մի սրտաբուղխ երգ յայտնի չէ, «Քօրդի պլտական էլիս աղիկյ այ, քան թէ սուրբի» առածը ցոյց է տալիս նրա կրօնական զգացմունքը, ժողովրդական երգերի պակասութիւնն ապացուցանում է նրա սրտի չորութիւնը։*

*Ու ինչպէս կարող էր չչորանալ նրա սիրտը, երբ երկար տարիների ընթացքում բացակայում են նրա սիրոյ առարկաները՝ ամուսինը և զաւակները [1]։*

## ԹԱՂՈՒՄՆ ԵՒ ՄԵՌԵԼՈՑ

*Հիւանդը մերձիմահ դառնալիս՝ նրան խնամողները շտապում էին հրաւիրել քահանային, որ հաղորդութիւն տայ նրան։ Ապա՝ դեռ չմեռած՝ երեսը դարձնում էին դէպի աղօթարան՝ արեւելք։ Երբ աւանդում էր հոգին՝ ձեռները խաչում էին կրծքին, աչքերը հուփ տալիս՝ որ խփուէին։*

---

*[1]) Հետեւելով մեր ընդունած ծրագրին, պէտք էր, որ խօսէինք նաև գողթնեցիների գործածած կերակրների, ժողովրդական դեղերի մասին եւ, սակայն որովհետեւ սրանց վերաբերեալ ոչ մի առանձնայատուկ բան չգտանք, ուստի և զանց ենք առնում, իսկ հաւատքի և դպրոցների մասին կը խօսենք ամբողջ Նախիջեւանի գաւառի մասին միանգամից։*

Սուգն ու լացը բռնում էր ոչ միայն ամբողջ տունը, այլ և ամբողջ փողոցը։ Դրկից, բարեկամ իսկոյն հաւաքւում էին լաց լինելու և մտերիմներին մխիթարելու։ Գալիս էր քահանան հոգոց ասում և օրհնում մի աման ջուր, որով պէտք է լողացնէին ննջեցեալին։ Անմիջապէս առանձնացնում էին ննջեցեալին և նրա հանգած տեղում ճրագ վառում, որ վառ էր պահւում մինչև նրա թաղումը։ Յետոյ եթէ տղամարդ էր՝ 2 տղամարդ, իսկ եթէ կին՝ երկու կին լողացնում էին.—Ննջեցեալին պառկեցնում էին մի տախտակի վրայ՝ երեսը դէպի արևելք դարձրած և ապա լողացնողները ձեռներին մի մի ծնռնաման (քսակ) անցկացրած, տաք ջրով, առանց սապոնի, լողացնում էին, սկսելով գլխից։ Երբ աւարտում էին, կանչում էին տնեցիներին, որ այդ ջրով ձեռները լուանան. ապա նոյն ջրի կաթսան բերինքսրվայր էին դնում և այդպէս թողնում երեք օր, իսկ փոքրիկ կուժը, որով ջուր էին ածում, կոտրում էին, որպէսզի «այլևս ուրիշը չմեռնի և նոյն կժով վերան ջուր չածեն»։ Այս ժամանակ քահանան կրկին գալիս էր, կարում մի վարշամակ, ու մի նշխարքի ու խնկի հետ դընում ննջեցեալի բերանին։ Մի զոյգ մոմ էլ երեք անգամ վառելուց և հանգցնելուց յետոյ, դնում էին ննջեցեալի աջ ձեռը, ապա տեղական կտաւից պատանք էին կարում և պատանքում, փաթաթում մի կապերտի մէջ և դնում եկեղեցուց բերած հասարակական նաժի մէջ։ Շարունակ մօտիկ և հեռաւոր ազգականներ ու ծանօթները գալիս էին տեսութեան և խնդրում քահանային, որ հոգոց ասի։

Սովորաբար ննջեցեալին առաւօտն էին թաղում, ոչ երբէք արևը ծագելուց առաջ կամ մայր մտնելուց յետոյ։ Փոքրահասակներին կամ տնից ուղղակի գերեզմանատուն էին տանում, կամ եկեղեցի էին դնում և առանց պատարագ մատուցանելու՝ տանում թաղելու, մինչդեռ հասակաւորներին անշուշտ եկեղեցի էին տանում և պատարագ մատուցանելուց յետոյ վերցնում։

Շատ հազիւ էր պատահում, որ ննջեցեալին երեք-չորս

որ անթաղ պահէին, ուստի և պատահում էր, որ լետարգեան քնով քնածներն էլ կամ թաղւում էին և կամ թաղման պատրաստութիւնը տեսնելիս արթնանում էին։

Բարեկամներն ու ծանօթները հաւաքւում էին մեռելատունը, մեռելին եկեղեցի տանելու։ Ննջեցեալի տէրը երեցփոխից մի երկու բուբլու փարա էր վերցնում[1]), և մի թաշկինակի մէջ ածած կանգնում ննջեցեալի կողքին։ Թաղման տան կարգը կատարելուց յետոյ բոլոր յուղարկաւորողները մօտենում էին, թաշկինակի միջից մի մի փարա վերցնում և ննջեցեալի վրայ դրուած խաչը համբուրելով փարան ձգում նրա մօտ դրուած ափսէի մէջ, իբր խաչհամբոյր, որ պատկանում էր քահանային[2])։ Կանայք լաց էին լինում ողբեր ասելով, որոնք գրեթէ բոլորն էլ թուրքերէն էին։ Վերջապէս ննջեցեալին վերցնում էին և տանում եկեղեցի։ Եթէ փոքրահասակ էր ննջեցեալը՝ անմիջապէս կատարում էին թաղման կարգը և տանում գերեզմանատուն, իսկ եթէ չափահաս՝ սկսում էին պատարագ մատուցանել։ Պատարագի աւարտին կանայք շրջապատում էին նաժը, և լալիս ու թուրքերէն ողբեր ասում։ Քահանան էլ գանձ էր ասում, որից յետոյ միմիայն յուղարկաւորող կանայք համբուրում էին խաչը և խաչհամբոյր ձգում, առնելով փարաները մեռելատէրի թաշկինակից։ Ապա չորս մարդ՝ բռնելով նաժի չորս ծայրերից, երեք անգամ բարձրացնում էին, դնում գետնին և յետոյ՝ վերցնում և տանում գերեզմանատուն։ Այս ժամանակ ննջեցեալի տէրը յուղարկաւորող կանանց մի մի թլթա (լաւաշ հացի մէջ փաթաթած միս կամ պասին՝ լոբի, կարտոֆիլ, բակլա) և մի մի բաժակ գինի էին տալիս, որ ննջեցեալի հոգու մասին բարեմաղթութիւններ անելով

[1]) Սա տաճկական փող է, ութ փարան արժէր մի շահի-մէկ ու կէս կոպէկ։

[2]) Յետոյ փարայի փոխարէն ձգում էին պղնձի կոպէկ, որ մօտաւորապէս 2 ½ փարա արժէր. ապա մի քառորդ արծաթ կոպէկ, որի վեցը մի շահի, 5 կ. արժէր։

խմում էին և յետ դառնում դէպի սգատունը։ Տղամարդիկ փոփոխակի վերցնելով նաժը՝ գնում էին գերեզմանատուն, ուր թաղման կարգը կատարելուց յետոյ բոլորը համբուրում էին ննջեցեալի վրայ դրուած խաչը և խաչհամբոյր ձգում, դարձեալ վերցնելով ննջեցեալի տիրոջ թաշկինակից։ Ապա ննջեցեալին հանում էին նաժից ու կապերտից ու դնում գերեզմանի մէջ, վերցնելով սրա վերայ խաչաձև դրուած թին ու բրիչը։ Երբ քահանան ննջեցեալի մօտիկ անձնաւորութեան բռում հող էր օրհնում և ձգել տալիս գերեզմանի մէջ, բոլոր յուղարկաւորողները հետևում էին նրան և երեքական բուռ հող ձգում։ Երբ թաղման կարգը աւարտում էր, նաժը բերինքսիվայր էին դարձնում, դաղման ու բահը կոթահան անում, որպէսզի այլևս ննջեցեալ չպատահի։

Ապա ննջեցեալի տէրը ամէն մի յուղարկաւորողի հացի մէջ փաթաթած մի պատառ միս և մի բաժակ գինի կամ օղի էր մատուցանում, սկսելով քահանայից, որ ուտելուց յետոյ հոգոց էր ասում։ Յետոյ ամէն մինը մօտենում էր ննջեցեալի տիրոջը և գլուխ տալով ասում. Աստուած հոգին լուսաւորի, սուրբ հոգով մխիթարիք։ Այնուհետև բոլորն յետ էին դառնում, ննջեցեալի տիրոջից հրաւիրուելով հոգուհացի։ Գրեթէ բոլորն էլ գնում էին։ Տան դրան առաջ մի ծառայ աջ ձեռին մի սափոր, ձախին կոնք բռնած, ուսին էլ սի սրբիչ ձգած ջուր էր ածում՝ որ յուղարկաւորողները ձեռները լուանան։ Անմիջապէս ծալապատիկ նստում էին արդէն սփռած սփռոցների շուրջը և քահանայի օրհնութիւնից յետոյ սկսում ուտել։ Նախ մինը առաջ էր բերում դնդում խորոված (դդումից, մսից և սոխից պատրաստած) մի մեծ ափսէի մէջ ածած և մօտենալով հացի նստողներին մի մի գդալ ածում էր նրանց ներկայացրած հացի վրայ, որ ուտեն։ Յետոյ մատուցանում էին ամէն մինին կամ երկուսին մի ամանով բոզբաշ, չիլաճօշ, պանճարաճօշ և տոլմա. իսկ պասին՝ ընկոյզով պատրաստած դնդում խորոված, մըշաճօշ (լոբու ճաշ),

ձէթով շիլաճօշ և բրնձով տոլմա։ Ճաշի ընթացքում քահանայի առաջարկով խմում էին մի մի բաժակ գինի, բարեմաղթելով, որ Աստուած լուսաւորէ այս գերդաստանի նոր, հին, և գիւղի բոլոր ննջեցեալների հոգիները։ Ներքին Ագուլիսում ճաշի աւարտին սպասաւորը մի ափսէի մէջ երկու խնձոր կամ երկու սերկևիլ դրած մատուցանում էր քահանային։ Սա էլ վերցնում էր, հոտ քաշում և տալիս մինը աջ, միւսը ձախ կողմը նստողներին։ Անմիջապէս սպասաւորը քահանային և սրանց մի մի բաժակ գինի էր մատուցանում, որոնք խմում էին նոր ննջեցեալի հոգու փրկութեան մասին բարեմաղթութիւններ անելով և յետոյ խնձորը տալիս իրենց մօտ նստողին։ Երբ բոլորը այս կերպ խմում էին հոգու բաժակը, խնձորը կրկին տալիս էին քահանային, որ հոտ էր քաշում և դնում գրպանը և վեր կենում «հոգւոց» ասում։ Ապա տղամարդիկ ցրւում էին «Աստծով մխիթարուիս» ասելով ննջեցեալի տիրոջը։ Տղամարդկանցից յետոյ կանայք էին ճաշում, որոնց նախագահում էր իրիցկինը։ Ճաշից յետոյ առաջ էին բերում ննջեցեալի շորերը և ողբեր ասելով լաց լինում։ Ի վերջոյ ջուր էին մատուցանում սրանց, որ արտասուալից աչքերը լուանան և գնան իրենց տները։ Երեկոյեան քահանան, գերեզման հատողները և ննջեցեալին լողացնողները կրկին գալիս էին, հոգւոց ասում և ընթրում. այս կրկնւում էր եօթ օր շարունակ։

Թաղման երկրորդ օրը, առաւօտեան գնում էին «եռանահող»։ Բարեկամ և ծանօթ կանայք մի մի կուժ գինի կամ օղի և մրգեր առած գալիս էին մեռելատուն, բերածները տալիս տանտիկնոջը և ննջեցեալի շորերը առաջ բերելով կրկին լաց լինում և ողբեր ասում. յետոյ գալիս էր քահանան, հոգւոց ասում և բոլոր կանանց հետ գնում գերեզմանատուն։ Շրջապատելով գերեզմանը՝ ոտների և գլխի մօտ մի մի մոմ էին վառում և մինչդեռ քահանան կատարում էր ծէսը, կանայք բարձրաձայն ողբեր էին ասում և լալիս։ Երբ աւարտւում էր այգի կարգը՝ մեռելա-

տէրը, որ իւր հետ բերած էր լինում օղի, գաթայ, խաշած միս և մրգեր, հիւրասիրում էր բոլորին՝ հէնց գերեզմանի կողքին, որից յետոյ վերադառնում էին մեռելատուն, ճաշում և կրկին ողբեր ասելով լալիս և ապա իւրաքանչիւրը իւր բերած կուժը դատարկելով վերցնում էր և գնում տուն։

«Հիսնկը»-ին, թաղման եօթներորդ օրը, սովորաբար պատարագ էին մատուցանում և կանանց ու տղամարդկանց ահագին բազմութիւն հրաւիրում «հոգու հաց» ուտելու։

Այն օրը ննջեցեալի շորերը, որ թաղման երրորդ օրը բարեկամ կանայք լուացած էին լինում, բաժանում էին առաւելապէս ննջեցեալին լողացնողների և միքանի բարեկամների մէջ։

Հետևեալ շաբաթ օրը, երեկոյեան, կանայք և տղամարդիկ հաւաքւում էին մեռելատունը, ուր հաց ուտելուց յետոյ սգաւորներին տանում էին եկեղեցին՝ երեկոյեան ժամերգութեան ներկայ գտնուելու։ Ժամերգութիւնից յետոյ քահանան մօտենում էր և հոգոց ասում։ Իսկ երեք կամ չորս շաբաթից յետոյ բարեկամները հրաւիրում էին սգաւորներին իրենց տուն «սըգահանիք».—հիւրասիրում էին նրանց ու նրանց պատճառով հրաւիրուած մօտիկ բարեկամներին ճաշով և թէյով։

Առաջին նաւակատիքին բարեկամները կրկին հաւաքւում էին ննջեցեալի տունը սգաւորներին մխիթարելու, և հիւրասիրւում էին ընթրիքով։ Հետևեալ օրը կրկին հաւաքւում էին և սգաւորների հետ միասին գնում գերեզմանատուն, գերեզմանը օրհնել տալիս։

Ննջեցեալի տարելիցին ունեւորները պատարագ էին մատուցանել տալիս և «հոգու հաց» տալիս։

Երեխաների գերեզմանների վրայ խնձոր, մրգեր, ծաղիկներ էին դնում։ Ծնողեան և զատկի երեկոներին մոմեր են վառում գերեզմանների վրայ։

Այրի կանայք, մինչև կրկին ամուսնանալը՝ իբր սգի նշան՝ երեսներին կնջիկ չէին ձգում։

Թաղման վերաբերեալ սովորութիւնների մէջ այժմ շատ քիչ փոփոխութիւններ են մտած. «Թիքան», հոգուհաց կամ մեռելաճաշը հիմայ էլ են տալիս։ Միակ նկատելի փոփոխութիւնը նրանումն է, որ այժմ դագաղով, հանդերձներով են թաղում։ Դագաղի վրայ էլ «երեսաքաշ»—մետաքսէ կամ մահուդի կտոր—են քաշում, որ թաղման ժամանակ վերցնում են և քահանային նուիրում։ Թարմ և արուեստական ծաղիկներից պսակներ են դնում դագաղի վրայ, կանայք սև շորեր են հագնում։

Գերեզմանատները գտնւում էին գիւղից դուրս, փոքր ինչ հեռու, այնպէս որ ժամանակի ընթացքում գիւղը մեծանալով շրջապատում էր սրանց, և վերջ ի վերջոյ քանդում, բնակարաններ կառուցանում, ինչպէս Ագուլիսում ս. Քրիստափոր եկեղեցու գերեզմանատունը, ուր այժմ շինական դատարանն ու շուկան են գտնւում։ Ամէն մի եկեղեցի իւր առանձին գերեզմանատունն է ունեցել. այս պատճառով և Վ. Ագուլիսում 10 գերեզմանատուն է եղել, որոնցից ամենայարմարը՝ Ս. Յովհաննէս եկեղեցու «Բէկօղլու» անուն կրողը և ս. Աստուածածնինը են։ Գերեզմանները, գիւղական տների նման, խառն ի խուռն են դասաւորուած, միայն իւրաքանչիւր գերդաստանինը միմեանց մօտ են կուտակուած։ Գրեթէ ոչ մի գերեզմանատուն չունի ոչ պարիսպ և ոչ ծառուղիներ։ Գերեզմանաքարերը մեծ մասամբ քառանկիւնի են, կան և՛ դագաղաձև ու օրօրոցաձև։ Ուշադրաւ է, որ կանանց գերեզմանները շատ աւելի բազմաթիւ են քան տղամարդկանցը. պարզ է, որ օտարութեան մէջ դեգերող տղամարդկանցից քչերին է յաջողուել հանգչիլ ծննդավայրում։ Տապանագրերը գրաբառ են, և մեծ մասը միօրինակ՝ Այս է տապան այսինչի։ Առաջ բերեմ մի երկուսը՝ Վ. Ագուլիսում.

Այս է տապան Մղդսի Ամիրի որդի Զաքարին Թւ. ՌՃՀԹ [1]).

[1]) Թերևս այս լինի մեզ յայտնի վաճառականը, որի օրագրութիւնը տպագրեց պ. Ա. Քալանթարը։

Այս է տապան մղդսի Աղամիրին կողակից Ասլի Գիւլին. Թ. ՌՃԺԶ.

Այս է տապան Ավգլմասի կողակից Հռումսիմին Թվ. ՌՃԺԴ.

## ՆՇԱՆԱՒՈՐ ՏՕՆԵՐ

Գողթնում տօներից շատերը կորցրել են արդէն իրենց ազգագրական նշանակութիւնը, ուստի և ես կը նկարագրեմ միայն նրանք, որոնք այնուամենայնիւ նշանաւոր են այդ տեսակէտից.

Վարդավառ.—Սովորաբար առաւօտը միմեանց վրայ ջուր են սրսկում։ Մինչև 1850 թուականը դեռ ևս պահպանւում էր այն սովորութիւնը՝ որ այս առաւօտը կանայք թելերի վրայ ամրացնելով ծաղիկներ, խնձոր, մանր վարունկ, և մանաւանդ վարդեր, խաչաձև կապում էին երեխաների կրծքին և այդպէս տանում եկեղեցի։ Պատարագից յետոյ ատեանի առաջ երկու զըրակալ էին դնում, որոնցից մինի վրայ Աւետարանն ու նշխարք էին դնում, իսկ միւսի վրայ մի ամանով ջուր։ Երբ ժամուորները մօտենում էին Աւետարանը համբուրելու և նշխարք վերցնելու, մի տիրացու ձեռի փունջը թաթախելով ջրի մէջ՝ սրսկում էր սրանց վրայ։

Ճաշից յետոյ կանանց և տղամարդկանց ահագին բազմութիւն հաւաքւում էր գիւղից դուրս՝ մի հրապարակ՝ «խնդում տօք» անելու [1]։ Այս նպատակի համար նշանուած աղջիկների ձեռքով նախապէս մի ամանում կանաչացրած գարու կամ ցորենի մէջ ամրացնում էին շատ անգամ խաչաձև կամ միջանի թևաւոր փայտ, որը զարդարում էին վարդերով, խնձորով ու մանր վարունկով. Այս զարդարած փայտը կանանչի հետ միասին կոչւում էր «խընդում»։ Մի պառաւ կին վերցնում էր այս «խնդումը», տանում այդ հրապարակը, վայր դնում և նստելով մօտը

[1]) Տէր Յակոբի տետր և Ս. Սարգսեան Ագուլեցոց բարբառը։

*Այս է տապան մղդսի Աղամիրին կողակից Ասլի Գիւլին. Թ. ՌՃԺԶ.*

*Այս է տապան Ավգլմասի կողակից Հուռմսիմին Թվ. ՌՃԺԴ.*

# ՆՇԱՆԱՒՈՐ ՏՕՆԵՐ

*Գողթնում տօներից շատերը կորցրել են արդէն իրենց ազգագրական նշանակութիւնը, ուստի և ես կը նկարագրեմ միայն նրանք, որոնք այնուամենայնիւ նշանաւոր են այդ տեսակէտից.*

*Վարդավառ.—Սովորաբար առաւօտը միմեանց վրայ ջուր են սրսկում։ Մինչև 1850 թուականը դեռ ևս պահպանւում էր այն սովորութիւնը՝ որ այս առաւօտը կանայք թեղերի վրայ ամրացնելով ծաղիկներ, խնձոր, մանր վարունկ, և մանաւանդ վարդեր, խաչաձև կապում էին երեխաների կրծքին և այդպէս տանում եկեղեցի։ Պատարագից յետոյ ատեանի առաջ երկու դրակալ էին դնում, որոնցից մինի վրայ Աւետարանն ու նշխարք էին դնում, իսկ միւսի վրայ մի ամանով ջուր։ Երբ ժամւորները մօտենում էին Աւետարանը համբուրելու և նշխարք վերցնելու, մի տիրացու ձեռի փունջը թաթախելով ջրի մէջ՝ սրսկում էր նրանց վրայ։*

*Ճաշից յետոյ կանանց և տղամարդկանց ահագին բազմութիւն հաւաքւում էր գիւղից դուրս՝ մի հրապարակ՝ «խնդում տօք» անելու [1]։ Այս նպատակի համար նշանուած աղջիկների ձեռքով նախապէս մի ամանում կանաչացրած գարու կամ ցորենի մէջ ամրացնում էին շատ անգամ խաչաձև կամ միքանի թեաւոր փայտ, որը զարդարում էին վարդերով, խնձորով ու մանր վարունկով. Այս զարդարած փայտը կանանչի հետ միասին կոչւում էր «խընդում»։ Մի պառաւ կին վերցնում էր այս «խնդումը», տանում այդ հրապարակը, վայր դնում և նստելով մօտը*

[1]) *Տէր Յակոբի տետր և Ս. Սարգսեան Ագուլեցոց բարբառը։*

հակում։ Հանդիսականները պար էին բռնում և դաւուլ զուռնի ներդաշնակութեամբ պարում այդ խնդումի շուրջը։ Երկարատև պարից յետոյ պառաւը վերցնում էր խընդումը, դնում գլխին և ինքը սկսում պարել՝ երգելով.

Խնդում օնիմ՝ վա՜րդաւ լի,
Զըրդըփչած խնձո՜ւր լի.
Վախիմ թա քո՜մըս տանի,
Խնդումըս հաղին տանի։

Այս ժամանակ երիտասարդներից ճարպիկը գաւազանով խփում էր խնդումին և վայր գլորում, իսկոյն բոլորը վրայ էին վազում և խլխլում ծաղիկներն ու մրգերը։ Իսկ պառաւը անիծում էր սրանց՝ երգելով.

Խնդումըս հաղին տարալ այ...
Ծօր ըրահիքյ՝ մյ հարայ.
Խզվըկուտուր էլի [1]) Նօ,
Ուվ ա՜մ խնդումըս տարալ այ.
Աստված քու ջանիդ քուր տօյ,
Բո՜ւթերիտ էղունք չի տօյ,
Ուվ ա՜մ խնդումըս տարած այ,
Տիմնիմ օր այսաղ սւին տօյ [2]).
Նօ կնընչկուտուր էլի [3]),
Ա՜րկու ակնաւ խվարի,
Գինդարու [4]) չունք պտոկ [5]) արի,
Ըրասխի չունք չիրք արի։

*Վերափոխումն ս. Աստուածածնի*.—Այս տօնը մի առանձին շքով կատարւում է վերին Ագուլիսում, յատկապէս ս. Աստուածածին եկեղեցու տօնախմբութեան պատճառով։ Ինչպէս տեսանք տեղագրական բաժնում, այս եկեղեցու տեղումը հնումը կանգնած է եղել մի բաւական նշանաւոր կուսատուն, որի տօնը շատ մեծ շքով կատա-

---

1) Դեռահաս մեռնիս։
2) Այնքան նուազիս՝ որ ասեղը կարողանայ իբր նեցուկ ծառայել քեզ։
3) Դալար մեռնի։
4) Ագուլիսի մօտ մի սար է։
5) Մարմնի վրայ յառաջացող վէրք։

բուելու պատճառով, աւանդաբար շարունակւում է և՛ այժմ։ Աստուածածնի պասի ամբողջ շաբաթի ընթացքում առաւօտները շատ վաղ, արշալուսին, առաւելապէս կանայք ուխտ են գնում այդ եկեղեցին, ու մոմ վառում և միքանի անգամ պտտւում եկեղեցու շուրջը։

Բոլոր ժողովուրդը, մանաւանդ նորատի կանայք և աղջիկները, ամէն ջանք գործ են դնում պատրաստուել՝ կարելոյն չափ լաւ պճնուելու այդ օրը։ Ամիսներ առաջ պատուէրներ են տալիս Թիֆլիս, Բագու, Մոսկուա, Պետերբուրգ, Մարսէյլ, Փարիզ և ուրիշ քաղաքներ թանգագին և նոր տարազի շորեր՝ յատկապէս այս օրուայ համար։ Վերջապէս բացւում է ցանկալի առաւօտը. բոլորն սկսում են զուգուել, պճնուել, բայց մինչև սրանց պատրաստուելը՝ գիւղի ամբողջ հոգևորականութիւնը միքանի տասնեակ պառաւ կանանց և ծեր մարդկանց ու մանր երեխաների հետ խաչով խաչվառով անցնում են բոլոր 10 եկեղեցիները՝ սկսելով ս. Թովմայի վանքից և ամէն տեղ թափոր կատարելով՝ գալիս ս. Աստուածածնի եկեղեցին։ Այստեղ էլ նախ թափոր են կատարում և ապա պատարագ մատուցանում։ Այս ժամանակ ամբողջ Ագուլիսի և մասամբ շրջակայ գիւղերի բնակիչները թափւում են մեծ մասամբ եկեղեցու ընդարձակ գաւիթը, մի մասն էլ մտնում է եկեղեցի։ Ահագին բազմութիւնը վերին աստիճանի հանդիստ, քաղաքավարի կանգնած ցածր ձայնով խօսում է, միմեանց նայում, սրա նրա հագուստները քննադատում։ Գիւղական տօներին յատուկ աղմուկը, զօռեմառը, դաւուլ-զուռնան, արբեցողութիւնն ու հայհոյանքը, կռիւը՝ միանգամայն տեղի չեն ունենում։ Մարդ հիացմունքով նայում է այս բազմատարազ և բազմազան հասարակութեան վրայ, որի արտաքինը մի կատարեալ մրցումն է ներկայացնում զանազան մայրաքաղաքների; և երբէք թոյլ չի տալիս նրանց իբր գիւղացի նկատելու։ Ափսոս միայն, որ նրանց խօսակցութեան նիւթը, հետաքրքրութեան ա-

տարկան և այլն ցոյց չեն տալիս արտաքնին հաւասար նաև ներքին, մտաւոր, հոգեկան կրթութիւն։

Օրհնուած խաղողը և մատաղի պատառները[1]) բաժանելիս՝ մի այնպիսի կարգապահութիւն է տիրում, որ նոյն իսկ մեծ քաղաքներում չի նկատւում։

Հետևեալ օրը, երկուշաբթի, Ներքին Ագուլիսի հասարակութիւնն է թափորով գալիս այս եկեղեցին, պատարագ մատուցանում, մատաղ անում և բոլորը միասին դաւթում նստած ճաշում։

Համբարձում.—Վիճակ հանելու սովորութիւնը այս գաւառում էլ եղել է, միայն այժմ բոլորովին վերացել է։ Սովորութիւն է եղել նաև, որ այդ օրը կանայք ջուր էին տաքացնում և եօթը տեսակ ծաղիկ մէջը ձգելով՝ գլխները լուանում։ Այս դեռ էլ բոլորովին չէ վերացել։

Համբարձման նախորդ երեկոյեան էլ ոմանք վարդի գալար թուփը չափում էին մի թիզ գետնից և թելով կապում։ Առաւօտեան կրկին չափում էին և եթէ թուփը երկարացած լինէր՝ նշանակում էր, որ թել կապողը երկար պիտի ապրի։

Ոմանք էլ նոյն երեկոյին մաքրում էին «շահտանի» (անձրևը հոսելու համար դրուած խողովակ) առաջը և վերան մի քար դնում. առաւօտեան վերցնում էին այս քարը և տակը մազ որոնում, որ, նրանց կարծիքով, բուսած պիտի լինէր, և եթէ մազը սպիտակ լինէր՝ երկար, իսկ եթէ սև՝ քիչ պիտի ապրէին իրենք։

Շատերը հաւատում էին, թէ գիշերը լոյս էր իջնում և ծառերը միմեանց ողջոյն էին տալիս, ուստի և արթուն հսկում էին, որ տեսնեն՝ և ինչ ցանկութիւն որ ունեն նոյն վայրկենին խնդրեն՝ կատարուի։

Համբարձման օրը մեծ բազմութիւն ուխտ էր գնում «Խաչ-քար» կոչուած ուխտատեղին, որ գտնւում է Վերին գետից դէպի հիւսիս 2 վերստ հեռու, գետի ափին. սա մի

---

[1]) Մատաղի միսը դնում են լաւաշ հացի մէջ և եկեղեցու դրանը բաժանում ժամաւորներին։

մեծ քար է, «որի վրայ ամէն համբարձման գիշեր մի խաչ է դուրս գալիս»։

Այս օրը կաթնաւ կամ կախցաճօշ (կաթնապուր) եփելու ընդհանրացած սովորութիւնը այստեղ ևս շարունակւում է։

Նաւասարդ.—Այս տօնին վերաբերեալ սովորութիւններից մնացել է միայն հետեւեալ երկուսը.—հրայսակ (խաշ, հարիսա) են եփում և երեկոյեան եօթ տեսակ միրգ են դնում մի սկուտեղի վրայ և մատուցանում տնեցիներին՝ ուտելու։



# ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

*Գողթնի կուլտուրական զարգացումը երևում է նաև այն բազմաթիւ ձեռագրերից, որոնք գտնւում են ս. Թովմայի վանքում, գիւղական եկեղեցիներում և մասնաւոր մարդկանց մօտ։ Ընդհանրապէս սրանք բոլորն էլ շատ անխնամ են պահւում, և շատերը արդէն խոնաւութիւնից բորբոսնել են, միայն ս. Թովմայ վանքինը փոքր ինչ լաւ դրութեան մէջ են։*

*Ս. Թովմայի վանքում կան հետևեալները.*

1. Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանաց. *Բամբակեայ թղթի վրայ, երկսիւն, բոլորագիր, կազմած, գրել է Յակոբ «սգաւորը», ի Գաղատիեայ, որ յորջորջին յԱնկիւրիա, ընդ հովանեաւ սբ Ածածնայ և տիրածին կուսին տաճարիս։ Յամի հազարերրորդի յիսուն և ինն երրորդի հայոց թուականութեան [1]։ Զայսու ժամանակաւ սպառեցան և կորեան ապստամբք ճէլէլիք, ամենայն յերկիր խաղաղութեան դարձաւ։*

2. Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանաց. *Մագաղաթեայ, քառածալ, երկսիւն. Նոտրագիր. չորս աւետարանիչների պատկերներով, որոնց վրայից ներկը թափուելով բոլորովին եղծուած է։ Կան գեղեցիկ ծաղկագրեր։ Կազմը ընկած է։ Գրուած է ի թվին ՌՁԷ Յակոբ սարկաւագի ձեռքով*

3. Աւետարան. *մագաղաթեայ. ութածալ. բոլորագիր. արծաթապատ կազմով։ Յիշատակարանը.*

*Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ Նորին կատարեցի զփրկաւէտ աւետարանս ես, Թորոս, ի ՉԽ թուականիս, ի թագաւորութեանս բարեպաշտ և Ածասէր արքային Հայոց Հեթմոյ, որդւոյ Լևոնի, ի դառն և ի դժնդակ ժամանակիս, որ էր հալածումն քրիստոնէից, զոր յայսմ ամի քանդեալ աւերեցան գեղեցկաշէն քաղաքն Հռովմայեցւոց ծովեզրեայքն Տրապօլսոյ և Աքայիոյ և եկեղեցիք քրիստոնէից եղեն հօտից և խաշանց փարախ. և զկնի մի ամի առաւ աստուածարեալ դղեակն Հռոմկլայ ի գոռոզէն փարաւոնէ, որ էր աթոռ Հայրապետացն Հայոց. և սպառ սրբու-*

[1]) Յամսեանն Նաւասարդի ԺՋ. եբրայեցւոցն ամսոյն մեհրշուանն ԺԸ. հռոմայեցւոց յամսոյն նոյեմբերի Դ. յաւուրն շաբաթ ժամն քառն։

թեան գրի վարեցան հանդերձ մեր գլխովն հայրապետաւն, որոյ անունն Ստեփաննոս, և հասեալ ի քաղաքն Դամասկեան ճգնաւորական հանդիսիւ փոխեցաւ յաստեացս, և եթող սուգ անմխիթար ազգիս Հայոց և յայնժամ խորհուրդ ի մէջ առեալ՝ Թագաւորն Հայոց Հեթում բոլոր ուխտիւն եկեղեցւոյ և իշխանօքն հանդերձ, շնորհել բերդ ամուր և երկիր առատ սուրբ Աթոռոյ Լուսաւորչին առ ի հաստատել վերստին. և առաքեն զիմս նուաստութիւն և զսիրելի և զմնդակից եղբայրն իմ զպատուելի եպիսկոպոս՝ զՏէր Թումաս՝ յաշխարհս արևելից. առ ի մեծարանս եպիսկոպոսաց և իշխանաց, գալ վերստին նորոգել զԱթոռ սուրբ Լուսաւորչին. և մեզ հրամայեալ ի Թագաւորէն և ի սուրբ ժողովոյն, յառաջագոյն գալ ի գիրս սուրբ առաքելոցն Թադէոսի, առ գերահռչակ և արժանապատիւ եպիսկոպոսն Տէր Տիրացուն, որ էր առաջնորդ սուրբ ուխտիս Թադէոսի առաքելոյ։ Եւ յայսմ ժամանակի փայլէր, իբրև ջահ վառեալ ի մէջ գիշերի, որ էր նուահանդիստ վտանգելոց, քաղցելոց և ծարաւելոց, շնորհօք ս. առաքելոյն, և Ը ամաւ յառաջ եկեալ սուրբ արքայն Հայոց Լեոն բարի և մնացող և երախտաւոր Տէրն իմ յայս սուրբ ուխտս. և բազում սէր դնեալ արքայլն Հայոց ի սիրոյ եպիսկոպոսէս Տէր Տիրացուէ. նա և ես նուաստս Թորոս վայելեալ ի սէր սորա և ի...

Շարունակութիւնը կտրուած է և չկայ, թերթերը թափուած են։

4. Աւետարան. մագաղաթեայ, քառածալ, երկսիւն, կազմած։ Յիշատակարանը.

Այլև գրեմ զպատճառն աւետարանիս ի թուաբերութեան հայկազեան տոմարիս ՌՃԸ թուին։ Սպանեցաւ Շահ-Իսմայիլն ի ձեռն ըստ ոսոխին իւրոյ, և կանգնեցաւ թագաւոր մի արենարբու և անողորմ, անուն Խուդաբանդայ կոչեցեալ, որ էր եղբայր Շահ-Իսմայիլին. և ի թագաւորելն նորա՝ շարժեաց բարկութիւն աստուածային ի վերայ երկրի։ Ահա առաջինն վերացաւ սէրն ի մարդկանէ։ Յառաջ աստուածայինն և ապա իշխանացն. դարձեալ բորբոքեցաւ սուր սուսերի և պատերազմունք և եկն սով սաստիկ և մահտարաժամ։ Ով եղբայրք, մի ամօթ համարէք բանս այս և սուգ մեծ մնացեալ է ի որդիս մարդոյ, և տեսանք աչօք մերովք, որ աւերեցաւ բազում երկիր և եկեղեցեաց ճրագ անցաւ. և զոմն մահաջինջ եղև, և զոմն անօրինաց ահէն կոծայր, և ոմն նեղեալ սովու, և թարշամեալ անձինն վայ տայր, լալու է ժամանակս այս, որ հայրքն ոչ ճանաչէին զորդիս իւրեանց. և այլք ի զազիր յիրօք կերակրեցան. և մի ոմն ճաշակեաց զմիս որդւոյն և եղբօր իւրոյ. և այլք բազումք մեռան, կոտորական և կերակուր եղան գազանաց և ըստ օրինացն իւրոց ոչ թաղեցան. և եկն այս ամե-

նայն պատուհաս վասն ծովացեալ մեղաց մերոց: Եւ այր ոմն Սիմէօն անուն և կողակիցն իւր Նանէն, որ էին հեզ և խոնարհ, հիւրընկալ և աստուածասէր. որ ունէին որդի Ե և դուստրն այլ և Ե, որ անունք սոցա՝ առաջինն—Նասիպ, Մանկասար, Պաղդասար, Մելքում, Բասպար. և դստերացն—Ուստրանա, Ազիզ. Հուռումսիմա, Սանամ, Դօվլաթ: և զասն մահուամբ, որպէս ծաղիկ, թարշամեցան և իջան ի գերեզման խաչիւ, աջով և քահանայիւ, և ծնողս սոցա Սիմէօն և Նանէն . . .
խնդրեցին գրել մեծաւ փափագանօք զաւետարանս վասն յիշատակի և վասն փրկութեան հոգւոցն իւրոց: Այլ և ես, մեղօք զառածեալս, սուտ անուն Առաքել արեղայս, վասն ծովացեալ մեղացս իմոց և եղայ ալեկոծման ի վերայ երկրի, հանդիպեցայ սոցա և սիրով ընկալայ զնս հոգևոր որդի իւրեանց, և ի սոցին փափագանացն գրեցի զաւետարանն . . .

«Գրեցաւ սա յերկիրս Ուշտունեաց, ի գիւղս որ կոչի Շատուան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային և սուրբ Գէորգայ զօրավարի, յամի Տեառն ՋԼԸ յառաջնորդութեան Տեառն Զաքարեայի նորընծայ Կաթուղիկոսի: Այլ և յաշխարհակալութեան Ազութ խանին ի դառն և վշտալից ժամանակի, յորում միահամուռ ամենեքեան ընցան զհետ ոչինչին և դառնին զոչինչ և դարձան մոլար օրէնս Մահմէդի, որ արձակ ճանապարհաւն տանի ի կորուստ. և բռնադատեն զամենեսեան զմանկունս եկեղեցւոյ դառնալ ի նոցա և ի պատիր յոյսն իւրեանց, հալածեն, նեղեն և տառապեցուցանեն, զոմանց ինչսն յափշտակելով, զոմն տանջելով, զոմն հայհոյելով. և ոչ այսու վերջացան՝ այլ և զբաղում եկեղեցիս տապալեցին, և զխաչ և զաւետարան նախատեցին: Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, և ոչ դառնամք և ոչ զղջանամք, զի միմեանս ատեմք, փոխանակ սիրոյ, և մատնեմք, փոխանակ բարւոյ: Եւ Տէր Ամենակալ երկայնամիտ լինի ի վերայ չարեաց մերոց...»:

5. Աւետարան թղթեայ, in 4. երկսիւն, բոլորագիր, կազմած, գրել է մի ոմն Յակոբ յամի եւթն հարիւրերորդի քառասներորդի վեցերորդի թվականի Հայոց ի վանանդեան գաւառս, ի գիւղս որ Գողխ կոչիւր, մերձ ի մայրաքաղաքն Կարս: Նախ Խաթլուբէկ և Թիրքիշ եղբայրները և ապա՝ Ապրեյուս և Խերխաթուն կողակիցները առացել են այս աւետարանը:

6. Աւետարան. թղթեայ, in 32. երկսիւն, բոլորագիր, չորս աւետարանիչների գունաւոր պատկերներով, գրուած ՉՀ թուին. վերջին յիշատակարանը քերած է և Պաւղոս վրդպետի անունը գրած:

7. Աւետարան. in 4. Թղթեայ, երկսիւն, բոլորագիր, կազմած. գրուած է ՉՀԶ թուին, Աստուածատուր քահանայի ձեռքով, տեղը յիշուած չէ։

8. Աւետարան. Թղթեայ, in 2. երկսիւն, բոլորագիր, կազմած, գրել է Թումա արճիշեցին։ «Ի յերկրիս Գողթան, ի յանապատիս որոյ անուն Կոպատափ կոչի, որ է յանդիման գեղին Բստոյ ի յայսմ ամի որում արեւելից աշխարհս առանց թագաւորի եկաց ամ մի։ Թանզի երեք թագաւորք փոխեցաւ և մի ի նոցանէ ժամանակ ոչ արար։ Առաջինն անչափ բարի էր քրիստոնէից և նա հաւատայր զՔս. Ած. իսկ երկրորդն պիղծ և անիծեալ որ անունով Ալի փաշախ կոչի նման էր առաջին կռապաշտիցն, յորոյ բազում հալածանս ի վերայ քրիստոնէից և զեկեղեցիսն քակեաց և զխաչերն խորտակեաց և շատ չար արար Քսի հաւատացելոցս, բայց յետոյ Ած. մատնեաց զնա ի սուր սուսերի և չարամահ արար։ Արդ եղբարք այս ամէն որ եղև յայսմ ժամանակի վասն մեղաց մերոց եղև։ Արդ գրեցաւ սա ի թուականիս հայոց ՉՁԵ։

ՉՁԵ. Թվին Ազարիա արքեպիսկոպոսը վերստին կազմել է տուել։ Նոյնը արել է ՌԶ թուին Կախիկ եպիսկոպոսը։

9. Աւետարան. Թղթեայ. քառածալ. երկսիւն. բոլորագիր. կազմած. 12 պատկերներով. գրել է Կարապետ կրօնաւորը հայոց ՊԷ Թ. և տուել է Թանկխաթուն տիկինը։

10.Աւետարան. Թղթեայ in 32. կազմած. երկսիւն. բոլորագիր, 4 աւետարանիչների պատկերով։ Գրուած է ձեռամբ Եղիա աբեղայի՝ աշխարհաւ յԱղվանից և տեղեաւ Դիզակեցի և գեղաւ Հատրուդեցի։ «Գրեցաւ սբ մատեանս ի յանապատիս որ կոչի Ճգնաւորի քար. ընդ հովանեաւ սբ. ածածնիս, որ է մօտ ի քաղաքս Եղեգիս. ի թվիս հայոց ՊՀԷ։

11.Աւետարան. մագաղաթեայ. ութածալ, երկսիւն, բոլորագիր։ Չորս աւետարանիչների գունաւոր նկարներով և ծաղկագրերով զարդարուած, արծաթապատ կազմով։ Ցիշատակարանում պատուած է.

Եւ արդ գրեցաւ սբ. աւետարանս ի թվին Հայոց Չ. և ԻԶ. ամի ի ձորս Աշոտա և ի վանս Ցանկլինեաց, ընդ հովանեաւ սբ. Լուսաւորչին և սբ. Վարդի հաւր գերեզմանիս տես տաճարիս և աքանչելագործ սբ. Նշխարացս, ձեռամբ մեղսամած և անարժան գրչի Զաքարիաի, ի թագաւորութեան Հասան պարոնի որ առ ու գերի արաւ զաշխարհն Տփխեա Կ. Ռ. մարդ. Լ. Ռ. ի սուրն անցուցին. Լ. Ռ. գերի. վայ ինձ հազար բերան։ Ի հայրապետութեան Տէր Սարգսի . . .

Հետեւեալ երեսի վրայ կայ այս.

Արդ ես Զաւարս, որդիքն իմ Մկրտիչն, Թաւաքեալն, Փա-

*նոսն, գուստրն իմ Զրահնուպարն, ես Զաւարս և իմ կողակիցն, որ ավագ զմեր Ջաղցին փայլն տէր պրն Սէթ իրեցուն վախմըն, յիշատակ ինձ և իմ որդոցն և իմ ծնողացն ես Հերապետս վկա, Խոցադեղս վկ յ. զարբին Խոցադեղս վկ. իւր փեսայ Պարալին վկ. Ած. վկ. ով էս աւետարանս կարդայ ողմիս. տայ յիշատակ ծնողացն, ով էս բանիս հակառակ լինի՝ մասն Յուդայի առցէ, ամէն. Հայր մեր։*

12. *Աւետարան*. Թղթեայ, ութածալ, բոլորագիր. 27 գունաւոր պատկերներով, կաշեկազմ. գրել է Մխիթար գրիչը «ի դառն և նեղ ժամանակի յորում նեղիմք ի յանօրինաց հարկապահանջութենէ, ես տասել ի ողութենէ հացի որ լինար ալիւրն գ չհի. գ փրյ. ծախեցին, ու զգլպաշն եկաւ ի վերայ Վանայ և բազում ոճիր գործեաց ու արիւնահեղութիւն արարին ի միմեանց. բայց զառաջիկայն Աստուած գիտէ, որ աշխարհս ամէն ի մէջ նեղութեանց և տառապանաց է, մինթէ մթան լուսարարն Քրիստոս լոյս առնէ ամենայն աշխարհի... Ի յերկիրն Մայեկայ ի գեօղն, որ կոչի Սեպ և ծաղկեցաւ ի մայրաքաղաքս Խիզան. ընդ հովանեաւ սբ. Է խորանացս՝ սբ. Յարութեան և սբ. Աստուածածնին, սբ. Յովանեսին և սբ. Գրիգորին, սբ. Ստեփանոսին, սբ. Սարգսին, և սբ. Մարտիրոսին. ի Թուականիս հայոց ի ՌՃԴ. ՙի հայրապետութեան տն տէր Մելքիսէթ կաթղկսի. Էջմիածնայ և ի միրոյս Աղթամարայ տէր Գրիգորիս կթղկոսի. ամենայն հայոց։

Դարձեալ կրկին անգամ յիշեսջիք զվերջի ստացող սբ աւետարանիս, և ոսկեզօծ բուրաստանիս Ագուլեցի պրն. Թուման, որ ի դառնալն յերկրէն հնդկաց ի Թէոդուպոլիս, հանդիպեալ էր աստանօր սրբոյ աւետարանիս զոր ուխտիւ ըստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց առ ի ընծայելոյ ի դուռն սբ. Թովմայի առաքելոյ վանիցն, որ գկնի գալոյն իւրոյ յԱգուլիս՝ եբեր և ընծայեաց ի թվին ՌՃՁԱ.

13. *Աւետարան*. մագաղաթեայ, ութածալ, երկսիւն, բոլորագիր, 4 աւետարանիչների պատկերներով և բազմաթիւ ծաղկանըկարներով զարդարուած։ Արծաթապատ կազմով։ Յայտնի չէ թէ ով է գրել, միայն ստացել է մղդսի էվազը և նուիրել «սուրբ Ածածին եկեղեցուն ի ձորն Ագուլեաց։ Ի ժամանակս թագաւորութեան Պարսից փոքր Շահաբազին, ի կաթողիկոսութեան Էջմիածնայ տեառն Յակոբին, ի յառաջնորդութեան Թումայի սբ. ուխտին զտէր Պետրոս արհ. եպիսկոպոսին և Մովսէս վարդապետին։ Գեղիս առաջնորդն Մանդվելն։ Թվ։ ՌՃ. և երրորդի ումն»։

14. *Աւետարան*. մագաղաթեայ, քառածալ, երկսիւն, բոլորագիր, կաշեկազմ և առաջին երեսին արծաթեայ խաչ։ Գրուած է

«Ձեռամբ նուաստ և յետին գրչի Աղամալ Ջուղայեցի մեղապարտ և ունայնագործ մեղաւորի, ի Թուաբերութեանս աքանազեան և աբէթական տումարի ՌՃ և Ժ. և ի գալստենէ կենարարին՝ ՌՕԿ: ի ստոյգ և ընտիր օրինակէ, եւ առաւել ի համարայլեցն, զի գաղափար սորին էր ի գրանէ կամակատար Ածածնի և Մօղնոյ սրբոյն Գէորգեա զօրաւարէ եկեղեցւոյ ի յաշխարհս վրաց ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ բարձրակառոյց Փաշիվանեցս որ յանուն սուրբ ածածնին և ամենափրկչի, ի հայրապետութեան սբ. էջմիածնի, տն. Յակովբին և առաջնորդութեան այսմ նահանգի, Սանահնոյ Սարգիս եպիս.-ին, և Հաղբատոյ Աւետիս եպիս.-ին: Եւ ի թագաւորութեան վրաց Բագրատունեան ցեղէ Շահնուազ խանին, և Մարիամ Դեսփոփալին:

Գրել է տուել աստուածասէր պարոն Բէժանն և ամուսինն իւր պրն. Լէլօնս (Հետաքրքրական է որ կնոջ համար եւ պարոն է գործածուած և այն էլ ոչ սխալմամբ, որովհետև մի քիչ ներքև կրկնում է. յիշեսջիք զպարոն Բէժանն և կողակիցն իւր մեծ Ջահանշի որդի պրն. Ղանդուրալու դուստր պրն. Լէլօն... և մայրն իւր զպրն. Թինաթին): Ապա այս աւետարանը իբր աւար տարել են և ՌՄԽԵ թուին Ագուլեցի Տուտենց Յարութիւնի որդի Մարտիրոս վաճառականը գնել է և նուիրել սբ. Թովմայի վանքին. յիշատակելով այս մասին՝ Աստապատցի Աբրահամ վարդապետը [1] շարունակում է.

«Առ մերովս ժամանակաւ որդին Մահմադ—Հասանայ՝ մեծազօր բռնաւորին՝ աղայ-Մամադ-խանն՝ ըստ յաջողելոյ բաղդին զօրացեալ յոյժ՝ յինքն գրաւեաց բովանդակ աշխարհն Պարսից և տիրեաց մասնաւորապէս նաև այլոց աշխարհաց, և թագաւորական շքով և անուամբ նստէր ի քաղաքն Թէհրան: Սա ի թուականիս մերում ՌՄԽ եկն անթիւ բազմութեամբ զօրաց ի Դաւրէժ քաղաք և ի Մարանդ գաւառ, և անտի հրաւիրակս առաքեալ՝ զԱտրպատական երկրի յինքն կոչեաց զամենայն նախարարս, այսինքն զխանս Հատրպէճանու, սկսեալ ի յՈրմոյ մինչև յԱրտա-

[1] Հրամանաւ գերապատիւ Հօր մերոյ և առաքելաշաւիղ Առաջնորդին Գողթան գաւառիս Տռն. Թօմայի խոնհմազարդ վարդապետին Դաստակեցւոյ որ է վեցերորդ եպիսկոպոս ի շինութենէն այսմ առաքելական Աթոռոյս, այր խորհրդական և հանճարեղ, խոնարհամիտ և հեզահամբոյր, քաղցրաբարոյ և բազմապարգև, զարդարեալ ձրիւք հոգւոյ և մարմնոյ և փառաւորեալ յամենեցունց: Որ կայ այժմ և կառավարէ զսոյն սբ. Աթոռս խոհական խորհրդով, թէպէտ և կրէ պէսպէս վիշտս և նեղութիւնս ի դառնութենէ և յաղքատութենէ ժամանակիս:

ւիլ, ընդ որս և զքաջ իշխողն Նախիջևանու՝ զԹեալպալի խանն՝ զորդին Հասան խանին։ Որք հնազանդութեամբ գնացին առ նա և եղեն նմա հարկատուք։ Եւ նորա մեծապէս պատուեալ զսոսա զամենեսին, դարձուց յիւրաքանչիւր գաւառս, առնլով պատանդս, այսինքն զաւակս ի նոցանէ, զոմանց կանայս և զոմանց որդիս և զեղբայրս։ Բայց Հերակլ բարեպաշտ արքայն վրաց և նախարարքն Շուշի բերդին և Երևանայ՝ ոչ կամեցան մտանել ընդ լծով հնազանդութեան նորա։ Եւ նա ի նմին ամի դարձ արարեալ՝ գնաց ի քաղաքն իւր ի Թէհրան։ Եւ զկնի երկուց ամաց առաքեաց զՍուլէյման խանն, որոյ եկեալ նստաւ ի Դաւրէժ քաղաքի և կոչեաց առ ինքն զԹեալպալի խանն Նախջուանայ, կասկածեալ ի նմանէ վասն քաջութեան նորին, զի մի ապստամբեսցի։ Զոր առեալ ընդ իւր տարաւ ի Թէհրան առ աղա-Մամատ-խանն։ Որ և մնաց անդէն առ նմին ամս երկու և ի բազում տեղիս՝ բազում քաջագործութիւնս և յաղթութիւնս արարեալ՝ պատուեցաւ և փառաւորեցաւ յոյժ ի նմանէ, և ստացաւ անուն քաջութեան. վասն զի նա ինքն Թեալպալա խանն էր իրաւասէր և արդարադատ, խնամող Հայկազեանս ազգի, սիրող եկեղեցեաց և վանօրէից, միանգամայն և քաջահմուտ և յաջողակ ի զինուորական իրողութիւնս, և առիւծանման հզօր ի պատերազմի, որ անձամբ անձին՝ մղեալ է զբազում պատերազմունս յաղթական գտեալ յամենայնի օգնականութեամբ վերին զօրութեան։ Քանզի ի թուականութեան մերում ՌՄԼԸ. նախարարն Ահարա, այն է Ղարադաղի Մուստաֆայ խանն՝ եկն բազում զօրօք ի վերայ Գողթան գաւառիս, և կողոպտեալ յաւարի էառ զամենայն ինչս մեծի առաքելական Աթոռոյս, և եկեալ Թեալպալի խանին՝ խորտակեաց զօրութիւն նորա՝ մեծաւ քաջութեամբ և փախոյց զնա ամօթով յետս։ Եւ զկնի երկուց ամաց՝ Իպրահիմ խանն Շուշի բերդին՝ ժողովեալ զլեռնականս, որք լեկզի կոչին, եկն ի վերայ սորա ծանր զօրօք, և սա ամրացաւ ի բերդն իւր Նախջուան։ Եւ յետ քանի մի աւուրց օգնութիւն գտեալ ի յԵրեւանայ և ի Խոյոյ, եւ ի յամրոցէն և եհար չարաչար զօրս նորա և ցան և ցիր կացուցեալ՝ փախստական արար։ Եւ այլ բազում մանաւոր քաջութիւնս գործեաց, զորոց չէ տեղւոյս գրել մի ըստ միոջէ։ Զոր և ի թուականութեան ՌՄԽԳ. առեալ ընդ իւր Աղա-Մամադ-խանին՝ գնաց ի վերայ Նիւթալի խանին՝ որն նստէր ի Քիրման քաղաքի։ Զոր յետ պաշարելոյն ամիս ութ, էառ մեծաւ պատերազմաւ. զբազումս ի բնակչացն սրոյ ճարակ ետ և զնոյն ինքն՝ զՆիւթալի խանն՝ ձերբակալ արարեալ, կուրացոյց զաչս նորա, որ զկնի սակաւուց իւրովի դեղակուր եղեալ՝ վճարեցաւ ի կենաց։ Յետ որոյ առաւել ևս զօրացեալ Աղա-Մամադ-

խանին, հաստատեցաւ յիշխանութեան իւրում։ Եւ ի թուականիս մերում ՌՄԽԴ. եկն միւս անգամ անթիւ բազմութեամբ զօրաց պարսից ի յԱտրպատական երկիր, բերելով ընդ իւր և զԹեալպալա-խանն։ Եւ անցեալ ընդ Երասխ գետ, դիմեաց ի յԱրցախ աշխարհն, որ ի Ղարաբաղ, և պատեաց զամուրն և զընդարձակ բերդն Շուշի։ Եւ անտի ապատակ սփռեալ յաւարի էառ զգաւառն Արանդայ՝ զՋաւանդուր և զԳիւնէյուզ և գերեաց զբազումս։ Եւ զեղբայրն իւր զԱլի-Ղուլի խանն առաքեաց երկոտասան հազարօք առ Նախջուանաւ ի վերայ Երևանայ, որոյ եկեալ բնակեցաւ հանդէպ բերդին, ուր եկն ընդ առաջ նորա աստուածապաշտն Հայրապետն մեր տէր Ղուկաս երջանիկ կաթուղիկոսն սուրբ աթոռոյն Էջմիածնի, իբրև քաջ հովիւ՝ դնելով զանձն իւր ի վերայ հօտին։ Եւ մատոյց նմա բազում ընծայս՝ ըստ արժանւոյն ջանահնար լինելով յամենայնի, զերծ պահել զսուրբ աթոռն ի գլխաւոր վնասուց, և առ այս ծախեաց անդէն առ դրան նորա չափազանց դրամս։ Եւ ինքն սրբազան Հայրապետն՝ մեծապէս պատուեալ՝ փառաւորեցաւ և խիլայեցաւ ի նմանէ։ Իսկ յետ աւուրց ինչ զօրավարն պարսից մեկնեցաւ անտի, առեալ պատանդս ի Մահմադ խանէն Երևանայ՝ զկին և զեղբայրն նորին, և գնաց դէպ ի Վրաստան։ Քանզի աղա-Մահմադ-խանն (որ նստէրն ի Շուշի բերդին) իբրև ետես՝ եթէ պաշարումն քաղաքի երկարի յոյժ և դժուարին է առնուլն, եթող զայն և խաղաց ամենայն հեթանոսական բազմութեամբ յաշխարհն վրաց, և փախուցեալ զարքայն նոցա զբարեպաշտ Հերակլ, էառ զմայրաքաղաքն Տփխիս՝ որ է Թիֆլիզ. քանդեալ աւերեաց զշինուածս քաղաքին, կոտորեաց զբազումս ի բերան սրոյ. և զանհամար քրիստոնեայս՝ մանաւանդ զհայս ի գերութիւն վարեաց՝ ընդ ծովացեալ մեղաց մերոց. և յաւարի էառ զամենայն ինչս և ստացուածս նոցա և զանօթ եկեղեցեացն։ Մանաւանդ զմայր Աթոռոյն մերոյ Սրբոյն Էջմիածնի՝ մեծագին զգեստս, և զմարգարտաշար և զականակուռ թագս և սաղաւարտս, և զոսկեղէն և զարծաթեղէն ծանրագին սնօթս, որք անդէն ի նմին քաղաքի ի պահեստի էին, ընդ նոսին և զբազում պատուական գրեանս։ Եւ յետ աւուրց, ընդ կրունկն դարձաւ անտի աղա-Մահմադ-խանն և եկն ի սահմանս Գանձակայ, որ է Գեանջայ։ Եւ զի Թեալպալի խանն Նախջուանու՝ փեսայ էր Մահմադ խանին Երևանայ, զսա առաքեաց անտի առ Մահմադ-խանն հաւանեցուցանել զնա և ածել առ ինքն։ Որոյ եկեալ Երևան միամտեցոյց զաներն իւր, երաշխաւոր դնելով զինքն վասն նորա առաջի Աղա-Մահմադ-խանին, և առեալ ընդ իւր՝ տարաւ առ նա։ Զոր բազում սիրով ընկալեալ Աղա-Մահմատ-խանն, պատուեաց, իբրև ազգա-

կան իւր՝ քանզի և իշխողն Երևանայ բուն ազգաւ պարսիկ էր, որոյ ցեղն յատուկ անուամբ Ղաճար կոչի։ Եւ յետ սակաւուց չուեաց անտի Աղայ-Մահմադ-խանն և եկն ի յարդաւանդահող և ի յընդարձակ դաշտն Մուղան, և բանակ հարեալ՝ նստաւ անդ։ Եւ ի նմին անդուոջ խիլայեաց զՄահմադ-խանն Երևանայ և մեծապէս փառաւորեաց, կացուցեալ զնա մարզպան, այսինքն է պէկլարբակի, և դարձոյց ի տեղի իւր։ Եւ քանզի անդր քան զԿուր գետն եղեալ նախարարք, այսինքն Դարբանդայ, և Բագուայ, և Նուխուայ, և այլոց տեղեաց եւ խանքն հնազանդեալ էին Աղայ-Մահմադ-խանին և Թուշակ տային զօրաց նորա, և միայն Շամախի էր ի մէջի անդ ապըստամբ։ Վասն որոյ առաքեաց Աղայ-Մահմադ-խանն զքաջ զօրավարն իւր Բեալպալի խանն բազում զօրօք ի վերայ Շամախւոյ։ Որոյ գնացեալ անդր, յապականութիւն դարձոյց զերկիրն, և պատեալ պաշարեաց զամրոցն, ուր էր ամրացեալ՝ ինքն Նախարարն Շամախւոյ։ Բայց զկնի սակաւուց՝ ի տեղի Բեալպալի խանին՝ առաքեաց Աղայ-Մահմադ-խանն զայլ ոմն զօրավար և զնա եբեր առ ինքն և մեծապէս պատուեալ՝ փառաւորեաց, և դարձոյց խիլայիւ ի քաղաքն իւր Նախջուան։ Եւ ինքն Աղայ-Մահմադ-խանն բանակեալ է առ այժմ ի Մուղան դաշտին, ունի ձմերել անդէն, և յաւուրս գարնան գնալ վերստին ի վերայ Շուշի բերդին. և առ նոյն ժամանակաւ՝ թէ զինչ իրագործութիւնք հանդերձեալ են լինել Ածոյ. է գիտել, որ է Տէրն ժամանակաց...»։

15. Աւետարան. թղթեայ. փոքրադիր, երկսիւն, բոլորագիր կազմած. գրուած է ՌՃԽԹ թուին ի գիւղն Կնդանց։

16. Աւետարան. մագաղաթեայ. քառածալ. երկսիւն. բոլորագիր. չորս աւետարանիչների պատկերներով. թէ պատկերները և թէ գիրը գեղեցիկ չեն։ Յիշատակարանը թափուած է։

17. Աւետարան. թղթեայ, ութածալ. երկսիւն. բոլորագիր. կազմած. առանց յիշատակարանի։

18. Պօղոսի եւ Եսայի Մարգարէից Թղթերը. Թղթեայ. երկծալ. երկսիւն, բոլորագիր, կազմած, 767 թուին գրուած յիշատակարանում ասուած է.

Արդ յամս վերադիտութեան երջանիկ հոգևոր տն Զաքարեայի հայոց գլխապետի և յառաջնորդութեան սբ. ուխտիս հոգէկիր վեհիմաստ հովուապետի տն Պետրոսի և նորին Յովասափի գրեցաւ տառս ածային ընդ հովանեաւ սրբոյ Նշանիս Վարագայ յոյժ տառապանաւք և նեղութեամբ. ձեռամբ մեղապարտ և անարժան կրի Յակոբի ի թուիս հայկազնեան տումարիս. Եւթն հարիւրորդի վաթսներորդի եւթն երորդի. յայսմ ամի որում ծփի ամենայն երամք Քսափառաց ի չնչմանէ նետողական ազգին

Ղարբանդադուլն դանի. փչելով ի նա սատանայ հարկ հրամայեաց առնուլ յամենայն քրիստոնէից վասն հաւատոցն որ ի Քս. և նշան կապոյտ հրամայեաց կարել ի վերայ Թիկանց հաւատացելոցս. եւ աւելի կրաւնաւորացս հարկ առնուլն առանց դանի հրամանին. յետոյ երիցս երանեալ երջանիկ հայրապետն Զաքարիայ հետ դանին գնացեալ մինչև ի Բաբելոն ած մի ողջոյն և աւլեխ առեալ ի նմանէ. զկրաւնաւորքս և զքահանայսն ազատեաց ի հարկապահանջութենէ, այլ յաշխարհականացն և ի տղայոցն առնուլն. որոնց զարդիս խաղաղական կենաւք շնորհեսցէ նմայ տր և խրոցն ամենայն և գեշիցն յիշատակ աւրհնութեամբ ի Քս. Եւ յայսմ ամի զարունն առին զհարկն և աշունն դանն մեռաւ. և այլ եկին ոմն անուն ալլադու, Սինթամուր և Հասան Թամուր ԲԳԾ մարդով և կրկին հարկ առին յոյժ անչափ և ոչ ոք ընդդիմացաւ նոցա և վանօրայքս որ ազատ էին զոր ըմբռնեցին աննարին տանջանաւք չարչարեցին և անչափ տկ. առին. մանաւանդ սբ. ուխտս մատնեաւ ի ձեռս նոցա յանկարծակի զաղտաբար եկին յերեկունն և ամենեքեան փախեաք և զորս ըմբռնեցին անհնարին տանջեցին որ ոչ կարեմք պատմել և քաղաքի տաճկնին բաղում ինչք տուին և հազիւ Թափեցին ի ձեռաց նոցա. և այլքս, որ փախեաք այլ չիշխեցաք դառնալ ի վանքս, զի հանապազ զաւր և զգիշեր ի խնդիր ելանեին մեզ. և մեր աւհաբեկեալք ի նոցանէ ահիւ և դողութեամբ կէաք զցայգ և զցերեկ ի սբ. լերինդ ի խորշս և ի ծերպս վիմաց և նոքա ամեն աւր գային և զեկեղեաց դռներն և զխցերոյն զամէն բացին և յաւարի տարան զինչ որ գտան. բայց սուրբ Յովհաննէսս դուռն միայն մնաց վասն զի ճգնազգեաց փակակալս մեր ղազար կր. զան և զերկիւղ ի բաց եդեալ և յեկեղեցին կացեալ բաղում աւուրս և սբ նշանն պահեաց զնոսա. և ափշեցոյց զաւրսս այլազգեացն որ ոչ մաքառեցան ընդ դուռն երկաթի: Եւ այլ բաղում վիշտ և նեղութիւն և տառապանք կրեցաք յամենայն դիմաց յամարանի և ի ձմերանի փախստեայ լինելով և բացաւթեայ կելով ի սբ լերինդ և այլ դժնդակ նեղութիւն որ ոչ կարեմք պատմել. և մեք ամէն կրաւնաւորքս կամ աւելի երից երանեալ առաջնորդաւս մերով տր Պե. որ ոչ եթող վարատել մի ոք ի մէնջ, որոյ զարդիս խաղաղական կենաւք շնորհեսցէ սոցա տր. ած. միաբան ուխտիս և զեկլիցն յիշատակաւ աւրհնութեամբ ի Քս. Եւ մեք բաղում ժամանակս զայս նեղութիւնս կրելով և առաւել քան զայնս և առ սէր սբ նշանիս և ի սա ապաւինելով ի սբ ուխտէս ոչ հեռացաք. քաղաքն և երկիրս ամեն այսր անտր փախեան լուր մարդատատան մնաց և մեք ի տեղս հաստատուն կացաք վս. սբ. նշանի սիրոյս:

19. *Գործք առաքելոց*.—*Թղթեայ* in 32. *նոտրագիր, միասին, կազմած։ Վերջում Արիստոտէլի Ցաղագս առաքինութեան (առ) Աղէքսանդր Թագաւոր։ Յիշատակարան չունի։ Բաց թերթերում զանազան հիւանդութեանց դեղեր են գրուած։*

20. *Տարական. Թղթեայ,* in 32. *միասին. բոլորագիր, կազմած. առանց յիշատակարանի. կողքի վրայ գրուած է. Այս շարակնոցս ես ցգնեցի Մարտիրոս տան մաղջիյ գնեցի ի մայրաքաղաքն Համիթ։ Սրա տակը, ուրիշ տառերով. Ես առացի տր ողորմեա Թվ. ՌՋԷ։*

21. *Քաղուած շարականց. մագաղաթեայ,* in 32, *բոլորագիր, միասին, կազմած ձեռամբ Միքայէլի, ի Թվ. ՌՃԼԳ.*

22. *Ճաշու գիրք. մեծագիր, երկսիւն, բոլորագիր, գրուած Սարգիս կրօնաւորի ձեռքով ՉՁԹ թուին ի վանս Աղաւնից ի հայրապետութեան Ստեփաննոսի, որ և ազատեաց զազգս քահանայից ի հարկէ հալածչեաց և նոյն ինքն տեսանէ զազատութիւն իւր ի թագաւորութեան զոր ոչ գոյ. այլ բարձեալ է թագաւորութիւն, քանզի իշխանք են խառնվարարք և տատանեալք ի վերայ միմեանց աղմկեալք. զոր ոչ կարէ բերան պատմել զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց ի հեծելեաց, զորս երեսուն հազար մարդադէմ զազանաց ի վերայ երկրիս մերում յարձակեալք, զնետս սրեալ և զաղեղն լարեալ և զթիւրս իւրեանց թափեալ յարեան ի վերայ երկրիս մերում և ով կարէ պատմել զանաւրէնութիւնս նոցա զոր արարին և գործեցին. քանզի բազում գաւառս գրեցին և աւերելով կործանեցին և զինչս արդիւնաց զամենայնն յափշտակեցին և զամենեսեան զքրիստոնեայք կողոպուտ արարին. մերկ և բոկ և ոչ թողին և ոչ մի ինչ ի վերայ անձանց քրիստոնէից. այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան զոչխարաց և զեզանց, զկովուց և զցլուց, զէշուց և զերիվարաց և զհանդերձս ի յանձնէ մերկացուցին և մերկս արարին ի տեսիլս խայտառակաց. քանզի որ աչք բաւ է տեսանել զաղխողորմ տարակուսանաց. և կամ որ անձն բաւ էր տեսանել և տանել այնմ չարչարանաց որ յերէկ տան տանուտէր և ամենայն իրաւք լի և այսաւր բեկեալ սրտիւ և տրտմեալ և մերկ ի վերայ մոխրոյ նստեալ. քանզի այնպէս լի էր երկիրս ամենայն բարութեամբ և յանկարծակի այնպէս արարին որ շունք ի սովոյ սատակէին. քանզի վխտս ամբարաց հացից հանէին և այնպէս բարկութեամբ և սրտմտութեամբ ի վերայ բոլոր երկրիս արձակեցան, որ և հարիւր անձն սրով խողխողեալ նահատակեցան, որև ծաղկողի սորա մայրն նետով խողխողեալ փոխեցաւ ի Քս.*

23. *Ճաշու գիրք, մեծագիր, երկսիւն, բոլորագիր, յիշա-*

տակարանը թափուած է։ Շատ գեղեցիկ ծաղկագրեր և մի գու-նաւոր պատկեր ունի։

24. *Ճաշու գիրք*—թղթեայ, մեծագիր, երկսիւն, բոլորա-գիր, վերջի թերթը պատռուած է և կազմահան եղած. գրուած է ՌՃԻԸ թվին, ի հայրապետութեան Յակոբ կաթուղիկոսի, Ղա-փանի երկրի ի գաւառէն Մայրու, Աւկկիս գիւղի միջանի բնա-կիչների խնդրանօք, որոնց անունները յիշատակուած են, բայց թերթը պատառուած է, այնպէս որ գրողի անունն էլ յայտնի չէ։

25. *Պատարագամատոյց*. մագաղաթեայ, քառածալ. երկսիւն, բոլորագիր, միջանի պատկերներով, գրել է Եփրեմ քահանան ՌՃԾԴ թուին, ի հայրապետութեան տռ. Նահապետի, որ յայժմ ամի փոխեցաւ առ Քս. և եպիսկոպոսին մերոյ Ստաթէի, որ առաջնոյ, ամ. Յովասափի- ածաբան վրդպի և քաջ հռետորի ի դուռն սբ Ստեփաննոսի Նախավկային, որ է հովանի և պահապան գեղջիս մերոյ Օղուերձու.

26. *Խորհրդատետր*, թղթեայ in 8. երկսիւն, բոլորագիր, կազմած, առանց յիշատակարանի։

27. *Տանական*. թղթեայ, մեծագիր, երկսիւն, բոլորագիր, կազմած. գրուած է մի ոմն հարապետի ձեռքով Աղթամարի կղզում ՊԼԸ թուին. Ստեփաննոս միայնակեացի խնդրով։

28. *Քարոզ գիրք*։ Քերած մագաղաթ, in 8. միասիւն. նոտ-րագիր. կազմած, յիշ. չունի։ Շապկի Բ. երեսում գրուած է. Ես հանգուցեալ Երեմիա պետին եղբօրորդի Զաքարիայս առի զայս քարոզ գիրքս արդեամբ իմով յումեմնէ քահանայէ ի վայելումն անձին իմոյ և հարազատ եղբարց ի ՌՄԼԸ. ի սեպ. ԺԵ. ի սբ Աթոռս Էջմիածնի։ Էջմիածինը ջնջուած և գրուած է Թումի։

29. *Քարոզ գիրք*. թղթեայ, in 16. երկսիւն. նոտրագիր. առանց յիշատակարանի։

30. *Մաշտոց*. թղթեայ, երկսիւն, բոլորագիր, in 16, կազ-մած։ Գրեցաւ ի թուականութեանս մեր ՊՂԲ. ամին ձեռամբ... Իգնատիոսի... ի վանս Ռուխայրս ձայնելոյ որ այժմ Հեռաբարձ կոչի. ընդ հովանեաւ սբ ածածնի տաճարիս և սբ Ստեփաննոսիս և սբ Սարգսի զօրեղ վկայիս... ի յառաջնորդութեան սբ ուխտիս Յ... վրդապետիս հրպտի. գրեցաւ ի յառջին ամին հայրապետու-թեան Նորաթոռ Էջմիածնի և Նոր ընծայ կաթողիկոսիս տր Կի-րակոսին։

Կազմեցաւ Մաշտոցս ի թվին ՋԽԲ. ի վանքս Ագուլեաց ի հայրապետութեան Ազարիին, ձեռամբ Յովսէփ մեղաւէր աբե-ղայիս։

31. *Մաշտոց*. թղթեայ, երկսիւն. բոլորագիր, in 16.

գրել է Ղազար Գողթնացին «ի ժամանակին որում Շահաբաս եկաւ և զԹարվեզ առեց և զաշխարհս ի գերութենէ ազատեց. ած. խէրն շատ շատ դաւլաթ տա. թվ. ՌՇԲ։

32. *Փոքր Մաշտոց*. Բամբակեայ թղթի վրայ, in 16. միասիւն, բոլորագիր։ Առանց յիշատակարանի։

33. *Յայսմաւուրք*. in 2. մագաղաթեայ, երկսիւն, բոլորագիր, կաշեկազմ. շատ գեղեցիկ ծաղկագրերով զարդարուած։ Գրել է Կոստանդ քահանան և դաշտեցի Մարտիրոսը յիշատակ է տուել ս. Թովմայի վանքին 1134 թ. Հայոց, Յոհան Գողթնեցու վանահայրութեան ժամանակ։

34. *Յայսմաւուրք*, թղթեայ, մեծագիր, երկսիւն, բոլորագիր, կաշեկազմ։ Գրել է Քրիստոսատուր դպիրը ի յամի թուաբերութեան հայկազեան սեռի ՌՃԽ թւին... ի մեծ և ի հռչակաւոր մայրաքաղաքս Քափայ, ընդ հովանեաւ սբ Օքսենդ բարձրաշէն տաճարին, ի խնդրոյ մահտեսի Հախնազարին։

Վերջում. Յամի նկրմարմնութեան Տն 1789 և ի թուականութեան հայոց ՌՄԼԸ մեծահռչակ և գերահրաշ վանքն սրբազնասուրբ Առաքելոյն Թոմայի որ է կառուցեալ ի յերկրին Նախիջեւանու, յայսմ ամի ապաստակեցաւ ի չար և անօրէն տաճկացն զօրաց և զամ զինչս սրբոյ վանիցն աւար առեալ և տարեալ ի յերկիրն Երեւանու. վաճառեալ էին անդ զամենայն եկեղեցական զարդս և կամ զայլ ինչս սրբոյ վանիցն. իսկ սոցա լուեալ զայս համբաւ բօթալի կարի ժոյժ ցաւեցեալ էին վասն զի է տուն հոգոց պայծառ իշխանացուն իշխան Նախինեացն իւրեանց, որք իշխեալ էին երկրիս յայսմիկ. իշխանք գոլով ժամանակաւ և կացեալ էին ընդ հովանեաւ սրբոյ վանիցս. վոյ մեծաւ փափագմամբ որոնեալք էին յուղելով թէ գուցէ գտանիցեն զարդս սրբոց հրաշակերտի վանիցս և առեալ զայն վերադարձուցին ի սբ վանս, բայց ոչ են գտեալ զինչ ի սպասու սրբոյ վանիցս բացի յայս յայսմաւուր գրքէս, որ զայս ես զոմն Թիֆլիսեցի առեալ և տարեալ էր ի Թիֆլիզ, որոց զայս տեսեալ հալալ արդեանց իւրեանց գնեալ, վերստին նորոգեցուցեալ ի տուն յիշատակ սրբոյ վանիցս Թոմայի սրբազնասուրբ Առաքելոյն և խնդրեմ ի պատուելութենէ ձերմէ որք հանդիպիք ընթերցման սորայն մատենիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զնուաստեցի նաև զհալալեցի կոչեցեալ զամատունեան Մահտեսի Սարգիսն և այլն։

35. *Յայսմաւուրք*. մեծագիր, երկսիւն, բոլորագիր, կազմած։ Յիշատակարանի վերջի թերթը ընկած է, գրել է Յակոբ անուն մինը Գողթնի ս. Թովմայի վանահայր Խաչատուր եպիսկոպոսի խնդրով, թուականը յայտնի չէ։

36. *Հարանց վարք*. բամբակեայ Թղթէ, in 4. երկսիւն, բոլորագիր, կազմած, 1272 երես։ Յիշատակարան չունի։ Շապկի վրայ գրուած է. ի Թուին ՌՃԾԴ. և յամսեանն մայիսի Ժ և Ե որ է օրն Գ շբթ այնպէս սէլ եկաւ որ մինչև ԺԸ արիւն արեց, տուն քանդեց. Ճ տարէն ծառերն տակովն հանեց, վս մեր ծովացեալ մեղացն։

37. *Գանձատետր*. Թղթեայ, in 16, բոլորագիր, միասիւն, կազմած. գրուած է Երեմիա սարկաւագի ձեռքով։ Թուականը և տեղը յայտնի չեն. ՌԼԲ Թուին կազմել է Յովհաննէս եպիսկոպոսը յերկիրս Գանձոյ ի վանս Խաչլաբակոյ։

38. *Համառօտումն աստուածաբանութեան*. Թղթեայ, in 16. միասիւն, նօտրագիր, կազմած. յիշատ. չունի։

39. *Հարցման գիրք*. in 32. մագաղաթ. նօտրագիր, միասիւն կազմած, առանց յիշատակարանի։

40. *Վարդան վարդապետի ածաբանական մեկնութիւններ. և «Մեկնութիւն տումարի Անդրէի Յեզեկիէլէ մեկնութենէ։—Նշանք բնութեան։*—Գերուած մագաղաթի վրայ՝ in 16. միասիւն, բոլորագիր. կազմած։ Յիշատակարանում՝ գրեցաւ ածայխաւս և իմաստայսերաց գիրքս այս ի Թվ. ՊԺԴ. գրողի անունը եղծել են։ Նորից նորոգել է տուել Պետրոս վարդապետը Բարսեղ քահանային «ի սբ և ի գերահռչակ Դադէի վանս» ի Թվիս ՌՃԼ և երեքին։

41. *«Աշխարհալուր եւ տիեզերալոյս վարդապետին Վարդանայ պարզ եւ լուսաւոր խորհրդով եւ դժուարագիտ լուծմամբ եւ բանիւ մեկնութիւն արարեալ Սաղմոսիս*։ Թղթէ. in 16. բոլորագիր. միասիւն. կազմած։ Առանց յիշատակարանի։

42. *Սարգիս գիրք*. մագաղաթեայ, երկծալ, երկսիւն, բոլորագիր, կազմած. գրել է Աստմ քահանան «Յերկիրս Ըռըշտունեաց ի գեօղս որ կոչի Շատուան, ընդ հովանեաւ սբ ածածնին և սբոյն Ստեփաննոսի նախավկային և սբ ոսկիանց քհնայիցն և սբ Գէորգայ զաւրավարին։ Յամի յորում էր Թիւն հայկազեան Ջ և ԼԸ. յառաջնորդութեան տռ Զաքարիայի նորընծայ կաթուղիկոսի։ Այլ և յաշխարհակալութեան Ադուլթղանին։ Ի դառն և ի վշտաբեր ժամանակի յորում միահամուռ ամենեքեան ընթացան դհետ ուղինչին և պատնեն զոչինչ և դարձան ի մոլար աւրէնսն մահմետի որ արձակ ճանապարհաւն տանի ի կորուստ և բռնադատեն զամենեսեան զմանկունս եկեղեցւոյ դառնալ ի մնոտի և ի պատիր յոյսն իւրեանց։ Հալածեն, նեղեն և տառապեցուցանեն զոմանց զինչսն յափշտակելով, զոմն տանջելով, զոմն հայհոյելով և ոչ այսու վերջացան՝ այլ և զբազում եկեղեցիս ապակե-

ցին և գլխաչ և գաւառական նախատեցին։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։

Սկզբում կայ Սարգիս վարդապետի կենսագրութիւնը։

43. Գրիգորի աշակերտի եռամեծի եւ տիեզերալոյս վրդ-պետի Յոհաննու Որոտնեցւոյ հաւաքեալ քաղուածոյ. մեկնութիւն սբ Աւետարանի Մատթէոսի։ Թղթէ, in 16, բոլորագիր, երկսիւն, կազմած։ Գրուած է ի Թուականիս հայոց ութ հարիւր և երկերիւրոց. յիսուն և երկուսս անցեալ ոչ անջատ այլ միշտ իրերուց, գառն և վերջացեալ է ժամս սուր առ սուր բաղում խողխողոց։ Սատցել է Ջուղայեցի Ղազար վաճառականն։

44. Յոհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպօլսի եպիսկոպոսապետի արարեալ մեկնութիւն Աւետարանին որ ըստ Յովհաննու։ Թղթեայ, in 2. երկսիւն, բոլորագիր, կազմած, գրել է ոմն Ստեփաննոս, էր թիւն խսկզբանցն արարչութեանց ի մեզ ՑՇԼԶ ամ. իսկ ի կենարար զալստենէն ՌՃԺԲ. ամ. իսկ ի Թորգոմայն Պարոյից սկսեալ մերս թիւ ըստ ամաց ՇԿԶ. իսկ ըստ աւարտման առաջին շրջանին ՇԼԲ. նորս սկսեալ շար ամաց ԼԴ. ամ։

Սրան հետեւում է Յոհան Ոսկեբերանի մանրամասն կենսագրութիւնը, և նրա մարմնի փոխադրութեան պատմութիւնը, որ գրուած է Աբրահամ գրչի ձեռքով։ Սրա վերջում ասուած է.

Յամի հնգհարիւրորդի թուաբերութեանս հայոց թարգմանեցաւ պատմութիւն վարուց և ճգնութեան երից երանեալ հայրապետին Յովհաննու Ոսկեբերանին ի յունականէն ի մերս, ի ձեռն սրբազան կաթուղիկոսին հայոց տէր Գրիգորիսի։

45. Սիմէօնի Վրացի Ջուղայեցւոյ արարեալ քերականութիւն ըստ լեզուի մերում հայկազնց. in 16. մագաղաթեայ, նոտրագիր, յիշատակարանը պատրած է։ Հատարակ կաշեկազմ, վերջում՝ Տեառն Ներսէսի կաթուղիկոսի ասացեալ հանելուկ ի սուրբ գրոց։

46. Գրիգորի Նարեկացւոյ Գիրք աղօթից, մագաղաթեայ, ութածալ, երկսիւն, բոլորագիր, վերջում Գր. Նարեկացու կենսագրութիւնը։ Գրուած է «ամաց թվակի ազգանազեան ազնիս աբեթական ուումարի երկեակ քարից հարիւրոց և տասանց վեցից, և թուոց վեցից յաշխարհս հոնաց որ կոչի Ղրիմ ի հայրապետութեան Գրիգորի և մերոյ արքեպիսկոպոսին տր Կիւրեղին։ Ձեռամբ թարմատար և փուուն գրչի Քասուր պիտականուն կրաւնաւորի։ Ընդ հովանեաւ հռչակաւոր երկնահանգէտ և սբ ուխտիս որ կոչի Քեմճակի վանք յանուն կենսակիր մաւրն լուսոյ սբ ածածին։

47. Բառգիրք. քերած. մագաղաթեայ, in 16. նոտրագիր, կազմած, միասիւն։ Բառգիրք նախ այբուբենական կարգով և

ապա Աճաշնչի որոշ գլուխների մէջ պատահած դժուարին բառերի։ Գրուած է ատաղ սարկաւագ Ոհանէսի ձեռքով ընդ հովանեաւ ս. Թովմայի ի ժամանակս Թագաւորութեան պարսից Շահ Սուլթան Հուսէնին, և յառաջնորդութեան Նահանգիս Գողթան գաւառիս տն յոհաննու բազմաշխատ վրդպտի, որ նորոգեաց զսբ աթոռոյս եկեղեցին հանդերձ զանկակատանօք և այլ կիսակատարն պարսպիս ի Թվականութեանս արամեան ՌՃԾԵ։

48. Համայնագիտական բառարանի նման մի աշխատութիւն է, գլխաւորապէս օրինակները ս. գրքից վերցրած։ Մեծադիր է, երկսիւն, նոտրագիր, սկզբից պակասում է մօտ 72 երես, ամբողջ ա. տառը և հասնում է մինչև հ. տառը, ընդամէնը 264 երես։

49. Ժողովածու. քերած մագաղաթեայ, in 8. երկսիւն, բոլորագիր, կազմած, բովանդակութիւնն ու Թուականը յայտնւում է հետևեալից.—Գրեցի և հաստատեալ կառուցի ուժանդակութեան առեալ ի վերին զաւրութէնէն, ի դէմս քարտէնի ըստ խմուսս կարութե զբանս ածայնոյն սողոմոնի ածաին հոգով առ լցեալ ընդորում և զտառս առածից երկոտասան սրբոց մարգարէից որոց անուանքն գրեալ է ի դպրութիւն կենաց անեղծ պայմանաւ ընդ նոսին և յովբա արդարոյ և Դանիէլի Մարգարէի, ընդ նոսին շարաարեալ զաւրէն մաքրութե ուկոց ընդ պայծառութիւն ականց պատուականաց. կամ և հրաշազարդ տեսութեամբ նման արեգական ընդ երկոտասան աստեղաց կենդանակերպաց յերկինս յուսլոց հրամանաւ անեղին այ. որպէս նոքա զերկնային լուսաւորին զվայրս նոյնպէս և սոքա զստոր և կացելոց անձինս ի հրահանգս կրթութեան Սիոնի և ի զարդ պայծառութեան կաթուղիկէ սբ եկեղեցոյ. ի Թուականութեան հայկազեան տոհմիս տոմարիս. Գ. երորդի. Լ. երրորդի. Ես անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ Ստեփանոս անարժան չկրաւնաւոր... ի յանապատիս որ կոչի Սըխգաւու վանք, ընդ հովանեաւ սբ Աճածնիս, որ է հանդէպ Վարագայ ածարնակ լերինն ի խնդրոյ... կրօնաւորի Կարապետի յիշատակ իւր և ծնողաց իւրոց։

50. Ժողովածու. Թղթեայ է, in 32. միասիւն, նոտրագիր, սկզբում բառարան է, նախ 152 երես Աստուածաշնչի յիշատակուած գլուխներում պատահած դժուար հասկանալի բառերի, յետոյ այբուբենական կարգով, 300 երես։ Սրա վերջում գրուած է. Զմեղսամած Ազարիայ, փծուն գրչակս յիշել մաղթեմ ի տէր, Թվին ՌՃԸ ումն ծրեալ եղև

Սրանից յետոյ գալիս է. Սիմէօնի վարդապետի Ջուղացոյ արարեալ քերականութիւն. ըստ լեզուի մերում հայկազանց։

Ընդամէնը 236 երես նոյն Ազարիայի ձեռքով, նոյն թուին գրուած։ Ապա գալիս է. Գումարումն յոգնադիմի իրողութեանց սահմանաց Դաւթի փիլիսոփայի եւ այլոց իմաստասիրաց ի Մովսիսէ ումեմնէ ըստ տառից դասաւորե «չարկրգեալ», ընդամէնը 120 երես, վերջում տարբեր գրով խնդրւում է յիշել Մարկոս աբեղային և նրա ծնողներին։

Գրքի բոլոր գլուխները սկսուած են գեղեցիկ ծաղկագրերով։

Վ. Ագուլիսի Ս. Յովհաննու Մկրտչի եկեղեցում կայ մի Աւետարան, մագաղաթեայ, երկսիւն, քառածալ, բոլորագիր, աւետարանիչների պատկերներով ՋԾԵ. թուին Դանիէլի պատուէրով գրել է Սարգիս կրօնաւորը «ի մայրաքաղաքս Եղիգիս, ընդ հովանեաւ երից տաղաւարացս, սբ. Կաթողիկէիս, և սբ. Ածածնիս. և սբ. Նախավկայիս։ Ի յաշխարհակալութեան Ղանխարպանաին զոր ազգն Իսմայէլի սուլտան անուանին, ի թագաւորութեան Հայոց Հեթմա։ Եւ իշխանութեան այսմ նահանգի իշխանաց իշխանի բարեպաշտ և ամենաւրհնեալն Բուրթէլին և Բուղդաին որդոց Թա.-սաէր և փառազարդ իշխանաց իշխանի Էլիկումին որդո մեծին Տարսաիճին զոր տէր Յս. յերկար ժամանակս արասցէ մեզ ընդ երկայն աւուրս։ Ի հայրապետութեան ածապատիւ տռ. Գրիգորի Անաւարզեցո հայ կաթողիկոսի։ Ի վերադիտողութեան տանս Սր. Սահակայ սուրբ և ընտրեալ քաջ հռետորի և անյաղթ սոփեստի տր. Յովհաննէսի աւրպէլ արքեպիսկոպոսի որդոյ իշխանաց իշխանի լիպարտի, յաջորդող և աթոռակալ զկնի տան Ստեփանոսի զոր տացէ զսա մեզ տէր ընդ երկայն աւուրս ուղիղ վերակացութեանս»։

Նոյն եկեղեցում կայ մի Երանելոյն Յովհաննու Ոսկեբերանի արարեալ մեկնութիւն Սրբոյ Աւետարանի. թղթեայ է. մեծադիր, երկսիւն, բոլորագիր, գրել է Ներսէս աբեղան, ՌՃԿԱ. թուին։

Ալահի գիւղի եկեղեցում։ Մի Աւետարան, թղթեայ, երկսիւն, ութածալ, բոլորագիր, գրուած Մելքիսէթ երէցի ձեռքով «ի քաղաքս Տեղ ի հայրապետութեան Փիլիպպոսի և պարսիկ թագաւորութեան Շահ-Աբասին ի թվ. ՌՂԴ.»։

Նաև մի ուրիշ աւետարան, in. 16. և մի ճաշոց in. 2. առանց յիշատակարանի, շատ անխնամ պահուած։

Մարվանիսում Ս. Մեսրոպի վանքում կայ մի խորհրդատետր, թղթեայ, քառածալ, երկսիւն, ծաղկանկարներով, գրուած ձեռամբ Ուսկուտարցի Սահակ երիցու ի քաղաքն Քիլի թվին ՌՃԽԶ.

Ներքին-Ագուլիսի եկեղեցում.

1. Յայսմաւուրք. մագաղաթեայ, երկծալ, երկշար, բոլորա-

գիր։ Գրուած է «ի յամի Ջ և Լէ երորդի ի մայրաքաղաքի Արգուլեաց ընդ հովանեաւ սբ. Աստուածածնիս և Գէորգայ զաւրավարիս և Թովմայի սբ. առաքելոյ աջոյս... առ այս վերագիտողի վիճակիս Գողթան Տէր Սիմէոն արքեպիսկոպոսի։ Ի դառն և անբարի ժամանակիս ի վիշտս և հալածանս քրիստոնէից, ի դէպ ժամանակիս եղև Հասան բէկին որդոց նորին, ձեռամբ Գրիգոր քահանայի։

2. *Ճաշոց*, Թղթէ, երկծալ, երկսիւն, բոլորագիր, կազմած։ Գրուած է ձեռամբ Սրապիոն սարկաւագի ի Թվին ՌՃԻԳ. ի հայրապետութեան Տռն. Յակոբայ ամենայն Հայոց կաթողիկոսի ի յերկիրն Կապադովկեա Կեսարիա քաղաքի ընդ հովանեաւ սուրբ Կարապետի։

1681 Թ. Դաշտեցի Այվազի որդի Կարապետ Թումայեանցը Լիվոռնոյում գնում է այս ձեռագիրը և բերում Դաշտի սբ. Ստեփաննոս եկեղեցուն նուէր տալիս։

3. *Յայսմաւուրք*. մագաղաթեայ, երկծալ, երկսիւն, բոլորագիր։ Գրուած է «ձեռամբ Եփրեմ անիմաստ քահանայի ի հայրապետութեան Տ. Եղիազարու կաթուղիկոսի և թագաւորութեան Պարսից Շահ-Սուլէմանին և առաջնորդութեան նահանգիս Գողթնեաց սրբոյ Աթոռոյն Թումայի Յոհաննու արհի և պանծալի սրբանուէր եպիսկոպոսի և մետրապօլտի ի թուոյ կենարարին մերոյ Յի. Քր. Ռ. վեց հարիւր Ղ. և թուականիս Հայոց ՌՃ. երեսուն և ինն։ Ի գեօղն որ կոչի Ագուլեաց դաշտ. ընդ հովանեաւ սբ. Ստեփանոսի եկեղեցւոյս, որ վերաձայնի երեք խորան։

4. *Աւետարան*.—Թղթեայ, ութածալ, երկսիւն, բոլորագիր, չորս պատկերով, կազմած։ Գրուած է մատամբ մեղսամած Սարգիս չնչին քարտուղարի ի Թվին ՌՃԼԲ. Տեղը յայտնի չէ։

*Տանակերտ* գիւղի եկեղեցում կայ մի մագաղաթեայ Աւետարան քառածալ, երկսիւն, բոլորագիր, գրուած է «յանապատին սբ. Մամաս. ձեռամբ Մաթէոս աբեղայի, ի Թվին Հայոց ՋՁ.

Բացի սրանից կան նաև հնաեեալ ձեռագրերը, որոնց սկզբից և վերջից թերթեր են պակաս։

Երեք օրինակ *Յայսմաւուրք*, Թղթէ, երկծալ, երկսիւն, բոլորագիր։

Երեք օրինակ *Աւետարան*, Թղթէ, ութածալ, երկսիւն, բոլորագիր։ Սրանցից միայն մինը ունի յիշատակարան, գրուած է Կարսում, ՌՃԻ. Թուին։

*Մաշտոց*, Թղթէ, ութածալ, բոլորագիր վերջի թերթերը թափուած։

Խորհուրդատետր, Թղթէ, քառածալ, բոլորագիր. գրուած ՌՃԼԴ. Թուին:

Արժ. Տէր Յակոբի տետրում արտագրուած է Դիւանի ձեռագիր Յայսմաւուրքի և Ժամագրքի (այժմ անյայտացած) վերջում գրուած հետևեալ յիշատակարանները.

Ա. Յայսմաւուրքի յիշեցէք զվերջին ստացող որ գրոցս Ազուլեցի Փիրի պէկի որդի Սոփանննոս... Ես մինչև էի ի Թաւրիզ մայրաքաղաքի ի գործ վաճառականութեան ի ՌՃՀԹ Թուին ի ժամանակս Թագաւորութեան պարսից շահ Թամազին և Թագաւորութեան օսմանցոց սուլթան Ահմատին և կաթողիկոսութեան սրբ և մեծի աթոռոյն էջմիածնի տռ. Աբրահամին և մերոյ նահանգիս տանն Գողթնեաց սրբոյ և մեծի աթոռոյն սրբոյն Թովմայի առաքելոյ առաջնորդ հզահոգի և սրբակրօն վարուք Տէր Բարսեղ աստուածաբան վարդապետին ի սոցա ժամանակիս եղև մեծ վրդովմունս և խռով և աղմուկ և կռիւ և կագ այսինքն ի մէջ երկուց ինքնակալ Թագաւորաց օսմանցւոց և պարսից և եղև մեծ հալածումն միրազնեաց քրիստոնէից և եղև ի փախչելն օսմանցոց ի Թաւրիզու և եկին ազգ պարսիցն ի գիւղաքաղաքն Օրտուվար ժողովեցան և բանակեցին և անտի ելեալ մտին ի Դաշտ կոչեցեալ գեղն երկու տասան հազար հեծելօք և կոտորեցին ի Նոցանէ հոգիս ԳՃ արանց, մանկանց և կանանց և գերեցին ի Նոցանէ անձինս ԸՃ և այլ աւելի և ես ականատես եղայ աչօք իմօք և տեսի աստուածային սուրբ տառս ի ձեռս Նեռող ազգին պարսից գերի:

Ժամագրքի. ՌՄԽԶ Թ. այսպէս եղաւ. և եկն մահ աշխարհս Նախիջևան կաւառն, ագաջիրան (Ազատ Գիլան), Ղափան, Ղարայպաղ, Ղարադաղ, Թիֆլիս և Կուրջիստան և բազում գաւառ կոտորեց այսպէս ցաւն. Գ. օր քաշեր հիւանդն, աւել ոչ, ապա մեռնիր. փախչողն շատ մեռնէր քան Նստողն. աստուած բարկացաւ մեզ վրայ և մեր մեղացն, այսպէս մեաց. Գ. տարի սովն սուրըն և մահն ՌՄԽԶ Թուին մահն եկն աշխարհս: ՌՄԽԴ աճամ շահ Մամադ ախտա խան, որ է արաբստան և Թեհրանու, որ եկն աւերեց աշխարհ մինչի Թիֆլիզ և ինքն եկն Շուշու սատայկեցաւ և զօրքն փախեան և եղեն ոչինչ և ապրեցաւ քաղաքն ամենայն աշխարհ այով և հրամանաւն այ, լսեց Թագաւորն ռուսաց և եկ բազում զօրօք և եկն առ Հայաստան որ է արևել Նախ և առաջ առաւ Տամուր ղափու դայրպատն (Դարբանդ) Կալասան, Կորասանն, Լազգըստան Պաշխաշուղն, Ջառն, Կուրջիստան և քաղաքն Թիֆլիզ և եկն Գանջայ առաւ բազում արունեղութիւն եղաւ տաճկաց, հայոց ոչ, և առաւ Շուշու քաղաքն և նստաւ անդ, ՌՄԾԴ Թվին. յիշեցէք Սարգիս վարդապետ:



ՎԵՐԻՆ ԱԳՈՒԼԻՍ

# ՆԱԽԻՋԵՒԱՆԻ

# ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

## ԿԱՄ

# ՆԱԽՃԱՒԱՆ

### Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

*(Նուէր Լազարեան ազգալոյս տոհմի յիշատակին)*

*Սահմանները.*—Նախիջեւանի ոստիկանական շրջանը բռնում էր հին Նախճաւան գաւառը։ Այժմ նա կազմում է համանուն գաւառի չորս ոստիկանական շրջաններից առաջինը։ Այդ տեղ է գտնւում նաև գաւառի կենտրոնական քաղաքը։ Սրա սահմաններն են. հիւսիսից՝ Շարուր Դարալագեազի գաւառը, արեւելքից՝ Նախիջեւանի գաւառի երկրորդ և երրորդ կամ Ջահրիի (Ջահուկ) և Ապրակունիսի (Երնջակ) ոստիկանական շրջանները, և հարաւից ու արեւմուտքից՝ Պարսկաստանը։

Այս ոստիկանական շրջանը բռնում է 76691 դեսիատին և 1734 ք. սաժէն տարածութիւն[1]) որից՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1) Բնակատեղի . . . . | 191 դես. | 1784 | քառ. | սաժէն. |
| (այս հաշւում գիւղատեղի . | 164 դես. | 597 | ք. | սաժէն. |
| 2) Գերեզմանատեղի . . . | 5 դես. | 2265 | ք. | սաժէն. |
| 3) Ճանապարհներ . . . | 385 դես. | 101 | ք. | սաժէն. |
| 4) Արտեր . . . . . . | 20821 դես. | 1092 | ք. | սաժէն. |
| 5) Այգիներ . . . . . . | 417 դես. | 663 | ք. | սաժէն. |
| 6) Անտառներ . . . . . | 83 դես. | 603 | ք. | սաժէն. |
| 7) Մարգագետին . . . . | 660 դես. | 1660 | ք. | սաժէն. |

1) Труды закавказскаго статистическаго комитета. Земельныя дачи Эриванской губерніи. Нахичеванскій уѣздъ. դեռ ևս անտիպ.

8) Արօտատեղի . . . . . 47720 դես. 1071 ք. սաժէն
9) Ջրի տակ . . . . . . 788 դես. 1799 ք. սաժէն.
սրանից 1) ջրանցք. տակ 76 դես. 2139 ք. սաժէն.
2) գետերի, վտակների և
աղբիւրների տակ . . 608 դես. 290 ք. սաժէն.
10) Զարգիւնաբերող հողեր 3783 դես. 2130 ք. սաժէն.
11) Այլ և այլ տեսակի հողեր 52 դես. 1165 ք. սաժէն.

Իւր տարածութեամբ այս ոստիկանական շրջանը նոյն գաւառի չորս շրջանների մէջ երկրորդն է համարւում, իսկ առաջինը՝ Օրդուբադի ոստիկանական շրջանն է[1]։

Նախիջեւանի ոստիկանական շրջանը բռնում է գլխաւորապէս Նախիջևանի և Բոյուկ-դիւզի հարթութիւնները, որոնք միմեանցից բաժանւում են Հարաւային—Դարալագեազի լեռնաշղթայի վերջաւորութեան մի փոքրիկ գօտիով, որ յանկում է Արաքսին՝ Ղարաչուղ գիւղի մօտ։

Բոյուկ-դիւզի հարթութիւնը բաժանւում է Շարուրի հարթութիւնից Կըվրաղի բարձրութիւններով։ Նրա երկարութիւնն է 20 և լայնութիւնը՝ 10 վերստ։ Ջուր չլինելու պատճառով բոլորովին անբերրի է։

Նախիջևանի հարթութիւնը տարածւում է Նախիջևան-չայի և Ջահրի-չայի ստորին ընթացքում։ Այս հարթութեան երկարու-

---

[1]) Օրդուբադի ոստիկանական շրջանը նկարագրելիս դեռ ես պատրաստ չէր Անդրկովկասեան վիճակագրական կոմիտեի կազմած հողերի տարածութեան վերաբերեալ վերոյիշեալ տեղեկագիրը, ուստի և ես չկարողացայ այն ժամանակ օգտուել. այժմ լրացնելու յուսով կարևոր եմ համարում այստեղ առաջ բերել:

Օրդուբադի ոստիկանական շրջանը բռնում է 102745 դես. և 2258 ք. սաժէն տարածութիւն. որից՝

1) Բնակատեղի . . . 229 դես. 138 քառ. սաժէն.
սրա մէջ գիւղատեղի 222 դես 307 քառ. սաժէն.
2) Գերեզմանատեղի . . 12 դես. 1134 քառ. սաժէն.
3) Ճանապարհներ . . 400 դես. 470 քառ. սաժէն.
4) Արտեր . . . . . 13784 դես. 2051 քառ. սաժէն.
5) Այգիներ . . . . 998 դես. 1155 քառ. սաժէն.
6) Անտառներ . . . . 408 դես. 290 քառ. սաժէն.
7) Մարգագետին . . . 1 դես. 986 քառ. սաժէն.
8) Արօտատեղի . . . 57925 դես. 772 քառ. սաժէն.
9) Ջրի տակ . . . . 748 դես. 1427 քառ. սաժէն.
որից 1) ջրանցքների տակ 26 դես. 901 քառ. սաժէն.
2) գետերի, վտակների և
աղբիւրների տակ . 704 դես. 1237 քառ. սաժէն.
10) Զարգիւնաբերող հողեր 18383 դ. 880 քառ. սաժէն.
11) Այլ և այլ տեսակի հողեր 55 դ. 520 քառ. սաժէն.

թիւնը Նախիջևան-չայի ընթացքով հասնում է 30 վերստի, լայնութիւնը՝ հիւսիսային վերջաւորութեան վրայ, Ջահրի գիւղի մօտ 6 վերստի, իսկ հարաւային վերջաւորութեան վրայ, Ղարաչուղ և Արազին գիւղերի միջև 30 վերստի։ Հարաւից այս հարթութիւնը սահմանափակւում է Արաքս գետով, իսկ հիւսիսից՝ Թարուղաղ լեռնաշղթայի փեշերով։ Այս հարթութեան մակերևոյթը կտրատւում է մի քանի քարքարոտ ձորակներով ու աննշան սարերի գօտիներով ու գագաթներով, որոնցից յիշատակութեան արժանի են հետևեալները․ Կըվրաղ-սար (2865 ոտ.), Թագխուչանի (3123'), Տուզ-դաղ (3830'), Ղարաուլ-թափա (3067'), Գիւլթափա (3365'), Բէյուկ-տուզ (3073'), Զընգըլլու (2753'), Ղարղաբողար (3430'), Ղարանի-եալըղ (3668'), Գիւր-հուննուր (4238'), Իւսունգիւլլասը (5670')։ Այս բոլոր լեռներն էլ նստուցքային կազմութիւն ունեն [1]։

Գետերը.—Այս ոստիկանական շրջանը ունի միայն մի գետ, մի քանի վտակներով, և սա է, իսկապէս, ամբողջ շրջանի կենսատուն, ու սրա ընթացքով են դասաւորուած գիւղերը։ Սա Նախիջևան գետն է, որի վերին հոսանքը, որ կոչւում է Ղարա-բաբա-չայ, ընկնում է երկրորդ ոստիկանական շրջանի մէջ և միայն ներքին հոսանքը պատկանում է այս շրջանին։ Սկիզբն է առնում Զանգեզուրի գաւառի Արըկլու լեռնաշղթայից և թափւում է Արաքսը՝ Ապաստապատ—բերդից մէկ և կէս վերստ բարձր։ Նրա ամբողջ ընթացքի երկարութիւնը հասնում է 71 վերստի։ Նրա վտակներն են՝ վերին հոսանքում՝ Գիւքի-չայ, որ սկիզբն է առնում Հարաւային-Դարալագեազի Գիւքի-դաղ և Գեչալ-դաղ գագաթների միջից, և թափւում է սրա մէջ Ղարա-բաբայ գիւղի մօտ, անցնելով ընդամէնը 18 վերստ, իսկ միւսը Ջահրի-գետը, որ նոյնպէս սկիզբն է առնում Հարաւային-Դարալագեազի լեռներից և թափւում է Նախիջևան գետի մէջ Ուզուն-Օբա-իւխարի գիւղի մօտ, անցնելով ընդամէնը 40 վերստ։ Նախիջևան գետից տարուած են վեց ջրանցքներ, շրջակայքը ոռոգելու նպատակով, այնպէս որ ամառը, արդէն իսկ փոքրացած այս գետը, մինչև Արաքս չի հասնում։ Վերջինս, թէպէտ և կազմում է այս շրջանի ամբողջ հարաւային ու արևմտեան սահմանագիծը, սակայն ոռոգման դեռ ևս չի նպաստում, որովհետև առանց ջրամբարձ մեքենաների, չի կարելի ջուր բարձրացնել։

Հանքեր.—Նախիջևանի գաւառը նախ և առաջ նշանաւոր է իւր աղահանքերով։

[1]) Երկրաբանական կազմութեան մասին արդէն խօսել ենք Օրդուբադի ոստիկանական շրջանն նկարագրելիս։

Նորագոյն հետազօտութիւնները ցոյց են տուել, որ Սև-ծովի գրեթէ ափից մինչև Օրդուբադ քաղաքը ձգւում է աղաքարի անընդմիջելի, ստորերկրեայ մի շերտ, որ Օրդուբադ քաղաքի մօտ անցնում է Արաքսը և տարածւում Պարսկաստանի սահմաններում։ Այդ շերտի վրայ այժմ գործում են հինգ աղահանքեր՝ Օլթիի, Կաղզուանի, Կողբի, Նախիջևանի և Սուստի։ Այս աղահանքերից հանած աղի քանակը միանգամայն կախուած է վաճառատեղիների թուից։ Այժմ առաջին տեղը բռնում են Կողբի և Կաղզուանի, յետոյ Նախիջևանի և Սուստի, և վերջինը՝ Օլթիի աղահանքերը 1)։

Նախիջևանի աղահանքը գտնւում է համանուն քաղաքից 12 վերստ դէպի հիւսիս-արևմուտք, Արաքսի ձախ ափին, նրանից 9 վերստ հեռու, Դուզ-դաղ լերան մէջ, 2949 ֆ. ծովի մակերևոյթից բարձր։

Այստեղ գտնուած քարէ մուրճերը ցոյց են տալիս, որ շահագործուած է շատ հին դարերում։ Դատելով փորուածքների ծաւալով, կարելի է ենթադրել, որ մինչև այժմ հանուած է 6—7 միլիօն փութ աղ։ Այժմ տարեկան միջին թուով հանում են մինչև 200 հազար փութ։ Այս աղահանքը պատկանում է պետական գանձարանին և կապալով է տրուած Ջանփուլատեանին 9000 ր. այն պայմանով, որ աղահանքում աղի փութը ծախուի մեծ, հինգ և աւելի փունտանոց, կտորները 10, իսկ մանրերը՝ 5 կոպէկով։

Սուստի աղահանքը գտնւում է Նախիջևանի աղահանքից 9 վերստ հիւսիս, Սուստ գիւղի հարաւային կողմում։ Աղային շերտը մօտ 2 սաժէն հաստութեամբ, ըստ երևոյթին, Նախիջևանի աղաշերտի շարունակութիւնն է, և միևնոյն տեսակի։ Այս աղահանքից մինչև հիմայ հանուած է մօտաւորապէս 4 միլիօն փութ աղ. տարեկան հանում են մինչև 300 հազար փութ աղ։ Սրան շահագործել սկսել են միայն վաթսունական թուականներից։ Սա պատկանում է Քելբալի-խանովներին և կապալով է տրուած նոյն Ջանփուլադեանին։

Բացի այս յիշուած շահագործուող աղահանքերից, այս ոստիկանական շրջանում աղահանք նկատուած են և հետևեալ տեղերում։

Այս աղահանքի մօտ՝ Կեվորչին-ղուլլար.—Նախիջևանի հանքից 8 վերստ դէպի հիւսիս. և Իքի-Թափալար—5 վերստ դէպի հարաւ-արևելք նոյն աղահանքից. Աղ-դուզ-դաղ լերան մէջ, Սուստի աղահանքի մօտ։ Սուստ գիւղից 3 վերստ դէպի արևելք, Տալօ-դարալի կոչուած տեղում։

1) Памятная книжка Эриванской губерніи на 1902 г. добыча соли въ Нахичеванскомъ уѣздѣ. էջ. 176—177.

Ազնաբերդ գիւղից վեց վերստ հարաւ-արևելք, համանուն լերան արևմտեան լանջին (5858 ոտ. բարձ.)։

Նախիջևանից 3—4 վերստ դէպի հիւսիս-արևմուտք, Ղարաբաղ տանող ճանապարհից միքանի սաժէն հեռու, և 2 վերստ 200 սաժէն դէպի արևելք Նախիջևանի աղահանքից Բահին-խան-տուղլաղ Բահիմ-Թափա լերան մէջ։

Նախիջևան քաղաքից 10 վերստ դէպի հիւսիս և Նախիջևան աղահանքից 12 վերստ դէպի արևելը, Թիւլքի-Թափա լերան մէջ։

Բացի աղահանքից, այս շրջանում կան նաև՝

*Գիպս.*— Գտնւում է Նախիջևան քաղաքի և համանուն աղահանքի շրջակայքում։

*Մարմարիոն.*—Սուրաբ գիւղից 2 վերստ դէպի հիւսիս։

*Կրաքար.*—Նախիջևանի շրջակայքում. Կարմիր-վանքի մօտ Նեհրամ գիւղի մօտ։

*Հանքային ջրեր.*—Այս ոստիկանական շրջանում չկան, այլ որա կից՝ երկրորդ ոստիկանական շրջանում՝ Բադամլու և Սուրաբ գիւղերի մօտ, երկուսն էլ ածխաթթուային են։

*Կլիման.*—Ո՛չ քաղաքում և ո՛չ ամբողջ ոստիկանական շրջանում չկայ օդերևոյթաբանական կայարան, պարզ է ուրեմն, որ անհնարին է մի որոշ բան ասել։ Վերջին տարիներս միայն սկսել են չափել նստոյցները, սակայն այս ևս ո՛չ այնքան կանոնաւոր։ Հիմնւելով մասամբ այս, մասամբ էլ պ. Նիկիտինի 1881—1882 Թուականներին կատարած դիտողութիւնների վրայ, կարելի է մօտաւորապէս ասել, որ այստեղ ձմեռն սկսւում է դեկտեմբերին, ջուրն սկսում է սառչել՝ լճակներում դեկտեմբերի վերջին, իսկ գետերում՝ յունուարի սկզբին։ Սառուցը լճերում և գետերում սկսում է հալչիլ փետրուարի վերջին (23—25) և անհետանում է մարտի սկզբին (6—7)։ Ձիւնը բաց տեղերում անհետանում է մարտի սկզբին։ Առաջին փոթորիկը տեղի է ունենում փետրուարի վերջին և մարտի սկզբին, կարկուտը՝ գարնանը և շատ սակաւ՝ ամրանը։

Մարտի սկզբին երևում են առաջին դաշտային ծաղիկները՝ ձնծաղիկ, յակինթ, մանուշակ. կաղնին ծաղկում է մինչև ապրիլի վերջը, ուռենին մայիսի սկզբին։ Ալուչան (սալոր) հասնում է մայիսի կիսին, յետոյ կեռասը. Թութը մինչև յունիսի 1-ը։ Անձրևները շատ առատ են մարտի երկրորդ կիսին. ապրիլին և մայիսին, յունիսին պակասում են, իսկ յուլիսից հոկտեմբեր շատ սակաւ։ Տոգ օրերն սկսւում են սովորաբար մայիսի կիսից, այնպէս որ յունիսի սկզբին արդէն խոտն ու ծառերի տերևներն սկսում են դեղնել արեգակի կիզիչ ճառագայթների ազդեցութեամբ։ Ա-

մարային ամենաշոգ եղանակը լինում է յուլիսի վերջն ու օգոստոսի սկիզբը, երբ ջերմութիւնը հասնում է մինչև 50° R.։ Գիշերները լինում են տօթ, խեղդիչ և թոյլ չեն տալիս քնելու, թէպէտ և լինում են նաև շատ ցուրտ գիշերներ, երբ ջերմութիւնը ցերեկուանից 25° ընկնում է։ Այսպիսի խիստ փոփոխութիւնը շատ անգամ վտանգաւոր հիւանդութիւնների պատճառ է լինում։

Ամառը Նախիջեանում տիրում է սաստիկ տենդ, որից ազատ չեն մնում ոչ միայն նորեկները, այլ և տեղացիները։ Այս տենդը, ինչպէս և ջերմախտը և աչքի հիւանդութիւնները սովորական և մշտատև են ոչ միայն քաղաքում, այլ և ամբողջ Նախիջևանի հարթութեան վրայ։

Այստեղ տիրապետում են արևելեան և հիւսիս-արևելեան անձրևաբեր քամիները։ Հարաւային քամիները սաստիկ տաք են և վնասակար։

Բացի վատառողջ կլիմայից, թէ քաղաքը և թէ այս շրջանը ունի բազմաթիւ կարիճներ, միլիոնաւոր մոծակներ և սակաւաթիւ մորմեր (фалангъ), որոնք թունաւորում են կեանքը գարնան ու ամրան ժամանակ։

Բուսականութիւն. — Նախիջևանի ոստիկանական շրջանը բուսականութեան կողմից հարուստ չէ, որովհետև նախ շատ տեղեր աղային հանք պարունակելով իրենց մէջ, լերկ են, ինչպէս Նախիջևանի և Սուստի աղահանքերի շրջակայքը և երկրորդ՝ ջուրը շատ սակաւ է, ինչպէս օրինակ Բոյուկ-դուզ կոչուած ահագին հարթութիւնը, որ միանգամայն զրկուած է բուսականութիւնից։

Այս ամբողջ շրջանում չկայ ոչ մի անտառ, այլ տեղ տեղ, գետակների ափերին, ժայռերի ստորոտներում, մի խօսքով երկրագործութեան անյարմար տեղերում, բնակիչների ձեռքով տընկուած են կաղամախ, ուռենի, հասարակ կնձնի (карагачъ, Ulmus campestrls), փշատ (Zizyphus cappadocia), և այլն։

Շրջանի մեծագոյն մասը բռնուած է գլխաւորապէս ցորենի, գարու, բամբակի, կանեփի և կորեկի արտերով, մի մասն էլ բռնում են խաղողի և պտղատու ծառերի այգիները։ Այստեղի խաղողներից նշանաւոր են. սև տեսակից՝ սև-խալիլի, սապելի, մալահի, սև-խաղող, սև-ալդարա և ղարաջա, սպիտակ տեսակից՝ խալիլի, որ հասնում է յունիսի վերջին, ասկարի, հուսէյնի, քիւրդաշտ, քիշմիշի և կատուի աչք։

Պտղատու ծառերից նշանաւոր են խնձորենին, տանձենին, ընկուզենին, նշենին, նռնենին, սալորենին, դեղձենին, ծիրանենին, փշատենին, թթենին, բալենին և կեռասենին։

Դաշտերն ու արօտատեղիները լի են ծաղիկներով, որոնցից նշանաւոր են. երկծաղիկ կակաչը (Tulip Biflora), կովկասեան հիրիկ կամ վայրի շուշան (Iris caucasica), տերևախիտ նուարտակ (Lepidum perfoliatum), կրկնատերև մկնասոխ (Scilla bifolia), աֆրիկեան երեկորնիկ (Hesperis africana), մեծորակ առնասպար (Androsace maxima), արևելեան կաղամբ, համոսկրի (Holosteum umbellatum aff.) կատուախոտ մշկունի (Nepeta muschini) ճանդի (Scandix australis), պնդատերև վալանդիա (Valantia pymea), պայծառ խոզելընդի (Scrophularia lucida), երփնագոյն գայլոտն (Lycopus variegata), կարճ պնդատերև ագռաւածաղիկ (carex stenophylla). և այլն[1]։

Ընտանի կենդանիներից՝ այստեղ կան ոչխար, այծ, կով, եզ, գոմէշ, էշ, ձի և ուղտ։

Վայրի կենդանիներից՝ նապաստակ, աղուէս, այծեամ և գայլ։

Ընտանի թռչուններից՝ հաւ, և սակաւաթիւ բադ, սագ, և հնդկահաւ։

Վայրի թռչուններից՝ ճնճղուկ, բազէ, կաքաւ, լոր, բու, ծիծեռնակ, արտոյտ, արագիլ, ձկնկուլ և այլն։

Սողուններից՝ օձ, մողէս և այլն։

Միջատներից՝ սարդ, մորմ, կարիճ (սև ու դեղին), մորեխ, մժղուկ, մոծակ և այլն։

---

# ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## Ա.

## ՆԱԽԱՊԱՏՄԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Նախ քան այս ոստիկանական շրջանում իմ կատարած պեղումների նկարագրութեան անցնելը, կարևոր եմ համարում յիշել այստեղ այն մի քանի հնագիտական իրերը, որ բարեբաղդաբար ընկել են մի որևէ թանգարան, և այսպիսով կորստից ազատուել։

Բաւականաչափ հնութիւններ գտնւում են Ս. Էջմիածնի թանգարանում, որոնց մի մասը հաւաքել է Նախիջևանի նախկին յաջորդ արժ. Գրիգորիս վարդապետը, իսկ մնացածը արժ. Մեսրովբ վարդապետ Տէր Մովսէսեանը զանազան մասնաւոր անձերից։ Առաջնի ժողովածուի մէջ մեծ տեղ են բռնում քարացած

1) Ալիշան. Սիսական. եր. 491.

ժժմակները, օձերը և ձկերը, որոնցով շատ հարուստ են Կարմիր վանքի և Խրամ քաղաքի միջև ձգուող բլուրները։ Այս տեղից ես ևս բաւականաչափ քարացած ժժմակներ եմ հաւաքել։ Արժ. Գրիգորիս վարդապետի ժողովածուն համառօտակի նկարագրուած է «Արարատ»-ի 1893 թ. Զ. համարում, իսկ արժ. Մեսրովբինը բաղկացած է բացառապէս կաւէ ամաններից, դեռ ևս ցուցադրուած չէ։



ՔԱՐԷ ՄՈՒՐՃԵՐ

Նախիջևանի աղահանքում գտնուած են միքանի քարէ մուրճեր, որոնք այժմ պահւում են Կովկասեան և Պետերբուրգի Գիտութիւնների Ճեմարանի Մարդաբանական Թանգարաններում։ Դժբաղդաբար այս մուրճերի հետ չեն գտնուած ուրիշ իրեր կամ որևէ մետաղ, որպէսզի կարելի լինէր որոշել, թէ ինչ ժողովրդի և որ դարերին են պատկանում։ Սակայն հաւանական է, որ բաւական հին շրջանից լինին և առնուազը երկաթի կամ բրոնզի դարից։ Պարզ երևում է, որ այս մուրճերը գործ են ածուել աղաքարեր կոտրելու համար, միայն դժուար է ասել, թէ այստե՞ղ են շինուած, թէ ուրիշ տեղից բերուած։ Սրանք մի քանի տեսակի քարերից են շինուած, աւազաքարից, թերթաքարից (силанецъ) և մանաւանդ զատաքարի (diorite) տեսակներից։ Վերջին տեսակի քարերից շինուածներից շատերը կանոնաւոր ձև ունեն և շատ լաւ են կերտուած։ Գտնուել են նաև տեղական, բնականից կոկուած քարեր, որոնք գործ են ածուել, փոքր ինչ կերտուելուց յետոյ։ Կան և այնպիսի մուրճեր, որոնք

կոթի վրայ ամրացրուած են հիւսիսային-ռուսների, օլանեցների, գործադրած եղանակով—կոթի մէջն են մտցրուած։ Ընդհանրապէս նկատւում է, որ հին աղտհատներն աւելի աշխատել են օգտուել բնական քարերից, քան կռել գործիքներ։

Գ. Գոլեակովը 1879 թուին այս աղահանքում գտել է 13 մուրճ, որոնք թէպէտ զանազան ձև ունեն, սակայն ծառայել են միենոյն նպատակին՝ աղաքար կոտրելու այս, Նախիջևանի, աղահանքում։ Մուրճերից շատերն ունեն շուրջանակի փոսիկ, ուր թոկով ամրացրել են կոթը։ Ցդկած մուրճերից ամենահետաքրքրականը մինն է, որ անեղծ է մնացել, բաւական մեծ է և ծանր։ Նա ունի 185 միլլիմետր երկարութիւն և մինչև 120 միլլիմետր լայնութիւն, միանգամայն մօտենալով ձուաձևի ձևին։ Վերի մասից 40 միլլիմետր ներքև առ ի շեղ ձգւում է մի ակօսաձև գօտի, ուր, երևի ամրացել է կոթը, թերևս երկու երկար փայտեր, որոնց ծայրերից բռնած աշխատել են հաւանականօրէն երկու մարդ, որովհետև մուրճը 1 փութ և 2 ֆունտ ծանրութիւն ունի։ Միւս մուրճը, որ գտնուել է մերգելի մէջ, աւելի լաւ է կերտուած։ Նրա մի ծայրը բութ է, միւսը՝ սուր, այնպէս որ բահի է նմանւում, երկարութիւնը 230 միլլիմետր է, ամենալայն մասը՝ մօտ 100 միլլիմետր։ Նոյնպէս ունի ակօսաձև շուրջանակի փորուածք բութ ծայրին բաւական մօտ։

Մինն էլ միանգամայն դրնգի է նման, կլոր կոթ ունի, որ ձեռագործ է, և քառանկիւնի, փոքր ինչ պրիզմայանման գլուխ։

Ուշագրաւ է նաև չորրորդը՝ որ կարճ է և լայն, 140 միլլիմետր երկարութեան և 100 միլլիմետր լայնութեան։ Ծայրը հետզհետէ սրանում է. վերան կայ երեք ակօսաձև շուրջանակի փորուածքներ։



Ես պեղումներ կատարեցի գլխաւորապէս չորս տեղ. Քիւլ-թափա, Ուզուն-օբա-աշաղա, Կարմիր-վանք գիւղերում և Խրամ աւերակ քաղաքում։

Քիւլ-թափա (Մոխրագագաթ) գիւղը, որ գտնւում է Նախիջևան քաղաքից դէպի հիւսիս-արևելք մօտ ութ վերստ հեռաւորութեան վրայ, իւր անունն ստացել է այն մոխրակոյտից, որ գտնւում է նրա արևելեան ծայրում։ Սա

մօտաւորապէս 10 սաժէն բարձրութեան մի բոլորաձև բլուր է, 100 սաժէն տրամագծով։ Սրա մէջ նկատելի են եօթը շարք, միմեանց վրայ դարսուած գերեզմաններ, միմեանցից 3—4 արշին բարձր։ Ածխախառն մոխրի շերտը որոշ կերպով բաժանում է գերեզմանների յարկերը միմեանցից։ Գերեզմանները մանր քարերով շարուած քառանկիւնի փոսեր են, մօտ մի արշին բարձրութեան, առանց քարէ կափարիչի և հիւսիսից հարաւ ուղղած։ Իւրաքանչիւր գերեզմանի մէջ գտնւում էր միայն մի կմախք, հիւսիսից հարաւ ուղղուած և երեսը դէպի հարաւ դարձրած։ Շատերի մէջ լինում էին նաև զանազան ձևի պուլիկներ, և տաւարի ոսկորներ։ Միքանիսի մէջ կար նաև այրուած ցորեն ու գարի։ Պուլիկների մեծագոյն մասը կոտրուած էին։ Նկատելի էր, որ ստորին յարկերի պուլիկները սև, իսկ վերի յարկերինը կարմիր հողից էին շինուած։ Առաջինները հասարակ են և առանց նշխերի, մինչդեռ վերջինները համեմատաբար աւելի գեղեցիկ և նշխերով զարդարուած։ Ուշագրաւ է մանաւորապէս մինը, որ տափարակ է, շրջանաձև, նեղ բերանով և երկու կանթով։ Մի երեսը ծածկուած է ջրդեղով (Vernis)։



Առանձին ուշադրութեան արժանի է այստեղի մի գերեզմանից իմ գտած քարէ փոքրիկ ձին, որ ընդամէնը 4½ սանտիմետր երկարութիւն և 3 սանտիմետր բարձրութիւն ունի։ Նկատւում է որ որա մէջքին կերտուած է նաև թամբը։ Հասկանալի է, որ ննջեցեալի հետ ձին, ինչպէս և զէնքերն ու զարդերը, թաղելու սովորութեան փոխարինել է նրա արձանը կամ պատկերը թաղելու սովորութիւնը, որ այժմ էլ տեղի է ունենում Չինաստանում։ Այս սովորութեան մնացորդ է ձին ննջեցեալի յետևից մինչև գերեզման տանելու ծէսը, որ տեղի է ունենում այս կողմերի բնիկ հայերի մէջ ևս։

Գիւղացիները շարունակ քանդում են այս բլուրը և հողը տանում այգիները պարարտացնելու։

Ո՛չ միայն ես, այլ և գիւղացիներն այս տեղերից բրոնզէ իրեր չենք գտել։

Միևնոյն ձևն ու կազմութիւնն ունի նաև այն բլուրը, որ գտնւում է այստեղից դէպի արևմուտք, հազիւ չորս վերստ հեռու, Ուզուն-օբա-աշաղա և Ծալլու գիւղերի մէջ և յայտնի է դարձեալ Քիւլ-Թափա—մոխրագագաթ անունով։ Սա առաջնից

աւելի ընդարձակ է, միայն նրանից աւելի ցածր։ Իսկական բարձրութիւնը յայտնի չէ, որովհետև շրջակայ գիւղացիները շարունակ քանդել են ու քանդում են ու հողը տանում արտերը պարարտացնելու։

Համեմատաբար աւելի նոր ժամանակի են Ս. Ստեփանոսի կամ Կարմիր վանքի մօտ իմ պեղած գերեզմանները։ Կարմիր վանքը գտնւում է այս ոստիկանական շրջանի հարաւ-արևմտեան սահմանում, Արաքսի ափին, Նախիջևանից մօտ քսան վերստ հեռու։ Գերեզմանները գտնւում են վանքից արևմուտք մօտ 50 սաժէն հեռու, մի փոքրիկ հարթութեան վրայ։ Գերեզմանների վրայ թմբեր չկան, ոչ էլ գերեզմանաքարեր, նկատելի են միայն հիւսիսից հարաւ ձուաձև շարուած փոքրիկ քարեր։ Այս շրջանակների մէջ մօտ երկու արշին խորութեան փորելուց յետոյ բացւում էին գերեզմանները, սրանք բոլորն էլ միատեսակ էին, բոլորն էլ ուղղուած հիւսիսից հարաւ, բոլորն էլ գրեթէ միևնոյն երկարութեան,—3 արշին, միայն տարբեր լայնութեան 1—2½ արշին։ Գերեզմանի չորս կողմը 1—1½ արշին բարձրութեան քառանկիւնի պատ էր քաշուած անտաշ, փոքր քարերով, ամբողջովին հողով լցուած էր ու վերան՝ փոխանակ սալաքարի՝ փոքր ինչ մեծ քարեր էին դրուած։ Իւրաքանչիւր գերեզմանում լինում էր 1—3 կմախք, բոլորն էլ հիւսիսից հարաւ ուղղուած, մօտերը կաւէ զանազան ամաններ։ Կմախքները սաստիկ փթել էին, այնպէս որ հնարաւոր չեղաւ ամբողջ գանգեր վերցնելու, սակայն որքան կարելի եղաւ նկատել, մեծ մասամբ միջագլուխ էին։

Կաւէ ամանները կարմրաւուն են, բաւական լաւ շինուած։ Առանձին ուշադրութեան արժանի են թասի նմանութիւն ունեցողները և մանաւանդ սրանցից մինը՝ որ կանթ ևս ունի։ Աւելի ուշագրաւ է մի ուրիշը՝ որ կճղակի նմանութիւն ունի, 20 սանտիմետր բարձրութեան և 8 սանտիմետր տրամագծով։ Հաւանական է, որ խմիչքներ խմելու համար գործածուած լինի։



Կարմիր-վանքից հազիւ հինգ վերստ դէպի հարաւ, անմիջապէս Արաքսի ափին, այնտեղ, ուր այժմ գտնւում է Նեհրամի պահակատունը, երևում են Նախկին Խրամ քաղաքի հետքերը.—մի եկեղեցու հիմքը և մի քանի գերեզման։ Թողնելով քաղաքի տեղագրութիւնն ու պատմական անցեալը



տեղագրական բաժնի մէջ անելու, ես առայժմ բաւականանում եմ ասելով, որ այստեղ և ես պեղումներ կատարեցի, սակայն շատ քիչ բան գտայ.—մի քանի դատարկ կարասներ, որոնք հաւանօրէն գործ էին ածուել գինի կամ մի ուրիշ հեղուկ պահելու համար, մի աղիւսի կտոր, որի վրայ կայ մի մարդու բարձրաքանդակ, շատ նախնական կերպով կերտուած, մի քանի կաւէ ամաններ և իւր տեսակում դեռ ևս միակ՝ մի փաղոս (ֆալլուս)։ Ի նկատի առնելով, որ թէ հին և թէ միջին դարերում գրեթէ ընդհանրացել էր բնութեան և մարդու ստեղծագործող ուժի պաշտամունքը, որ ծննդական գործարանի թէ հսկայական և թէ մանրիկ ձևակերպութեան երկրպագութիւնը սաստիկ տարածուած էր Եգիպտոսում, Ասորեստանում, Պարսկաստանում, Փոքր Ասիայում, Յունաստանում, Իտալիայում, Մեքսիկայում և որ մինչև անգամ այժմ մնացել են Իտալիայի շատ տեղերում և Ֆրանսիայում անհետացել են միայն ԺԷ. դարի սկզբին, ես ենթադրում եմ, որ Հայաստանում ես այդ պաշտամունքը գոյութիւն է ունեցել և այժմ էլ կան բաւականաչափ կոթողներ, սովորութիւններ և նախապաշարմունքներ, որոնցով կարելի է այդ ապացուցանել, ուստի և ես մտադիր եմ մօտիկ ապագայում առանձնապէս և ընդարձակօրէն գրել այդ մասին։ Այս պատճառով և՛ զանց եմ առնում այստեղ նկարագրելու այդ չափազանց կարևոր հնագիտական իրը։

---

## Բ.
## ՊԱՏՄԱԿԱՆ ՇՐՋԱՆ

*Քաղաքական զարգացում.*—Այժմեան Նախիջևանի ոստիկանական շրջանը, որ կազմում է Երևանեան նահանգի Նախիջևանի գաւառի մի մասը, հնումը կոչւում էր Նախճաւան կամ Նախջաւան, երբեմն Նախչուան և վերջերս՝ Նախիջևան։

Յոյները կոչում էին Նաքսուանա [1]), որ Նախճաւան ձայնի փոխադարձութիւնն է, արաբներն անուանում էին Նեշուի, Նեշվի և կամ Նաշաւա, Թուրքերը Նագշիջիհան, որ ստուգաբանում էր իբր նկար կամ ծաղիկ տիեզերքի, պարսիկները Նախճիվան, իսկ ռուսները Նախիչեւան։

---

1) Պտղոմէոս Ե. 13.

Այս երկրի ու քաղաքի հետ կապուած է մի աւանդութիւն, որի հիման վրայ միքանիսին հաճելի է եղել ստուգաբանել երկրի անունը, որպէս թէ Նոյը տապանից դուրս գալուց յետոյ ունեցել է իբր Նախ իջեւան այս երկիրը, որի պատճառով և այդ կոչուել է Նախիջևան։ Այսպէս Ղազար Ջահկեցին (յետոյ կաթուղիկոս) գրում է. «Ի 1539 ամի աշխարհի շինել Նոյի զՆախիջևան»։ Իսկ Նալեանը աւելի ճոխացնելով ասում է. «Յետ համատարած ջրըհեղեղին նախկին քաղաքն Հայոց եղև Նախջուան, զի եղև նախկին իջեան Նոյեայ և որդւոց նորա, և կամ նախկին աւան եղև շինեալ յորդւոցն Նոյի. և զի անտի իջին ի չուել ընդ այլ մասունս աշխարհի և անդ ասի լինել գերեզմանն Նոյի»։ Այս աւանդութիւնը յիշում է նաև Յովսէպոս եբրայեցին, ասելով թէ հայերն այդպէս են աւանդում և այդ տեղը Աբովադիրիոն, այսինքն իջեան, անուանում։

Աւելի ծաղրելի է Վիլլոդ քարոզչի ստուգաբանութիւնը, որ իրեն ասելով՝ հայերից է լսել. իբր թէ Նոյը չուանով չափել է յատակատեղին և շինել քաղաքը, որի պատճառով և կոչուել է Նախ-չուան[1]։

Նախճաւանն սկզբում պատկանել է Վասպուրական աշխարհին, թէպէտ և իւր բնական դիրքով կցորդուած է Սիւնեաց աշխարհի հետ և Վասպուրականից բաժանւում է Արաքս գետով։ Գլխաւորապէս այս բնական դիրքը և մասամբ քաղաքական հանգամանքները պատճառ են եղել, որ Ը. դարի սկզբին այս գաւառը անցել է Սիւնեաց աշխարհին և թէպէտ Թ. դարի վերջին Արծրունեաց կողմից յետ է պահանջուել, սակայն յետ չէ տրուել։

Ազգային մատենագիրներից ամենահին տեղեկութիւնը այս գաւառի մասին տալիս է Մովսէս Խորենացին, ասելով որ Քրիստոսից վեց դար առաջ, Երուանդեան Տիգրանը «Անուշին, Աժդահակի առաջին կնոջը և նրա ազգից ուրիշ շատ աղջիկներ պատանիներով և ուրիշ գերիներով, տասն հազարից աւելի, բնակեցրեց մեծ սարի արևելեան կողմում մինչև Գողթնի սահմանները... մինչև Նախիջևան ամրոցը։ Նոցա տալիս է նոյնպէս երեք քաղաքներ՝ Խրամ, Ջուղա և Խոշակունիք, իսկ գետի միւս կողմից տալիս է բոլոր դաշտը, որը սկսւում է Աժդանականից մինչև նոյն Նախճաւան ամրոցը[2]»։

Մարական այս ժողովուրդն աճելով տարածուել է նաև Շարուր և կազմել մի զօրեղ նախարարութիւն Մուրացան անունով,

[1]) Voyage d'un missionaire եր. 192. յիշ. Ալիշան, Սիսական եր. 497.

[2]) Մովսէս Խորենացի Ա. գլ. Լ. թրգմ. Ստեփանէի։

որ Վաղարշակի կարգադրութեամբ Թագաւորի երկրորդն է դարձել։ Առաջնակարգ տեղ բռնելով թէ Երուանդի և թէ, մանաւանդ, Արտաշէս Բ. թագաւորութեան ժամանակ, ունենալով Արգամի պէս մի նշանաւոր նահապետ, այս նախարարութիւնը սոսկալի ջարդ է կրել Արտաշէսի որդի Արտաւազդից, որ «չհաւականացաւ խլելով Մուրացան ազգից երկրորդական պատիւը, խլեց նոյնպէս Նախճաւանը և Երասխի հիւսիսում գտնուած բոլոր գիւղերը... Արգամի որդին չկարողանալով սրան համբերել, ընդդիմանում է նրան պատերազմով, բայց արքայորդին յաղթում է և ջնջում Արգամի բոլոր ծնունդներն նրանց հօր հետ, որոնք միանգամայն երևելիներ էին Մուրացան ազգից և խլում առնում է նրանց բոլոր գիւղերն և բոլոր իշխանութիւնը։ Եւ նրանցից ոչ ոք չապրեց բացի միքանի աննշան մարդիկներից, որոնք Արտաշէսի մօտ փախչելով, արքունի դրան պահուեցան մնացին 1)»։

Որքան և՛ կասկածելի լինին վերոյիշեալ պատմական տեղեկութիւնները, այնուամենայնիւ այդպիսի աւանդութիւնների կազմուելն անգամ ապացուցանում են, որ այդ կողմերը սահմանակից և նոյն իսկ մասն կազմելով Փոքր Մարքին, մեծապէս ենթարկուել են մարական ազդեցութեան և այդտեղ եղել է մարական մի մեծ գաղթականութիւն, որ բռնել է նոյն իսկ Շարուրի դաշտը, ապացոյց՝ Գողթան երգերը՝ որ Արտաշէսի որդի Արտաւազդի մասին ասում են. «Անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ» (Խոր. Ա. գլ. Լ.), իսկ Խորենացին վկայում է, որ Մարակերտ է «ի դաշտին, որ անուանեալ կոչի Շարուրայ»։ Բիւզանդը ևս յաճախ այս կողմերին կոչում է. «Երկիրն Մարաց (Դ. գլ. իդ.), աշխարհն Մարաց (Դ. գլ. Ծ.), կողմանք Մարաց (Ե. գլ. Ծա.)։

Եթէ հաւատալու լինենք Փաւստոս Բիւզանդին, այս կողմերում հրէական մի մեծ գաղթականութիւն ևս եղած պիտի լինի, որովհետև նա պատմում է, թէ Շապուհ Արշակ Բ. ի ժամանակ առաւ նաև Նախճաւանը, և «Հրեայ երդս վեշտասան հազարս անտի խաղացուցին գնացուցին 2)։ Սակայն այս աւերումը վերջնական հարուած չէ տուել քաղաքին, նա շուտով բարձրացել է, շնորհիւ իւր դիրքի, որովհետև գտնւում էր Պարսկաստանի և Հայաստանի, այսպիսով և՛ Հնդկաստանի և Փոքր Ասիայի ճանապարհի վրայ։ Սակայն միևնոյն այդ դիրքը պատճառ է եղել բազմաթիւ հարուածների, այսպէս՝ Է. դարում Հերակլ Յունաց կայսրը Պարսկաստան արշաւելիս աւերել է այս քաղաքը և սրա սահմանները, յետոյ երբ Արաբացիներն ոտք են դրել Հայաս-

1) Մ. Խոր. Բ. գլ. ԾԱ. Թարգմ. Ստեփանէի։
2) Փաւստոս Բիւզ. Դ. գլ. ԾԵ.



**Нерсесъ V. католикосъ всѣхъ армянъ**

**Nersès V. patriarche de tous les arméniens.**



Л. Е. Лазарянъ. Ղ. Լազարեան. L. E. Lazarian.



Переселеніе **40,000** армянъ изъ Персіи въ Россію подъ распоряженіемъ Л. Лазаряна. въ **1828** г.

**40,000** պարսկահայերի գաղթականութիւնը Ռուսահայաստան Ղ. Լազարեանի կարգադրութեամբ **1828** թ.

Transmigration de **40,000** arméniens de Perse en Russie sous les ordres de Lazarian en **1828**.



г. Нахичевань. Նախիջեւան քաղաք Ville de Nakhitchévan

տան, «յաւարի առին զՄարս, զԳողթն, զՆախճաւան»։ Սրանից յետոյ աւանը մեծանալով դարձել է քաղաք և եղել Վասպուրականի Ոստան, յետոյ Արաբացի ոստիկանների գլխաւոր կայաններից մինը։

Ը. դարի սկզբին, այն է 705 թուին, Մահմէտ ոստիկանի հրամանով Կաշմ հրամանատարը, «որ ի կողմանս Նախճաւան քաղաքի, ետ կոչել առ ինքն զնախարարս Հայոց, նոցին հեծելովք, իբրև պատճառանօք ինչ անցուցանել ի համարու արքունի, և առնուլ հոգ և դառնալ։ Եւ նոքա ըստ օրինի պարզամտութեան իւրեանց՝ հաւատարիմ համարեալ զնենգութիւն գաղտասոյր որսողացն, վաղվաղակի անդր հասանէին. իբրև ժողովեցան անդր, հրամայեցին յերկուս բաժանել զնոսա. զոմանս (800 ոգիս) հաւաքեցին յեկեղեցին Նախճաւանու, և զկէսն (400 ոգի) յուղարկեցին յաւանն 'ի Խրամ, արկանէին յեկեղեցի նորա, կարգեալ ի վերայ պահապանս... հանին արտաքս զազատատոհմս յարգելանէն. և զորս ի սրբարանն արգելեալ էին՝ հրակէզ արարին. և առչորէին ի յարկսն աստուածային խորանին» [1]։ Ապա մնացած ազնուականներին նենգութեամբ ու խաբէութեամբ կողոպտելուց յետոյ, սրի ու կախաղանի մատնեցին։ Այս սոսկալի եղեռնագործութեան տարին Արաբացի պատմագիրները այրման կամ հրդեհի տարի են կոչել։ Այս կոտորածից յետոյ Նախճաւանը իւր սահմաններով Սիւնեաց աշխարհի մասն է գրուել։ Նոյն կոտորածները ու աւերումները շարունակուել են մինչև Թ. դարը, երբ Բագրատունիք զօրանալով Նախճաւանն էլ նուաճել են, և Սմբատ Ա. նուիրել է այն Սիսական Սմբատ իշխանին, բայց Գագիկ Արծրունին խնդրում էր իրեն դարձնել, «իբր թէ ի հաւու և ի հօրէ նոցունց իւր տան և ազգի պատշաճեալ և նուաճեալ ունէր զնա», սակայն Սմբատ Ա. չէ կատարել նրա խնդիրը, և սա դըժգոհելով Յուսուֆի ձեռնտուութեամբ թագ է կապել և այնչափ չարիք հասցրել Թագաւորին ու կամայ թէ ակամայ պատճառ եղել նրա սպանման։ Սակայն այս քաղաքը երկար ժամանակ չէ մնացել Սիւնեաց իշխանների ձեռքում, որովհետև Թագաւորի նահատակութիւնից յետոյ տեսնում ենք, որ Յուսուֆի փոխանորդ Նսըրն է այդտեղ նստել և այնուհետև դա դառել է արաբացի կուսակալների բնակատեղի, թէպէտ և ոչ միշտ այդտեղ էին մնում։ Սակայն հայերի թիւը, ինչպէս երևում է, այս կողմերում այնքան էլ չի պակասել, որովհետև Ժ. և ԺԱ. դարերում այս կողմերում եղել է մինչև 800 եկեղեցի [2]։ Այս ժամանակներում

[1]) Ղևոնդ պատմիչ. գլ. Ժ.

[2]) Ռուբրուք քարոզիչ, որ անցել է այս տեղով 1254 թուին։

*Մաղարդայ վանքի կոնդակներից մինում, որ գրել է Խաչիկ կաթուղիկոսը 976 թուին, սա նրա թեմում կոչւում է.* «առաջին հոյակապ եւ հռչակաւոր Մայրաքաղաքն Նախչաւան[1], *որ քիչ յետոյ յիշում է նաև Սարգիս կաթուղիկոսը իւր կոնդակում իբրև վիճակ Սիւնեաց մետրապօլտի, որը երբ երկու աթոռի բաժանուեց՝ Նախճաւանը Վայոց ձորի և Ճահուկի հետ մնաց Նորավանից աթոռակալին վիճակ ԺԲ. դարից մինչև ԺԳ. դարը։*

*Այստեղ Անին առնուելուց յետոյ Ալփ-Արսլանը 1065 թուին ժողովել է բոլոր ամիրաների և նուաճած իշխանների զօրքերը և արշաւել դէպի Վրաստան։*

*ԺԲ. դարի սկզբում Նախարմիշ անունով մինն է եղել Նախճաւանում իշխող, որից առել է Մելիք շահի որդի* Ղյասէդդին *1107 թուին. սրա որդի* Մելիք-Թողրուլը *այդտեղից հալածուել է Խազրաց ասպատակներից 1121 թուին։ Այս Սէլջուկեան սուլթանների ժամանակ Նախճաւան գաւառը արքունի գանձարանին 115,000 դենար ոսկի հարկ է վճարել, ինչպէս աւանդում են արաբացի պատմագիրները, իսկ առաջ, երբ Վասպուրականի մայրաքաղաք էր, այդ նահանգը վճարել է Ամիրապետների արքունիքին 4,000,000 դրամ (տիրէմ), դարձեալ արաբացի հին պատմագիրների ասելով։*

*ԺԲ. դարի կիսում այստեղ, Նախճաւանում, նստող Ատրպատականի կողմնակալների մէջ նշանաւոր է եղել* Ելտկուզ Ա., *որ տիրել է նաև Գանձակին և այլ կողմերի և որովհետև սա թագաւորեցրել էր Պարսկաստանի վրայ Ասլան-շահին, ուստի և կոչուել է* Աթաբէկ *(Թագաւորահայր կամ Հայրագլուխ), որից և նրա յաջորդները նոյն կերպ են անուանուել և ինքը համարուել է Պարսից ամբողջ թագաւորութեան հազարապետ։ Սա նուաճել է նաև Սիւնեաց այլ կողմերը, Բաղաց թագաւորութիւնը ընկնելուց յետոյ։ Սրա յաջորդ և որդի* Փահլաւանը *(1173) գթացել է Լիպարիտ Օրբելեանի որդի Ելիկումին և նրա խնդրի համեմատ տուել է նրան Երնջակ և Ճահուկ գաւառներն ու Քալասրանը Նախճաւանում։ Հաւանօրէն մինչև Թաթարների աշխարհակալութիւնը Նախճաւանը մնացել է Ելտկուզեան Աթաբէկների ձեռքը։ Այս Թաթարների տիրապետութիւնից փոքր ինչ առաջ, նրանցից փախչելով* Ճէլալէդդին *Խորազմ Շահը այստեղ եւս մեծամեծ աւերածութիւններ է գործել, և այդ ժամանակ է, կարծէք, քանդուած եկեղեցիներից շատ շատերը, որոնց մասամբ վերականգնել է փոքր ինչ յետոյ* Ռաբան Աքա Ասարին։

---

1) *Ալիշան. Սիսական եր. 499.*

ԺԴ. դարի վերջին, երբ Թաթարաց պետութեան մէջ շփոթութիւններ են ընկել, Ղազան խանի որդի Նաւռուզը հրամայել է առհասարակ քակել ամենայն եկեղեցի և կողոպտել ամեն մի քրիստոնէի ու Թլպատել բոլոր պատահած քահանաներին, ի միջի այլոց սա կողոպտել է տուել և «զՆախճաւանու եկեղեցիս, (ուր) և գերեցին զքահանայս, և բազում չարչարանս ածին ի վերայ. քարշեցին զդրունս քաւարանացն, ընկեցին և զսեղանսն. բայց մեծ գլխաւորքն ոչ Թողացուցին քակել զեկեղեցիսն, ակն ածեալ ի վերայ զօրացն. կողոպտեցին և զվանսն որ ի գաւառին Նախճաւանու» [1]։

Սրանից յետոյ էլ այս քաղաքը շատ անգամ աւերուել է, այսպէս՝ Ազախու (Ազովի) Թաթարներից, Լէնկթիմուրի արշաւանքից առաջ, ի վրէժ Ճէլայիրեան Ահմէտ սուլտանի, որ նախարգել էր նրանց Թագաւոր Թօխտամիշ խանի դեսպանին և սա ուղարկել էր Ճանիպէկ զօրավարին, որ ասպատակ էր սփռել Նախճաւանում և Սիւնեաց ամբողջ երկրում։ Հազիւ մեկնել էր նա, եկել է Լէնկթիմուրը, իւր հրոսակներով, և ապա անցնելով Պարսկաստան և Ատրպատական, ուղարկել է Նախճաւանի սահմանները (1386) Էլիաս Խոճային հետամուտ լինելու Ճէլայիրեան Ահմէտ սուլտանին, որը և Աղահանքի մօտ կռիւ տալուց յետոյ խոյս է տուել, սակայն քաղաքում շատ արիւնհեղութիւն և հրկիզութիւն են եղել, որոնց հետ և՛ Զիա-էլ-միւլք կոչուած արքունի ապարանքն էլ այրուել է մի զօրավարի վրէժխնդրութեամբ, որին անպատուել էր քաղաքապետը և 15 հոգի էլ պալատի մէջ հեղձամահ են եղել։

Այս սարսափելի ժամանակներում ներքին խռովութիւններն էլ մի կողմից տանջում էին հայերին։ Այստեղ հաստատուած էր Միաբանողաց եպիսկոպոսական աթոռ, որ շարունակ կռւում էր Լուսաւորչականների հետ։

1499 կամ 1500 Թուին պարսից Թագաւորութեան նորոգող Շահ Իսմայիլը Նախճաւանի դաշտում ջարդել է Ուզուն Հասանի Թոռն Էլվէնդ շահին։ Իսկ յաջորդ ԺԶ դարում, ինչպէս և նրանից յետոյ, պարսից և օսմանցոց պետութիւնների հաստատման և զօրանալու ժամանակ, ուրիշ քաղաքների հետ Նախճաւանն էլ կռուի և աւերի վայր է դարձել, ինչպէս նոյն դարի կիսին (1554), սուլԹան Սուլէյմանի արշաւանքի ժամանակ, որ համարեա անապատացրել է քաղաքն ու նրա շրջակայքը հինգ օրուայ տարածութեամբ, ինչպէս ժամանակակից մի հայ ազգու համառօտու-

[1]) Ստ. Օրբ. Հ.

*թեամբ պատկերացնում է. «Հայոց թվին ՌԲ. (1553-4) Խոնդ քարն երեկ ի Նախչուանն. այրեաց, քակեաց, հրձիգ արար»: Եւ ինքը սուլթանն էլ գրել է ֆրանսիացոց Հենրիկոս Բ. թագաւորին, թէ Շահն «ելից առաջի յաղթական բանակաց մերոց զգահ իւր (ի Նախճաւանի) և զապարանս, որք յայրեաց յաւեր դարձան, մինչև չթիալ հետոց անգամ. քանզի զամենայն շէն բնակութեան քանդեցաք և հրկէզ արարաք շուրջ զՆախճաւանաւ, որոց և նշմարք անգամ ոչ երևեսցին»: Սակայն շնորհիւ իւր դիրքի, կարճ միջոցում նորից Նախճաւանը վերականգնել է, և եւրոպացի վաճառականները յիշում են նրան որպէս մեծ շահաստան, հարուստ բազմաթիւ շտեմարաններով[1]): Բայց շուտով սկսուել են Շահ-Աբասի աւերիչ պատերազմները ԺԷ դարի սկզբին, երբ Ալի-փաշա անունով մինն էր Նախճաւանի կուսակալը: Սրա վրայ Շահ-Աբասն ուղարկել է (1603) Զիւլֆ-Իղար խանին, սակայն մինչև նրա հասնելը՝ օսմանցիներն ահաբեկուած թողել են քաղաքը և փախել Երևան: Բայց երբ սրանց Ջլալ-օղլի սպարապետը եկել է, պարսիկները նոյնպէս թողել փախել են. այն ժամանակ Օմար աղա անունով մինը օսմանցիների կողմից եկել է պահպանելու քաղաքը: Կարճ միջոցից պարսիկները զօրեղանալով վերադարձել են, և Շահ-Աբասից ուղարկուած* Ամիրգիւնէ *խանը պատերազմել և սպանել է Օմարին, կոտորել նրա զօրքերը, ինքը նստել է նրա տեղը: «Նոյն շահը յետ ոչ բազում ամաց, շարունակում է Առաքել Դաւրիժեցին, լուեալ ամբաստանութիւն զբնակչաց քաղաքին՝ հրամայեաց արտասահման առնել, վարել տանել ի քաղաքն Ֆահրապատ. և զքաղաքն Նախջուան աւերել, զտունսն և զամենայն շինուածսն քանդել, և զայգեստանսն կոտորել. որ անխափան կատարեցաւ առ նոսա հրաման թագաւորին, զի զամենայն բնակիչսն հանեալ վարեցին ՚ի Ֆահրապատ. իսկ ՚ի բնակչացն Նախջուանայ արք աննշանք և սինլքորք փախուցեալք ի շրջակայ գիւղորայսն՝ թաքեան աստ և անդ»[2]):*

*Մի անգամ էլ վերականգնեց քաղաքը և դարձաւ պարսիկ խաների բնակավայր, բացի մի կարճ ժամանակամիջոցից, երբ նրան տիրեցին օսմանցիները:*

*ԺԸ. դարի առաջին քառորդին, Մահմուտ խանի բռնակալութեան միջոցին, օրինաւոր ժառանգ* Շահ Թահմազը *խոյս տալով ապաստանել է այստեղ, Նախճաւանում, և այստեղից ուրիշ*

---

*[1]) Այսպէս՝ Վենետիկից պատգամաւոր Ալեսսանդրի 1571 թ. Նիւպըրի անգղիացին 1581 թուին և ուրիշներ:*

*[2]) Առաքել Դաւրիժեցի:*

տեղեր։ Այդ ժամանակ այստեղ խան է եղել Ասլամազ Ղուլին, որի վրայ եկել է Դաւիթ-բէկը 6000 հայ կտրիճներով և կռուելով նրա 12—14000 զօրքի դէմ, յաղթել է ու փախցրել։ Սակայն երբ հայերը 3 ժամ շարունակ նրանց հետևելուց յոգնել են ու թուլացել, պարսիկները յարկարծակի յետ են դարձել և փախցրել հայերին, որոնցից շատերը շտապով գետն անցնելիս՝ խեղդուել են։ Այս պատերազմում պարսիկները սաստիկ թուլանալու պատճառով օսմանցիք առանց պատերազմի առել են Նախճաւանը։ Սակայն մի կարճ միջոցից Նադիր-շահը կրկին խլել է օսմանցիների ձեռքից և խան կարգել (1735) Վելի-Ղուլի խանին։

1791 թուին Շուշու Իբրահիմ խանը իւր 800 և լեզգիների Ուման-խանի 12000 զինուորների հետ յարձակուել է Նախջուանի վրայ, «աւերեցին զքաղաքն և պաշարեցին զբերդն մինչև ժզ աւուրս»[1]։ Նախիջևանի խանը թէպէտ սաստիկ նեղուել է, սակայն չէ յանձնել բերդը, մինչև որ իւր աներ՝ Երևանի Մահմէտ-խանը մեռացած Խոյի խանի հետ օգնութեան է հասել, և միջանի հարիւր լեզգիներ սպանելով՝ ստիպել Իբրահիմ խանին՝ յետ դառնալու Շուշի։

Հինգ-տարի յետոյ այն է 1796 թուին, Աղա-Մահմատ խանը կասկածելով այստեղի Քալբալա խանի հաւատարմութեան վրայ, երկու աչքը հանել է տուել։

Այսքան կոտորածները, բռնի և կամաւոր գաղթականութիւնն անչափ նուազեցրին այս մարդաշատ քաղաքի բնակիչների թիւը, այնպէս որ անցեալ դարի սկզբին քաղաքում 156[2]) և սրա ամբողջ գաւառում 533 գերդաստան միայն կային։ Այս պատճառով և՛ դուցէ մարէր այստեղ հայութիւնը՝ եթէ մի մեծ գաղթականութիւն չգար վերակենդանացնելու նրան։ Այս գաղթականութիւնը տեղի ունեցաւ Պարսկահայքից 1828 թուին Ղազար Լազարեանի առաջնորդութեամբ, գլխաւորապէս հետևեալ պատճառներով։

ա.—Պարսկահայ ժողովրդի վերին աստիճանի անապահով և սաստիկ ճնշուած դրութիւնը։

բ. Հայերի դէպի ռուսական կառավարութիւնը տածած անսահման վստահութիւնը[3])։

---

1) Դիւան Հայոց պատմ. գիրք Ա և Բ. եր. 25—26 և գիրք Դ. եր. 571.

2) Обозрѣніе Россійскихъ владѣній Закавказомъ. Спб. 1836 г. IV стр. 332 և 317.

3) Խոյում հայերը բարձրացնում էին իրենց երեխաներին և բացականչում, թէ պատրաստ են սրանց էլ զոհելու, միայն թէ

*գ—Ներսէս արքեպիսկոպոսի (յետոյ կաթուղիկոս) և Ղազար Լազարեանի հեղինակաւոր միջամտութիւնը։*

*դ.—Պարսկահայերի ռուսներին ցոյց տուած օգնութեան և համակրութեան համար պարսից կառավարութիւնից և ժողովրդից սպասուած վրէժխնդրութեան երկիւղը* 1)։

*Երբ 1827 թուի ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ռուսաց զօրքը յաղթանակով յառաջ էր շարժւում՝ մեծապէս օգտուելով հայերի ջերմ համակրանքից, ընդհանուր զօրքի հրամանատար կոմս Պասկևիչը խնդրեց կայսեր՝ որ հայերի մէջ անագին հեղինակութիւն և համակրանք վայելող Լազարեան տոհմից Ղազարին ուղարկէ իւր բանակը, որպէսզի նրա միջոցով ռուսներն աւելի մեծ համակրանք ձեռք բերեն հայերի մէջ։ Եւ երբ նրա խնդիրը յարգուեց և Ղազար Լազարեանը գալով Նախիջևան, Էրիստով զօրապետի բանակի հետ արշաւեց դէպի Ատրպատական, Թաւրիզի դռներն առանց պատերազմի բացուեցան նրա առաջ, որովհետև Թաւրիզի բազմաթիւ հայերը համոզեցին պարսիկներին անձնատուր լինել։ Եւ որովհետև ռուսաց կառավարութիւնը մտադրուել էր Ատրպատականի հայերին գաղթեցնել Արաքսի ձախ ափը, որ հաւանականօրէն պիտի հնար լինէր, ուստի և Պասկևիչը Ղազար Լազարեանին նշանակեց Թաւրիզի քաղաքապետ, ցանկանալով նրա միջոցով դիւրել Ատրպատականի հայերին գաղթելու ռուսական մասը։ Ինքը Ղազար Լազարեանը լինելով այն տոհմի զաւակ, որին բռնութեամբ պարսիկները գաղթեցրել էին հին Ջուղայից Նոր Ջուղա, և որը տեսել ու կրել էր պարսից բոլոր բռնութիւններն ու Ռուսաստան էր տեղափոխուել (1750 թ.) հանգիստ և ազատ գործունէութիւն որոնելու, անա այս տոհմի զաւակը չէր կարող չհամակրել Պարսկաստանից Ռուսաստան գաղթելու գաղափարը, մի գաղափար, որ ոչ պակաս ոգևորում էր և Ներսէս արքեպիսկոպոսին, որ ամէն կերպ օգնում էր ռուսներին, տենչալով ստեղծել մի հայկական աշխարհ։ Ահա և այս պատճառով, երբ Ներսէս արքեպիսկոպոսը նկատելով, որ պարսիկները Թաւրիզի առման պատճառով հաշտութիւն են խնդրելու, միքանի նամակներ գրեց Ղազար Լազարեանին, և խնդրեց, որ նա միջնորդէ Պասկևիչին, որպէսզի հայաբնակ գաւառներն աշխատեն*

---

*ռուսաց թագաւորի հովանու տակ առնեն* (Акты Археогр. Ком. VII *եր.* 651.

1) *Կոմս Պասկևիչը գրում է Աղասի-Միրզին, որ «հակառակ դաշնագրութեան՝ հալածում են ռուսներին պատերազմի միջոցին օգնողներին և մինչև անգամ ամբոխը մինին քարկոծել է։* (Акты Археогр. ком. VII *եր. 614).*

ընդ միշտ ազատ պահել պարսից տիրապետութիւնից, իսկ եթէ սահմանն Արաքսը պիտի լինի՝ այն ժամանակ դաշնագրութեամբ պէտք է պահանջել, որ բոլոր պարսկահայերն իրաւունք ունենան գաղթելու Ռուսա-Հայաստան։ Հակառակ դէպքում հայերը կը մատնուեն պարսից անողորմ վրէժխնդրութեան, որովհետև նրանք բացարձակապէս ցոյց էին տուել իրենց համակրանքը ռուսներին և կարելւոյն չափ օգնել էին նրանց։

Այս մասին Լազարեանը պատասխանում է Ներսէսին 1827 թ. հոկտ. 28-ին. «Զոր ինչ գրեալ էիք ինձ վասն սիրելի մեր ազգին և սահմանաց Երևանայ՝ ես նորին բարձր գերազանցութեան վասն այս խօսեալ եմ, որ ասաց ինձ թէ միտքն և դիտաւորութիւնն իւր կայսերական մեծութեան նոյն է. նա ես ինքն նորին գերազանցութիւնն հետևելոց է այս բանին լաւապէս կատարել։ Եւ ես․ իմոյս կողմանէ ինձ առաջին և սուրբ պարտաւորութիւն կը համարեմ, այն է՝ որ լինիմ օգուտ ազգին մերոյ»[1]։

Զնայելով, որ դաշնագրութեան կայսրից նախապէս հաստատուած նախագծի մէջ արդէն մտել էր Պարսկաստանի քրիստոնեաներին Ռուսաստան գաղթեցնելու կէտը, այնուամենայնիւ Ներսէս արք-եպիսկոպոսն այդ մասին տեղեկութիւն չունենալով և չբաւականանալով Լազարեանին գրած նամակներով, 1827 թ. դեկտեմբերին գրեց իրեն Պասկևիչին, թէ հարկ է գաղթեցնել հայերին պարսից սահմաններից ռուսաց նոր նուաճած երկիրը և թէ այդ նպատակով նա ուղարկում է Ենովքեան Ստեփանոս եպիսկոպոսին և ղարաբաղցի Նիկողայոս վարդապետին, որպէս զի սրանք համոզեն հայերին անմիջապէս գաղթել Արարատեան աշխարհը։ Միևնոյն ժամանակ Ներսէսը խնդրում էր, որ դաշնագրութեան մէջ մտցնուի, թէ պարսից տէրութիւնը պարտաւորւում է վճարել հայերին նրանց թողած անշարժ կայքերի արժէքը։

Այս խնդրի վերաբերութեամբ Պասկևիչի գրած պատասխանի մէջ ասուած է, թէ չի կարելի համաձայնեցնել պարսից տէրութեան ընդունել հայերի անշարժ կալուածները, տեղը դրամ վճարելով։ Իսկ ինչ վերաբերում է մասնաւոր անձերի վրայ ծախսելուն, պէտք է ասել, որ եթէ հաշտութիւնը կայանայ, դաշնագրութեան մի կէտում յատկապէս ասուած է, թէ այն ամենայն կարգի անձինք, որոնք կը կամենան գաղթել մեր երկիրը, իրաւունք ունեն ծախսելու իրենց սեպհական կայքը հինգ տարուայ ընթացքում։ Միևնոյն ժամանակ կասկած յայտնելով, որ պարսիկները կարող են ճշտութեամբ չկատարել գաղթականութեան մասին

[1]) Երիցեան. Կովկասի հայք. Մասն Ա. եր. 315.

դրուած պայմանը, նա յայտնել է ամենքին, որոնք կամենում են անցնել ռուսաց սահմանները, որ աշխատեն գաղթել նախքան ռուսաց զօրքերը կը հեռանան պարսից երկրից [1]։

Վերջապէս 1828 թուի փետրուարի 10-ին կայացաւ Թուրքմէնչայի դաշնադրութիւնը, որով Երեւանի և Նախիջեւանի խանութիւնները դառնում են ռուսաց տէրութեան սեպհականութիւն, երկու տէրութեան հպատակներին, որոնք Երասխի այս կամ այն ափում անշարժ կայքեր ունեն, իրաւունք է տրւում երեք տարուայ միջոցում ազատօրէն վաճառելու կամ փոխանակելու. Շահը կատարեալ և լիակատար թողութիւն է շնորհում Ատրպատական գաւառի բոլոր բնակիչներին և պաշտօնականներին, չմատնելով նրանցից ոչ ոքին հալածանքի կամ նախատինքի, նրանց կարծիքների, ընթացքի կամ վարքի վերաբերութեամբ, որ ունեցել են պատերազմի ընթացքում կամ ռուսաց զօրքերն այդ գաւառին տիրած միջոցին, նրանց մի տարի ժամանակ է շնորհւում իրենց ընտանիքներով ազատօրէն անցնելու պարսից գաւառներից ռուսականը, դուրս տանելու կամ վաճառելու իրենց շարժական կայքերը, իսկ անշարժ կայքերը ծախելու համար տրւում է հինգ տարի ժամանակ [2]։

Այս դաշնադրութեան հիման վրայ Պասկեւիչը Ղազար Լազարեանին ստանձնեց գաղթականութեան ղեկավարութիւնը, տալով նրան մանրամասն հրահանգներ։ Սրանց մէջ ասուած էր, որ Լազարեանը պէտք է ընտրէ հարիւրապետներ և յիսնապետներ, որոնց պիտի յանձնարարէ անմիջապէս շրջելու հայերի և այլ քրիստոնեաների բնակավայրերը քարոզելու և ղեկավարելու գաղթականութիւնը։ Պէտք է հաստատապէս իմանան թէ քրիստոնեաներն իսկապէ՞ս ցանկանում են գաղթել։ Հարկաւոր չէ ստիպել կամ բռնութիւն գործ դնել գաղթեցնելու համար, այլ հարկաւոր է ազդել նրանց վրայ՝ նկարագրելով այն օգուտները, որ կունենան ընդունելով քրիստոնեայ թագաւորի հպատակութիւնը, և որ կարող են երջանիկ ու խաղաղ կեանք վարել։ Կարող էք յուսադրել քրիստոնեաներին, ասուած էր հրահանգներում, որ մեր գաւառները գաղթելուց յետոյ վաճառականութեամբ պարապողները կարող են հաստատուել քաղաքներում և այնպէս կառավարուել, ինչպէս տեղական վաճառականները։ Իսկ երկրագործներին բաւականաչափ հողեր կը տրուեն, և վեց տարի հարկից

1) Երիցեան. յիշ. գիրք. եր. 320.
2) Անդ. եր. 321.
3) Собраніе актовъ относящихся къ обозрѣнію исторіи Армянскаго народа. Ч. I стр. 270—275.

և երեք տարի բեգեառից ազատ կը լինեն։ Աշխատել որքան կարելի է շուտ գաղթել, որովհետև ռուսաց զօրքերը հեռանալուց յետոյ պարսիկները կարող են նրանց նեղացնել և արգելել։ Ամէն գաղթող գիւղ կարող է իւր կողմից մի երեսփոխան թողնել, որ նա կարողանայ պայմանաւորուած ժամանակամիջոցում ծախել գաղթողների անշարժ կալքերը։ Գաղթողները պէտք է շարժուեն տեղերից ամբողջ գիւղերով, խումբ-խումբ. ամէն մի խումբը 150—300 գերդաստանից, որոնց առաջնորդելու և պաշտպանելու համար կարգել մի յիսնապետ և 2—5 հեծելազօր։ Գաղթողներին խորհուրդ տալ որ գնան առաւելապէս Նախիջևանի և Երևանի գաւառները։ Տնանկ գերդաստաններին իբր ճանապարհածախս տալու համար յանձնւում էր Լազարեանին 25,000 րուբլի, յանձնարարելով, որ իւրաքանչիւր գերդաստանին 10 րուբլուց աւելի չտրուի, և այն էլ այն պայմանով, որ ռուսաց սահմանն անցնելուց հինգ տարի յետոյ սկսեն և յաջորդ հինգ տարիների ընթացքում մասմաս վճարեն[1]։

Այս գաղթականներին տեղաւորեցնելու համար Երևանում կազմուած էր մի յանձնաժողով, որին հրահանգուած էր աշխատել, որ գաղթականները բնակուեն ամբողջ գիւղերով, առանց միմեանցից անջատուելու, այնպէս, ինչպէս բնակուելիս են եղել, իսկ եթէ այդ անկարելի լինի, բնակեցնել մօտակայ գիւղերում։ Լեռնային տեղերի բնակիչները պիտի բնակուեն լեռնային տեղերում, դաշտայինները՝ դաշտերում։ Կալուածատէրերի հողերում ոչ ոքի չբնակեցնել։ Աշխատել, որ գաղթական քրիստոնեաների նոր գիւղերը մահմեդական բնակիչներ էլ չունենան, և քրիստոնեայ ազգաբնակութիւնը առանձին գաւառակներ կամ մահալներ կազմէ։ Եթէ բնիկ հայ գիւղերը ազատ հողեր ունենալով ցանկանան իրենց համայնքի մէջ ընդունել և՛ գաղթականներ՝ չարգելել։ Գաղթականներին բնակեցնել յարմար և առողջարար վայրերում, ուր կարելի լինի լաւ ջրի պակասութիւն չզգալ։ Համոզել գաղթականներին, որ նրանք իրենց տները շինեն ուղիղ գծի վրայ և առնուազը 3 սաժէն լայնութեան փողոցներ թողնեն։ Աշխատել, որ գաղթականների նոր շինուելիք տները չնմանեն երկրիս սովորական խրճիթներին, այլ աւելի հաստատուն լինեն և ունենան բոլոր յարմարութիւնները։ Իբր օրինակ կարելի է տէրութեան ծախսով մի օրինակելի տուն շինել, տեղական կլիմայի և ունեցած տնտեսական կառավարութեան պահանջների համեմատ։ Իրենց բնակութեան տեղը հասած, բայց կարգաւորուելու համար միջոց

[1]) Նկարագիր գաղթականութեան Հայոց, Մոսկուա. 1832 եր. 70—77.

չունեցող գերդաստաններին գանձարանից 10—20 րուբլի փոխ տալ, տասը տարուայ ընթացքում առանց շահի վերադարձնելու պայմանով։ Նաև, եթէ միջոցներ լինեն, արմտիք էլ փոխ տալ՝ մինչև նոր հունձը։ Եւ որովհետև Նախիջևանի կողմերը, մանաւանդ Օրդուբադի, Մեղրիի և Ղափանի գաւառակները շատ անմարդաբնակ են, ուստի աշխատել գաղթականների մի մասը այդ կողմերում բնակեցնել [1])։

Այս հրահանգները Պասկևիչը ուղարկեց նաև Ներսէս արքեպիսկոպոսին, որի անմիջական իշխանութեան տակ էր գտնւում «գաղթականական յանձնաժողովը»։

Լազարեանն սկսեց գործել. այդ գործի համար նա անզուգական էր, դէպի նա և նրա տոհմը հայերի տածած սէրն ու համակրանքը կատարեալ վստահութիւն էին ներշնչել տալիս պարսիկներից հազար անգամ խաբուած ժողովրդին։ Երբ նա երևեցաւ Թաւրիզում և նշանակուեց քաղաքապետ, Ատրպատականի բոլոր կողմերից հայերը շտապեցին Թաւրէզ, «Լուաք զգալուստ ձեր. ցանկացաք զձեզ տեսանել. տեսաք և ուրախ եմք. այլ ընդ ուրախութեանս է մեր յիրաւի և տրտմութիւն, և այն ոչ սակաւ։ Ունենք զձեզ այժմ՝ երանի թէ յաւիտեան. այլ ծրպէս ի քաղցրութիւն մարդասէր խնամոցն՝ զոր մեզս ցուցանէք, վայելել ունիցին մեր որդիք՝ ընդ լծով կալով օտարաց ի դարս դարուց։ Ոչ կամիմք զրկիլ 'ի ձէնջ ասեմք և 'ի ձերային աստուածատունկ սերնդոց, բարգաւաճելոց ընդ հովանաւոր աջով մեծի կայսեր Նիկողայոսի։ Դո՛ւք մեր խնդութիւն տիրապէս։ Դուք մեր միակ մխիթար և պարծանք ամենայն տարագրեալ որդւոց Թշուառացելոյն Հայաստանի։ Ո՛չ թեամք. գնամք յո՛ և գնաք. հետք մեր՝ ընդ հետս ոտից ձերոց։ Միջնորդեցէք առ կայսեր՝ ձեռն կարկառել ողորմութեան, և մեք յօժար եմք կալ և մեռանիլ ընդ տէրութեամբ նորա» [2])։

Ժողովրդի կողմից գաղթելու այսպիսի բուռն ցանկութիւն տեսնելով, Լազարեանը կարծում էր, թէ շատ հեշտ է այս գլուխ բերել, բայ յետոյ, ինչպէս ինքը Լազարեանն է գրում Պասկևիչին, «երբ հասաւ այն տեղը՝ երբ հարկաւոր էր բաժանուել իրենց կայքերից և իրենց աշխատասէր նախնիքների գերեզմաններից, այն նախնիքների, որոնք իրենց ժառանգութիւն էին թողել ընդարձակ և արգաւանդ դաշտեր. և երբ հասաւ շինական կեանքին ա՛յնքան յարմարացրուած բազմամեայ շինուածքները

[1]) Երիցեան. Կովկասի Հայք. Ա. մասն. եր. 325.
[2]) Երիցեան. Կովկ. Հայք. Ա. մասն եր. 323.

թողնելու և հաստատուն ներկան անյայտ ապագայի հետ փոխելու ժամը՝ առաջինը նեստորականները կամեցան, որ վճարեն իրենց թողած ամէն բանի արժէքը, յետոյ էլ հայերը խնդրում էին, որ տան իրենց անշարժ կայքերի արժէքի գոնէ երրորդ մասը[1]), որովհետև պարսից տէրութիւնը՝ հակառակ դաշնադրութեան՝ գաղտնի կերպով արգելել էր գնելու գաղթողների անշարժ կայքերը։

Սակայն արգելքները միմիայն հայերի կրած նիւթական զրկանքները չէին, այլ և պարսից կառավարութեան յառաջացրած խոչընդոտները։ Պարսից տէրութիւնը տեսնելով, որ իւր սպասածի հակառակ ահագին բազմութիւն ցանկանում է գաղթել, հասկացաւ, որ միայն նրանց շնորհիւ ծաղկած երկրները պէտք է միանգամայն ամայանան, ուստի և սկսեց քարոզել, որ ռուսաց խոստումները խաբեբայութիւն են, որ ռուսները սրանց ճորտ կը դարձնեն, սրանցից զինուոր կը վերցնեն. բացի սրանից այդ կառավարութիւնը ինքն էլ իւր կողմից սկսեց խոստումներ անել վեց տարի շարունակ հարկ չառնելու, նիւթական նպաստներ բաժանելու և այլն[2]), սակայն հայերն ուշադրութիւն չդարձրին։ Նոյն իսկ Աբաս-Միրզան Թաւրիզում հրաժարական ողջունի ժամանակ գործ դրեց արևելեան ճոռոմաբանութեան բոլոր ծաղիկները, որպէս զի համոզէ Լազարեանին, որ իւր իշխանութիւնը չարութեամբ գործ չդնէ նրան յարած հայերի մտքերի վրայ ազդելու համար, և որ ներկայ գաղթականութիւնը հայերին ամենաթշուառ դրութեան մէջ պիտի ձգէ։ Սակայն Լազարեանը մնաց անդրդուելի, ուստի և՛ Աբբաս-Միրզան դիմեց ուրիշ միջոցի. նա մեղադրեց Լազարեանին, իբր թէ նա բռնութեամբ է գաղթեցնում և Մահմէտ Թաքիր խանին ուղարկեց, որ վերահսկէ։ Լազարեանն էլ առնելով իւր հետ Ուրմիոյ Ասկէր խան կուսակալի որդուն և անգլիացիների գործակալ Վիլլոկին, ինչպէս և միքանի այլ անձնաւորութիւններ, շտապով գնաց հասաւ Խոյից մի մղոն հեռաւորութեան վրայ գտնուող գաղթականների խմբին և հարցրեց, թէ ինքնակամ են գաղթում, թէ բռնի։ Հայերը միաբերան պատասխանեցին, թէ ինքնակամ և թէ «մեզ աւելի լաւ է ուտել ռուսների խոտը, քան թէ պարսիկների հացը»։ Եւ այս վկայութիւնը վաւերացնելով՝ Լազարեանը հաղորդեց Աբբաս-Միրզին։

1) Նկար. Գաղթ. Հայոց, եր. 81.
2) Акты археогр. Ком. т. VII. եր. 620.

*Մի մեծ արգելք էլ պիտի համարել այն, որ տեղական Թուրքերը, մանաւանդ քրդերը, մոլեգնութեամբ էին նայում հայ գաղթողներին, որոնց դառն վաստակը երկար դարեր յափշտակել, վայելել էին, ուստի և՛ սաստիկ հայհոյում էին, քարեր ձգում սրանց վրայ և նոյն իսկ յարմար դէպքերում յարձակւում, կոտորում, թալանում և յետ էին դարձնում։ Պարսից կառավարութիւնը այս բոլորը թոյլ էր տալիս, յուսալով, որ գուցէ սրանց սպառնալիքը յետ պահէ հայերին, սակայն այս ևս չազդեց, Լազարեանը զօրք խնդրեց Պանկրատև զօրապետից և պաշտպանեց գաղթողներին* 1)։

*Սակայն այն ինչ չկարողացան անել պարսից սպառնալիքներն ու խոստումները, արաւ մի հայ եպիսկոպոսի քարոզութիւնը։ Սա Սալմաստի ս. Բարդուղիմէոս վանքի վանահայր Իսրայէլ եպիսկոպոսն էր, որ այս գաղթականութիւնն ազգակործան էր անուանում և քարոզում էր չգաղթել։ Նրա քարոզները շատերին յետ պահեցին գաղթելուց։ Ներսէս արք-եպիսկոպոսը իմանալով այդ՝ դիմեց միքանի միջոցների նրան էջմիածին բերել տալու, սակայն չկարողացաւ յաջողացնել, նրա դէմ յուզուած բողոքեց նաև Պասկևիչը Եփրեմ կաթուղիկոսին, որպէսզի նրան կարգալուծ անէ, սակայն նա արդէն հասել էր իւր նպատակին և միքանի հազար գերդաստաններ յետ էին կացել գաղթելու մտադրութիւնից։*

*Լազարեանը ոչ միայն անձամբ շրջեց շատ ու շատ գիւղեր, համոզելով ժողովրդին գաղթելու, այլ և բաւականաչափ օգնականներ ընտրեց՝ գործը կանոնաւոր կերպով ղեկավարելու։ Սրանցից նշանաւոր էին. փոխ-գնդապետ իշխ. Մովսէս Զաքարեան Երկայնաբազուկ-Արղութեանը, Իսահակ Տէր Առաքելեան Ղամազեանը, Էնակոլոփեանը, Շարոյեանը, սպաներ՝ Դաւիթ և Աղէքսանդր Ստեփանեան Ղորղանեանները, Շաղուբաթեանը, Մելիք-Շահնազարեանը, Մելիք-Եուսուֆեանը և ուրիշներ։ Կային նաև միքանի օտարազգիներ, որոնցից շատերը հայագէտ էին։ Մեծապէս օգնեցին գործին իրենց քարոզութեամբ Ենովքեան Ստեփանոս եպիսկոպոսը, Ղարաբաղցի Նիկողայոս վարդապետը, Գրիգոր վարդապետը և միքանի քահանաներ։*

*Գաղթականները խումբ խումբ ճանապարհ ընկան 1828 թ. փետրուարի վերջից, սակայն առաջին մեծ խումբը շարժուեցաւ Մարտի 16-ին։ Մեծ մասը գնում էր հետի, մանր երեխաներին և միքանի օրուայ պաշար շալակած։ Շատ քչերն ունէին գրաստներ և սայլեր, որովհետև երկիրը դեռ ևս ձիւնապատ լինելով անա-*

1) Потто. Кавказская война. т. III стр. 731.

տուններն ուտեստ չէր ճարւում։ Ամէն մի խումբ, որ բաղկացած էր միքանի հարիւր հոգուց, ունէր մի վերահսկող և միքանի պահապան զինուորներ։ Վերահսկողներից շատերը մարդասիրութեամբ էին վարւում խեղճերի հետ, շատ անգամ իրենց ձիերը տալիս էին թոյլ կանանց ու երեխաների ու իրենք հետի էին գնում։ Աստիճանաւոր Շարոյեանը իւր հաշւով 100 սոմար հաց գնեց Նախիջևանում և բաժանեց խեղճերին։

Զափազանց սրտաշարժ և սրտաճմլիկ էր նրանց հրաժարականը ծննդավայրերին և ուխտատեղի վանքերին՝ ինչպիսի են Դերէկի ս. Աստուածածին և Աղբակու սուրբ Բարդուղիմէոսի վանքերը [1]։

Շատ հանդարտ էին առաջ շարժւում, մի օր գալիս էին, երեք օր հանգստանում։

Վերջապէս անցան Արաքսը և հասան Նախիջևան, սակայն այստեղ հացի սաստիկ պակասութիւն զգացւեց և խեղճ գաղթականները կարծես սովամահ պիտի լինէին, երբ Լազարեանը Խոյից ուղացաւ այստեղ մայիսի 19-ին և Թիֆլիսեցի մի հայից 2000 ոսկի փոխ առնելով բաժանեց գաղթականներին ու ազատեց նրանց սովից [2]։ Ցետոյ Լազարեան դիմեց Երևանի «գաղթականութեան յանձնաժողովին», փութացնելու օգնութիւնը, սակայն նա պատասխանեց, որ հաց չճարուելու պատճառով չեն կարող օգնել, և որ պէտք է գաղթականներին յետ պահել մինչև նոր հացի հունձը, ապա թէ ոչ նրանք կարող են սովամահ լինել ռուսաց սահմաններում։ Սակայն արդէն ուշ էր, գաղթականներն արդէն ճանապարհ էին ընկած, ուստի և չափազանց մեծ նեղութիւններ կրեցին, մանաւանդ երբ վրայ հասան անձրևաբեր աշունն ու սաստիկ ձմեռը, երբ գաղթականների մեծ մասը դեռ ևս չունէին բնակարաններ և ոչ էլ ապրուստի միջոց. 45,000 գաղթականներից երկու տարուայ ընթացքում մեռան մօտ 10,000 հոգի, շատերն էլ վերջին յուսահատութեան հասան։ Պետութեան տուած նպաստը ընդամէնը կազմում է 84,000 ր. որից 44,000 ր. բաժանել էր Լազարեանը, 40,000 էլ գաղթականութեան յանձնաժողովը, այնպէս որ ամեն մի մարդու հասել է հազիւ երկու րուբլի, այն էլ տասը տարուց յետոյ վերադարձնելու պայմանով [3]։

Լազարեանի Պասկևիչին մատուցած տեղեկագրից երևում է, որ գաղթողների ընդհանուր թիւը եղել է 8249 ընտանիք, որ մօ-

---

[1]) Քաջբերունի. Ճանապարհորդական նկատողութիւնք. Արարատ 1892 թ. № 3. եր. 214.

[2]) Նկար գաղթ. հայոց եր. 64.

[3]) Երիցեան. յ. գ. եր. 336.

տաւորապէս կազմում է 45,000 հոգի, որից մօտ 10,000 հոգին երկու տարուայ ընթացքում պակասել են։ Այս գաղթականները եկել են Թաւրիզ քաղաքից և Ուրմիայի, Սալմաստի, Խոյի, Մարաղայի և մասամբ Խաղպինի խանութիւններից։ Ռուս կառավարութեան 1829—1381 թուին կազմած աշխարհագիրը ցոյց է տալիս, որ այս գաղթականները վերաբնակուել են.

| | Գերդաստ. | հոգի. |
|---|---|---|
| Երևան քաղաքում | 366 | 1,715 |
| Երևանի 10 մահալներում | 4,193 | 21,853 |
| Նախիջևան քաղաքում | 265 | 1,110 |
| Նախիջևանի 4 մահալներում | 1,872 | 9,542 |
| Օրդուբատ քաղաքում | 36 | 182 |
| Օրդուբատի շրջակայքում | 214 | 1,158 |
| | 6,946 | 35,560 |

Բացի սրանցից մի փոքրիկ խումբ էլ վերաբնակուել է Ղարաբաղում։



# ՆԱԽԻՋԵՒԱՆԻ
## ՌՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ
## ԿԱՄ
# ՆԱԽՃԱՒԱՆ

Ե. ԼԱԼԱՅԵԱՆԻ

Պարսկահայոց գաղթականութիւնը [1]) նորից զօրեղացրեց Նախիջեւանի ոստիկանական շրջանում արդէն մարող հայկական տարրը, որ այնուհետև շնորհիւ տիրապետող խաղաղութեան և ապահովութեան, սկսեց տնտեսապէս բարգաւաճել և ենթարկուել խաղաղ կուլտուրական զարգացման։ Կարճ միջոցում շինուեցան բաւականաչափ ջրանցքներ, երկիրը ծածկուեց խաղողի բազմաթիւ այգիներով, հացահատիկների և բամբակի արտերով, հարթուեցան ճանապարհներ և հաստատուեցան փոստային հաղորդակցութեան, ապրանքների տեղափոխութեան գրասենեակներ, արդիւնաբերական զանազան ընկերակցութիւններ, սկսեց ծաղկել թէ ներքին և թէ արտաքին վաճառականութիւնը. Նախկին խաչագողները վաճառականական յարաբերութիւններ սկսեցին մի կողմից Մոսկուայի, Լոձի, Նիժնի-Նովգորոդի և միւս կողմից Թաւրիզի, Թէհրանի և այլ քաղաքների հետ։

Նախիջեւանի շուկան սկսեց հետզհետէ մեծանալ և ռուսական ու պարսկական ապրանքների փոխանակութեան կենտրոն դառնալ, երևացին բաւական մեծ ումար և վարկ ունեցող վաճառականներ, բացուեցան պետական և հայկական դպրոցներ, պարսկական ազդեցութիւնը սկսեց թուլանալ, եւրոպական հանդերձների, սարք ու կարգի հետ սկսեցին թափանցել եւրոպական գաղափարներ, բացուեցան լայն, կանոնաւոր փողոցներ, շինուե-

---

[1]) Ազգ. Հանդէս գիրք XIII

ցան հասարակական զբօսավայրեր, ժողովարան, մի և երկյարկանի կանոնաւոր, փողոցի վրայ նայող և ոչ ցեխի պատի յետևում թաքնուած տներ։ Կանացի դասը ազատուեց հարեմական փակուած դրութիւնից, սկսեց յաճախել դպրոց, երևալ զբօսավայրում, քիչ քիչ հետաքրքրուել հասարակական հարցերով։ Նոր սերունդը դիմեց օտար քաղաքներ՝ միջնակարգ և բարձրագոյն կրթութիւն ստանալու։

Սակայն յանկարծ հայ-թուրքական եղբայրասպան ընդհարումը (1905 թ. Մայիսի 13-ին) եկաւ նորից քայքայելու ժողովրդի տնտեսական դրութիւնը և յամրացնելու խաղաղ կուլտուրական զարգացումը [1]։

Կրօնական զարգացում.—Նախճաւանի կրօնական զարգացման վերաբերութեամբ մեր պատմագիրները միմիայն մի քանի, հատուկտոր ու անկապ տեղեկութիւններ են տուել, որոնց ամփոփելով տեսնում ենք, որ այստեղ հաստատուած է եղել Մարտպետական, կամ Ոստանի, կամ Սեփական գնդի և կամ լոկ Նախճաւանու կոչուած եպիսկոպոսական աթոռ, որ Ս. Գրիգորից կարգուած է եղել «յառաջին բարձի ի ձախմէն», որից բարձր եղել է միայն աջակողմեան նախագահը, որ այն ժամանակ եղել է Հարքայ, իսկ յետոյ Տարօնոյ եպիսկոպոսը, որպէս կաթուղիկոսի աթոռակալ։ Սակայն յետոյ շատ ժողովներում այս եպիսկոպոսը համարուել է առաջինը[2]), իսկ մի քանիսում առաջնին մօտիկ։ Է. դարու սկզբին, Աբրահամ կաթուղիկոսի ժամանակ, երբ վրացիները բաժանուել են Հայերից. «Ետուն զմետրապօլտութիւն Մարդպետական եպիսկոպոսին Թէոդորոսի», ապա և նորա «հպարտացեալ եպիսկոպոսունս ընդ ձեռամբ լինել… յորմէ երկուցեալ Հայոց…առին ի նմանէ և (ետուն առաջնորդացն Սիւնեաց, ըստ որում նոքա) և յառաջին հարցն նոյն պատուով (էին) կոչեցեալ [3])»։

Թէպէտ և Օրբելեանն այսպէս է ասում, սակայն և այնպէս տեսնում ենք, որ Սիոն կաթուղիկոսի ժողովում Գէորգ Ոստան

---

[1]) Երկար տատանումից յետոյ ես որոշեցի չնկարագրել այս ընդհարումը, որովհետև նախ ինքս ականատես չեղայ, ես՝ ճանապարհին էի, երբ սկսեց կոտորածը, ուստի և յետ դարձայ գնացի Նոր-Բայազէտ, երկրորդ՝ դեռ ևս սրա բուն պատճառները, տուած զոհերը և ունեցած հետևանքները լիովին և ճիշտ որոշելու հնարաւորութիւն չկայ, քանի որ սա դեռ ևս պատմութեան սեպհականութիւն չէ դարձել, և երրորդ՝ դեռ այնքան թարմ է սրա ազդեցութիւնը, որ հազիւ թէ կարելի լինի օբէկտիւ կերպով քննել։

[2]) Ինճիճեան. եր. 220.

[3]) Ստեփ. Օրբելեան. գլ. ԻԴ.

եպիսկոպոսը յիշւում է կաթուղիկոսից անմիջապէս յետոյ, ինչպէս և դրանից առաջ Մանազկերտի ժողովում Թադէոս Ոստան եպիսկոպոսը։ Հաւանական է, որ այս եպիսկոպոսութիւնը իւր առաջնորդութիւնը կորցրած լինի այն ժամանակ, երբ վերացել է մարտպետական նախարարութիւնը կամ պաշտօնը։

Ժ. դարում այս աթոռը տեղափոխուել է Մարդաստան գաւառի Հսմբոյրազան աւանը,[1] որ հաւանականօրէն գտնուել է Մադարդայ Նախավկայի վանքի մօտ, որի անունով և եպիսկոպոս յիշւում է այդ Ժ. դարի կիսին։

Այս եպիսկոպոսներից Ինճիճեան և Ալիշան հայրերը յիշատակուած են գտել մեր մատենագրների մէջ հետևեալներին.

365 Բաջաջ.
450 Երեմիա.
510 Ներսէս
553 Գրիգոր.
570 Յովհաննէս.
605 Թէոդորոս.
632 Յովհաննէս
688 Թադէոս.
768 Գէորգ.
850 Սահակ, եղբայր Ապուսահակ Նահատակին.
976 Բարգէն.
1175 Խաչիկ.
1321 Զաքարիա.
1541 Աթանաս.
1544 Կարապետ.
1660 Առաքել Բոպիկ.
1706 Յակոբ.

1837 թուից Նախիջևանում բացուել է հոգևոր կառավարութիւն և հաստատուել յաջորդութիւն՝ ենթարկուած Երևանի թեմի առաջնորդութեան։

Նախիջևանի ոստիկանական շրջանը տուել է նաև միքանի աչքի ընկնող հոգևորականներ, ինչպէս Ա. Սուքիաս արքեպիսկոպոս Պարզեան, որ երկար ժամանակ եղել է Երևանի թեմի առաջնորդական փոխանորդ, 6000 ր. յատկացրել է հայ մատենագիրների հրատարակութեանը և այլն. Բ. Մեսրոպ արքեպիսկոպոս Սմբատեան, որ Շամախու թեմի առաջնորդական և այլ պաշտօններ վարելուց զատ՝ պարապել է հնախօսութեամբ, յայտնագործել

[1]) Թովմա Արծրունի. գ. 7.

20 սեպաձև արձանագրութիւններ և կազմել Գեղարքունի գաւառի, Շամախու թեմի և Երնջակայ գաւառակի նկարագրութիւնը։ Գ. Սահակ աւագ քահանայ Սահակեան, որ ստացել է բարձրագոյն կրթութիւն և յայտնի է իւր կազմած կրօնի դասագրքերով։

**Մտաւոր զարգացում.** Նախճաւանը մտաւոր զարգացմամբ բաւական յետ է մնացած՝ համեմատելով Գողթնի հետ։ Բացի սրանից՝ այստեղի բնիկ ժողովուրդը, ինչպէս աստապատցիները, եարմջեցիների մի մասը և այլն, համեմատաբար աւելի բարձր են մտաւորապէս՝ քան Սալմաստի գաղթականները և սրանք աւելի քան խոյեցիները։

Կարծում եմ, որ այս երևոյթը կարելի է բացատրել նրանով, որ սրանք մինչև այս միևնոյն գաւառում համախմբուելը ոչ հաւասար մտաւոր զարգացման են եղել։ Գողթն ու Նախճաւանը շնորհիւ այն մեծ վաճառականութեան, որ վարել են անցեալում, շատ աւելի բարձր քաղաքակրթութեան են հասել, քան Սալմաստըն ու Խոյը, այս պատճառով և՛ չնայելով որ վերջիններս անհամեմատ բազմաթիւ են, այնուամենայնիւ չեն կարողացել ձուլել իրենց մէջ այս երկու բնիկ փոքրաթիւ ժողովուրդներին, որոնք այս հոծ գաղթականութեան մէջ մնացել են որպէս առանձնացած օազիսներ։

Մեր ծրագրից դուրս է ծանրանալ այս կէտի վրայ[1]), ուստի և ստիպուած ենք շատանալ ասելով, որ միակ գրական դէմքը, որ տուել է այս գաւառակը՝ Մանուկ Աբեղեանն է, յայտնի իւր «Հայ ժողովրդական հաւատքը» (գերմաներէն լեզուով), «Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմութեան մէջ», «Ժողովրդական խաղեր» «Հայ ժողովրդական վէպը» և այլ աշխատութիւններով։

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ

Այժմեան Նախիջևանի կամ Ալիապատի ոստիկանական շրջանը բաղկանում է 31 գիւղերից, բաժանուած երեք գիւղական հասարակութիւնների՝ Շխմահմուտի (14 գիւղ), Թմբուլի (9 գիւղ), և Կվրաղի (8 գիւղ)։ Սրանցից առաջին երկուսի բնակիչները հայեր և թուրքեր են, իսկ վերջինինը՝ թուրքեր և քրդեր։ Զուտ հայաբնակ գիւղերի թիւն է՝ 12. զուտ թրքաբնակը՝ 13, հայ և թուրք խառն՝ 5. թուրք և քուրդ 1։

[1]) Եւ եթէ այդ արինք Գողթան գաւառը նկարագրելիս՝ ենթարկուեցանք մամուլի խիստ յարձակման։

Ամբողջ շրջանի բնակիչների թիւը[1]), չհաշուած քաղաքինը, համնում է ընդամէնը 24,977 հոգու, որից 13,156 արական, 11,823 իգական։ Ըստ ազգութեան՝

Հայեր 6,562 ար, 6,098 իգ. 12,660 հոգի 50,7 %
Թուրքեր 6,247 ար. 6,452 իգ. 11,699 հոգի 46.8 %
Քրդեր՝ 347 ար. 273 իգ. 620 հոգի 2,5 %

Նախիջեւան քաղաքը.—Այս ոստիկանական շրջանի, ինչպէս նաև ամբողջ գաւառի, կենտրոն համարւում է Նախիջեւան քաղաքը, որ սփռուած է Արաքսից 8 վերստ դէպի արեւմուտք, 39°12' հիւսիսային լայնութեան և 73°6' արեւելեան երկարութեան աստիճանների տակ, Ղարաչուղ լերան գառիվայրի վրայ, որ ծովի մակերեւոյթից 2875 ոտնաչափ բարձրութիւն ունի։ Քաղաքը հնումը անհամեմատ աւելի մեծ տարածութիւն է բռնել, իսկ այժմ տեղաւորուած է միայն 136 դես. 1440 ք. ս. տարածութեան վրայ։ Քաղաքի գրեթէ մէջ տեղով անցնում է մի ջրանցք, որ սկիզբն է առնում մի վերստ հեռու գտնուող Նախիջևան-գետից։ Սա քաղաքը բաժանում է 2 ոստիկանական մասերի։ Բացի ջրանցքի ջրից, քաղաքը օգտւում է նաև տասը աղբիւրներից, որոնցից միայն երկուսի ջուրը քաղցրահամ է։

Քաղաքի հարաւային մասում երբեմն բարձրացել է մի ամրոց, որի կիսակործան պարիսպներն են մնում այժմ։ Սրա շրջապատը համնում է մօտ 1½ վերստի։ Սրա մօտ են գտնւում հին քաղաքի աւերակներից Խանի աշտարակը, սրանից ձախ՝ Աթաբէգների պալատի դարպասը, որից շատ չնչին բան է մնացել։ Այս դարպասի երկու կողմը բարձրանում են երկու աղիւսակերտ մինարէներ, ապակեպատ աղիւսներով գրուագուած; և դրան վերև մեծ, կապտագոյն արաբական տառերով գրուած է մի արձանագրութիւն, որ Ս. Պետերբուրգի Գիտութիւնների ճեմարանի անդամ Ֆրանը այսպէս է թարգմանել. Իմաստուն, արդար, օգոստափառ թագաւոր եւ աթաբէկ Աբունասաֆար Մուհամմէդ, որդի Ելտըկուզ աթաբէկի, որի գերեզմանը լուսաւորէ Աստուած[2])։

Միւս արձանագրութիւնը։

Եւ գործակալն Նուրէտտին ճեճելապետ եւ հարկահան Աթաբէկի վինակների շինեց. Աճեամ Էպիւպէքրի որդի, Նախճաւանի ճարտարապետ։

Սրանից փոքր ինչ հեռու բարձրանում է Աթաբէգների գըմ-

---

[1]) Վիճակագրական մանրամասն տեղեկութիւններ լինելու են յետոյ ամբողջ գաւառի մասին մի անգամից։

[2]) Bulletin scientifique publié par l'Académie № 1. II. Vol. 1837.

*բէթ (Աթաբէկ քիւմբէզի) կոչուած աշտարակը, որ մի գեղեցիկ շիրիմ է։*

*Սա նմանւում է տասներկու անկիւնանի կամ 12 տափակ խորանաձև կողմերով և քանդակազարդ շրջանակով մի մեծ աշտարակի, որ 96 ոտնաչափ շրջապատ և 70 ոտնաչափ բարձրութիւն ունի։ Երեսները գոյնզգոյն և զանազանակերպ աղիւսներով ծածկուած են, և շուրջը կայ մի բարձրաքանդակ, 1¼ արշին երկարութեան տառերով գրուածք, որից պ. Ֆրաննը թարգմանել է միայն մի քանի հատուած։*

Փառքն աշխարհի եւ կրօնի, որին ամենաբարձրեալ Աստուածը ողորմի.—յանուն ամենաբարի, ամենաողորմած Աստուծոյ.—պատուիրեց այս շիրմի շինութիւնը իմաստուն՝ արդար, աստուածապահ, յաղթող, մեծ թագաւոր Շեմսէդ-դին.—ճառացոյ արեգակն ու իսլամի եւ մսլիմանների օժանդակը [1]։

*Այս երկու արձանագրութիւնների մէջ յիշուած անձնաւորութիւններից առաջինը Ատրպատականի երկրորդ Աթաբէկն է, Ելտկուզի որդին, որ թագաւորել է 1146—1225 թւականը, Աբու-Ջաֆար Մուհամէդը կառավարել է 1172 մինչև 1186 թ.։ Շէմշէդինը, որի մասին խօսւում է երկրորդ արձանագրութեան մէջ, ըստ պ. Ֆրաննի Ելտկուզը ինքը պիտի լինի, որ այդ մականունն է կրել։ Նրա թագաւորութիւնը տևել է 1146 մինչև 1172 թ. [2])։*

*Այսպէս ուրեմն, Նախիջևանի ամենագեղեցիկ շէնքերը ԺԲ և մասամբ ԺԳ դարերի գործ են։*

---

1) *Այս աշտարակի շրջադրուակի (կարնիզի) տակ կա եղել է մի ընդարձակ արձանագրութիւն, որից միայն կտորներ են մնացել. Իւանիկովը 1850 թ. կարդալով այս կտորները եկել է այն եզրակացութեան, թէ այդ արձանագրութիւնը մի աղօթք է՝ կազմուած Ղուրանի համարեա բոլոր գլուխների սկզբում դրուած խոբագրից, III գլխի 15, 16 և 17 տան սկզբից ու ամբողջ* CXII *գլխից։ Ահա այդ աղօթքը իւր ամբողջութեամբ. Յանուն ողորմած և գթած Աստուծոյ։ Համբերողներ, ճշմարտութիւն խօսողներ, աղօթողներ, ողորմողներ և ողորմելու համար Աստծուն առաւօտեան աղօթքներ վերառաքողներ, Աստուած վկայում է. Չկայ ուրիշ Աստուած, բացի իրենից և հրեշտակները, և իմաստունները, և ճշմարտասէրները կրկնում են. Չկայ Աստուած բացի նրանից, ամենազօրից ու ամենայն ինչ ստեղծողից։ Յանուն ճշմարտութեան առաջի Աստուծոյ չկայ ուրիշ կրօն, բացի Իսլամը։ Ա. ս. Աստուած մի է, նա Աստուած է յաւիտենական, նա ոչինչ չէ ծնել և ինքը չէ ծնուել, նրա նմանը չկայ. Ո՛վ Աստուած։* («Кавказъ» *1850 № 76 և 1851 № 36*).

1) D. de Montpereux. Voyage autour du Caucase. Paris, *1840. հատ.* IV. *եր. 12։*



Араратъ. Արարատ. Ararat.

Գեղեցիկ շէնքերից մինն էլ մի մեծ մզկիթ էր, որ կիսաւեր դրութեամբ մնում էր մինչև 1890-ական թուականները, երբ գաւառապետը հիմնովին քանդել տուեց, երկիւղ կրելով որ մի գուցէ յանկարծակի քանդուի և վնասներ պատճառի։

Սակայն հնագիտական յիշատակարաններից ամենահինը Նոյի գերեզմանն է, որ բարձրանում է հին Նախիջևանի քաղաքամասում, շրջապատուած բազմաթիւ շէնքերի որմնապատերով, և մի ընդարձակ գերեզմանատնով։

Սա 10 ոտնաչափ տրամագծով ութանկիւնի մի շէնք է, գմբեթածածք, մէջտեղում մի սիւն։ Ունի մի ցածր դուռ։ Ոչ միայն հայերը, այլ և հրէաներն ու մահմեդականները հաւատում են այս աւանդութեան և յաճախ, մանաւանդ զատկի մեռելոցին, ուխտ գալիս այստեղ։

Աւանդութիւնը ցոյց է տալիս նաև Նոյի քրոջ գերեզմանը այստեղից փոքր ինչ հեռու մի բլրի գագաթին.—սա քարերի մի կոյտ է և մի աղիւսէ պատ, որ համարւում է մատուռի մնացորդ։

Նոյի գերեզմանից փոքր ինչ հեռու կան մի քանի գետնափոր սենեակներ, մի մի դռնով, որի մէջ թուրքերը պահում էին ննջեցեալներին՝ մի առ ժամանակից յետոյ Քեարբալի ուխտատեղին ուղարկելու համար։ Սրանց մօտ է նաև մի ուրիշ ստորերկրեայ անցք, որ բաւականաչափ ձգւում է դէպի Նախճաւան—գետը։ Սա թերևս հնումը իբր ջրի ծածուկ ճանապարհ է ծառայել պաշարման դէպքում։

Նոր քաղաքամասը, որ տարածւում է այստեղից դէպի արևմուտք, դարձեալ կրում է պարսկական քաղաքի տեսք.—փողոցները նեղ, առանց մայթերի, վերին աստիճանի կեղտոտ ու ցեխոտ, տները թաքնուած ցեխի պատերի յետև, մի յարկանի, տափակ կտուրներով, փոքր պատուհաններով և կեղտոտ գաւիթներով։ Միակ բացառութիւնը արևմտեան ծայրում բարձրացող քաղաքային այգին և նրա շուրջը ձգւող մի երկու փողոցներն ու մի քանի տներն են։ Քաղաքային այգին կառուցուած է 1872 թ. Աւգակով գաւառապետի ջանքերով թրքաց հին գերեզմանատեղում, ունի շատ բարձր և սաղարթախիտ չինարի, ակացիա, սօսի, փշատի և այլ ծառեր. կայ ռոտոնտա, բուֆէտ և զանազան խաղեր խաղալու յարմարութիւններ։ Ամառը շաբաթական միքանի անգամ նուագում է այստեղ զինուորական երաժշտական խումբը։ Այգուց գեղեցիկ կերպով երևում է ձիւնափառ Արարատը։

Այգու արևմտեան ծայրում բարձրանում է սրբատաշ քարով շինուած ռուսաց փոքրիկ, բաւական գեղեցիկ եկեղեցին, իսկ

արեւելեան կողմը. բաւական ցած, կանգնած է նոյնպէս բաւական գեղեցիկ, կարմիր, սրբատաշ քարից շինուած հայոց գմբէթազարդ, Ս. Գէորգ եկեղեցին, որի գաւթում գտնւում են հայոց յաջորդարանը, դպրոցը և նախանցեալ տարի Մեսրովբ վարդապետ Տէր Մովսիսեանի եռանդուն ջանքով կառուցուած խանութները։

Մի ուրիշ եկեղեցի էլ Ս. Երրորդութեան անունով բարձրանում է այստեղից փոքրինչ հեռու, այն հին եկեղեցու տեղում, ուր Կաշմ զօրապետը 705 թուին այրեց հայ նախարարներին։ Ճարտարապետական տեսակէտից սա առանձին նշանակութիւն չունի։

Կան նաև միքանի մզկիթներ, որոնցից նշանաւոր են երկուսը՝ բարձր մինարէներով։

Քաղաքի գրեթէ կենտրոնում գտնւում է շուկան, բաւականաչափ խանութներով, որը, սակայն, կրակի ճարակ դարձաւ թուրք հայկական ընդհարումների ժամանակ։

Քաղաքը շրջապատուած է խաղողի բազմաթիւ այգիներով, որոնց ոռոգելու համար քաղաքի հիւսիսային կողմում դեռ պարսից տիրապետութեան ժամանակ շինուած է եղել մի լճակ. վաթսունական թուականներին Շանգիրէյ գաւառապետի ջանքով այս լճակը վերանորոգուել է, սակայն այժմ դարձեալ աննախանձելի դրութեան մէջ է գտնւում։

Բացի անառողջ կլիմայից, Նախիջևանը ունի նաև բազմաթիւ դեղին և սև կարիճներ, մորմ (փալանգ), մոծակներ և միքանի մանրադիտական միջատներ, որոնք թունաւորում են կեանքը գարնան և ամռան ընթացքում։

Քաղաքի արևելեան կողմում գտնւում էին Մեծ և Փոքր Հաճիվար գիւղերը, որոնք այժմ միացած են քաղաքի հետ և կազմում են նրա թաղերը։ Մեծ Հաճիվար գիւղում մի տասն և հինգ տարի առաջ բաւականաչափ հայեր կային, որոնք, նեղուելով թուրքերից, տեղափոխուել են Նախիջևան։ Փոքր Հաճիվարում, որ նոյնպէս Թազաքենտ է կոչւում, բոլորն էլ հայեր են, 71 տուն, 109 ար. 99 իգ. ի միասին՝ 208 հոգի։

Քաղաքում կայ պետական քաղաքային չորս դասարանեան, հայոց եկեղեցական-ծխական երկսեռ և մի թուրքաց քաղաքային դպրոցներ։ Կայ նաև գաւառական բոլոր հիմնարկութիւնները՝ ոստիկանատուն, հաշտարար դատարան, պետական գանձարան, պօստ-հեռագրատուն, պօստային կայարան, ինչպէս նաև մի ժողովարան, մի հիւրանոց և մի քանի սաստիկ կեղտոտ բաղանիքներ։

*Բնակիչների մեծագոյն մասը շիա պարսիկներ են, իսկ փոքրագոյնը՝ լուսաւորչական հայեր, սրանք էլ մեծ մասամբ Սալմաստի գաղթականներ, միքանի տուն էլ ընիկներ: Բոլոր բնակիչների թիւը՝ 1906 թուի սկզբին եղել է 4698 ար. 4104 իգ. ի միասին՝ 8802 հոգի, որից՝*

| | | | | |
|---|---|---|---|---|
| Հայեր | 1270 ար. | 1084 իգ. | ի միասին՝ | 2354 հոգի |
| Ռուսներ | 124 ար. | 116 իգ. | ի միասին | 240 հոգի |
| Եւրոպացիներ | 3 ար. | — իգ. | ի միասին | 3 հոգի |
| Քաղդէացիներ. | 15 ար. | 5 իգ. | ի միասին | 20 հոգի |
| Պարսիկներ | 3286 ար. | 2899 իգ. | ի միասին | 6185 հոգի [1]) |

*Թուրքերը պարապում են այգեգործութեամբ, մանր արհեստներով և մասամբ գորգերի առևտրով, որ բերում են Պարսկաստանից: Հայերը՝ առաւելապէս առևտրով, այգեգործութեամբ, գինեգործութեամբ և արհեստներով:*

**Նախիջեւանից դէպի հարաւ գտնուող գիւղերը.—** *Նախիջևանից դէպի արևմտահարաւ երկու վերստ հեռաւորութեամբ գտնւում է Այլաբատ գիւղը, (63°3′46″—39°13′48″) որի արևելեան կողմում տարածւում է մի ընդարձակ դաշտ՝ ծածկուած վարունգի, սեխի, ձմերուկի բոստաններով, իսկ միւս երեք կողմը պատած է փոքրիկ բլրակներով: Գիւղում առանձին ուշադրութեան արժանի ոչինչ չկայ: Ունին մի հասարակ եկեղեցի և նրա գաւթում հայոց ծխական դպրոցի մի խարխուլ շէնք: Յաճախ Նախիջևանի ոստիկանական շրջանը այս գիւղի անունով է կոչւում, թէպէտ և ոստիկանը այս գիւղում չի բնակւում, այլ քաղաքում:*

*Բնակիչները բոլորն էլ հայեր են 103 տուն, 303 ար. 281 իգ. ի միասին՝ 584 հոգի: Պարապում են պարտիզպանութեամբ, երկրագործութեամբ և այգեպանութեամբ. ունին 179 դ. 2200 ք. ս. վարելահող, 63 դ. 103 ք. ս. այգի. 88 դ. 203 ք. ս. արօտատեղի, 1 դ. 1680 ք. ս. մարգագետին:*

*Մեծ Հաջիվարից հազիւ երկու վերստ դէպի հարաւ, նոյն դաշտի վրայ, փռուած է* Շաֆարապատ *գիւղը, (63°6′2″—39°11′43″) որ բռնում է միայն 3 դ. 2140 ք. ս. տարածութիւն: Գիւղում ուշադրութեան արժանի ոչինչ չկայ. բնակիչները թուրքեր են,*

---

[1]) *Բոլոր վիճակագրական տեղեկութիւնները վերցրուած են Անդրկովկասեան Վիճակագրական ատեանից, վերաբերում են 1906 թուին, և դեռ ևս չեն հրատարակուած: Շնորհակալութիւն եմ յայտնում ատեանի աւագ խմբագրող պ. Պագիրևին, որ տուեց ինձ ձեռագիրները՝ օգտուելու:*

39 տուն, 138 ար. 112 իգ. ի միասին՝ 250 հոգի. ունին 475 դ. վարելահող և 26 դ. արօտատեղի։

Շաքարապատից դէպի արևմտահարաւ, մօտ 6 վերստ հեռու գտնւում է Կարախան բէկլու գիւղը (63°37'6"—39°11'23"), որ բռնում է 7 դեսեատին 240 ք. ս. տարածութիւն, և շրջապատուած է 37 դես. 1797 ք. ս. այգիներով։ Ունի մի քարաշէն եկեղեցի։ Բնակիչները հայեր են 192 տուն, 575 ար. 543 իգ. ի միասին 1118 հոգի։ Ունին 498 դ. 302 ք. ս. վարելահող և 95 դ. 199 ք. ս. արօտատեղի։

Այստեղից էլ դէպի արևմտահարաւ, գրեթէ Արաքսի ափին ընկած է Ղարաչուղ գիւղը (63°1'8"—39°10'37")։ Սա բաւական ընդարձակ է, բռնում է 18 դ. 1830 ք. ս. տարածութիւն։ Սա ևս ուշագրաւ ոչ մի բան չունի. բնակիչները Թուրքեր են. 118 տուն, 513 ար. 447 իգ. ի միասին 960 հոգի։

Ունին 490 դ. վարելահող, 1030 ք. ս. այգի, 523 դ. մարգագետին և 10255 դ. արօտատեղի։

Սրանից հազիւ մի վերստ դէպի արևելահարաւ ընկած է ուղիղ նրա կէս մեծութեան (9 դ. 528 ք. ս.) Բուլղան գիւղը (63°14'5"—39°10'10")։ Բնակիչները Թուրքեր են, 96 տուն, 451 ար. 389 իգ. ի միասին 840 հոգի։

Ունին 242 դ. 2310 ք. ս. վարելահող, 5 դ. 532 ք. ս. այգի և 66 դ. 2090 ք. ս. արօտատեղի։

Բուլղանի հանդէպ դէպի արևելք, ընկած են Ղօշա-դիզա (63°6'5"—39°10'24") փոքրիկ (5 դ. 1288 ք. ս.) աննշան գիւղը, որի մօտ 2 դ. 50 ք. ս. տարածութեամբ ձգւում է մի անտառ և 1 դ. 2064 ք. ս. այգիներ։ Բնակիչները Թուրքեր են, 81 տուն. 351 ար. 309 իգ. ի միասին 660 հոգի։ Ունին 593 դ. 1718 ք. ս. վարելահող և միայն 10 դ. 1200 ք. ս. արօտատեղի։

Ղօշադիզայից հազիւ 1/2 վերստ դէպի հարաւ արևմուտք, իսկ Նախիջևան քաղաքից միայն 4 վերստ հեռու միևնոյն դաշտավայրի վրայ փռուած է Թմբուլ գիւղը. (61°5'21"—39°10'8") որ հաւանօրէն հին Տամբաթ[1]) պիտի լինի։ Գիւղը, որ բռնում է 8 դ. 1884 ք. ս. տարածութիւն, շատ լաւ տպաւորութիւն է թողնում, որովհետև ունի բաւական լայն փողոցներ, եւրոպական ձևի մի և երկ·արկանի տներ, որոնցից շատերի առաջ կան պարտէզներ. եկեղեցին բաւական գեղեցիկ է, քարաշէն, շինական դատարանի շէնքը միանգամայն գոհացուցիչ։ Գիւղի մէջ գետ չկայ, այլ միայն չորս յորդահոս աղբիւրներ, որոնք բաւականութիւն են տա-

[1]) Ալիշան. Սիսական. եր. 504.



с. Тумбулъ Թմբուլ գիւղ Village de Toumboul

*ւլիս նաև այգիներին, իսկ արտերը ջրւում են Նախիջևանի-գետից բերուած մի քանի ջրանցքներով։ Գիւղը բաժանւում է երկու առանձին թաղերի, հայկական և թրքական։ Հողը կալուածատիրական է, պատկանում է Նախիջևանի նախկին խանի թոռանը, միայն մեծագոյն մասը բաշխուած է ժողովրդին, որի համար վճարում են բերքի 30-ից 4-ը։ Իսկ այգիների համար՝ իւրաքանչիւր փթատեղում (1/10 դես.) 40 կոպէկ։*

*Բնակիչները հայեր և թուրքեր են։ Հայերի փոքրագոյն մասը՝ 16 տուն, բնիկներ են, միացածը՝ 132 տուն՝ Սալմաստի Սաւրի գիւղից գաղթականներ։ Բնիկները միանգամայն ենթարկուել են գաղթականների ազդեցութեան, մոռացել են իրենց բարբառը, սովորութիւնները և ընդունել սաւրեցիներինը։ Գաղթականները, որ շատ աչքաբաց, ընդունակ և ճարպիկ մարդիկ են, թէ մտաւորապէս և թէ նիւթապէս բարձր են շրջակայ գիւղացիներից։ Սրանց մասին երկարօրէն կը խօսենք ազգաբնակութեան գըլխում, ուր և կը բացատրենք, թէ ինչու սրանց «խաչագող» են անուանում։*

*Թուրքերն էլ ենթարկուելով այս հայերի ազդեցութեան, շատ աւելի քաղաքակրթուած են, քան մօտակայ Նեհրամ գիւղի թուրքերը, որոնց մէջ հայեր բոլորովին չկան։*

*Ընդհանրապէս բոլոր բնակիչներն էլ պարապում են երկրագործութեամբ, այգեպանութեամբ, բամբակի մշակութեամբ և շերամապահութեամբ։ Թուրքերը պարապում են նաև անասնապահութեամբ, իսկ հայ գաղթականներն առևտրով թէ գիւղում, և թէ մանաւանդ Ռուսաստանի զանազան քաղաքներում։ Պատրաստի հագուստեղէնի առևտուրը սրանց և Եարմջեցոց սիրած պարապմունքն է համարւում։*

*Ունին 888 դ. 361 ք. ս. վարելահող, 40 դ. 1818 ք. ս. այգի, 12 դ. 2123 ք. ս. մարգագետին, 187 դ. 167 ք. ս. արօտատեղի։*

*Բոլոր բնակիչները կազմում են 196 տուն, 915 ար. 790 իգ. իմիասին՝ 1705 հոգի, որից հայերը 148 տուն են. 677 ար. 618 իգ. իմիասին 1295 հոգի, իսկ թուրքերը 48 տուն, 128 ար. 172 իգ. ի միասին՝ 410 հոգի։*

*Թմբուլից երկու վերստ դէպի արևմտահարաւ գտնւում է* Եամխանա *(ուտեստի-խան) կոչուած գիւղը։ (63°4′—39°8′39″)։ Տեղացիների ասելով գիւղը այս անունը կրում է այն պատճառով, որ մի ժամանակ Նախիջևանի խանի անասունների ուտեստը պահելու տեղն է եղել։ Գիւղը տարածւում է Նախիջևան չայի*

և Արաքսի միջավայրում, բռնում է 5 դ. 1500 ք. ս. տարածութիւն, ունի երկու յորդ աղբիւր։

Հողը ճահճային է, ուստի և բնակիչները տանջւում են ջերմով։ Գիւղի հողերը թէպէտ բաշխուած են գիւղացիների վրայ, սակայն պատկանում են Ղուլի-Խան Քալբալախանովին, այս պատճառով և բերքի $7^{1}/_{2}$-ից մէկը (ըստ տեղացիների 30-ից 4-ը) նա է ստանում. ընդամենը՝ 721 դեսեա. 2170 ք. ս. վարելահող, 38 դ. 1010 ք. ս. այգի, 1720 ք. ս. անտառ, 88 դ. 570 ք. ս. արօտատեղի ունին։ Բնակիչները հայեր և 2 տուն 11 ար. 8 իգ. թուրքեր են. ընդամէնը 138 տուն, 525 ար. 483 իգ. իմիասին 1008 հոգի։ Հայերը գաղթականներ են Սալմաստի Բանանիա, Սալմաստ, Սաւրի գիւղերից, ինչպէս նաև 2 տուն Աղբակից և 3 Ուրմիայից։ Բացի սովորական երկրագործութիւնն ու այգեպանութիւնը, սրանք պարապում են նաև շերամապահութեամբ և ցանում են բամբակ,՝ որ այս շրջանում ամենից լաւն է համարւում։

Գիւղի ծայրին գտնւում է պետական երկդասեան մի դպրոց հինգ ուսուցիչներով։

Եմիանայից $2^{1}/_{2}$ իսկ Նախիջևանից 12 վերստ դէպի հարաւ գտնւում է Աստապաս կամ Թագաւեանց գիւղը։ (63°4'11"—39°7'17") Սա հնումը բաւական նշանաւոր գիւղ է եղել, որի մասին յիշում է Թովմա Արծրունին՝ Խրամ աւանի տեղը որոշելիս, ասելով, թէ դա գտնւում է. «'ի ներքոյ Աստապատայ վանացն»։ Դա յիշւում է նաև Խաչիկ Ա. կաթուղիկոսի կոնդակի մէջ 976 թուին։ Յիշում է նաև Օրբելեանը, գիւղ կոչելով, որի մօտ ԺԲ. դարի կիսին Սիւնեաց Բարսեղ եպիսկոպոսը Ջորով Արաքս գետը անցնելիս՝ խեղդուել է. նրա մարմինը հանել և տարել են Մաղարդայ վանքը թաղել։ Հետզհետէ բարգաւաճելով՝ Աստապատը դարձել է գիւղաքաղաք։ ԺԴ. դարի վերջին միաբանողների հակառակորդ Մաղաքիա Ղրիմեցին այստեղ դպրոց է հաստատել Սարգիս վարդապետի տեսչութեան ներքոյ։ Այստեղ է եղել այն ժամանակները Տաթևացու աշակերտ Աւետիս վարդապետը։

ԺԷ. դարի սկզբին Շահ—Աբբասը գերի է տարել Աստապատի բնակիչներին Պարսկաստան, և Զաքարիա պատմչի ասելով իբր հարճ վերցրել է Նիւզէլ (գեղեցիկ) անունով աստապատցի մի հայ կին, որ յետոյ դարձել է իւր հայրենիքը և վանք է մտել, ապաշխարել։

Զղջալով Շահ-Աբբասի աւերածութեան, Աստապատը շնորհիւ իւր գերքի, շուտով վերականգնել է, և ԺԷ դարի կիսին Դաւեռնիէի ասելով, ներկայացնում էր մի փոքրիկ, գեղեցիկ քաղաք,

*ուր կային չորս կարաւանատուն, և որի ամէն մի տունը ունէր մի մի աղբիւր: Ջրի առատութիւնը դարձնում էր երկիրը գերազանց և մանաւանդ գինեւէտ:*

*Սա աշխարհի միակ երկիրն էր, որ արդիւնաբերում էր Ռոնաս* (Ronas) *կարմրաներկ արմատը, որով ներկում են կտաւները Պարսկաստանում և Հնդկաստանում* [1]*:*

*1656 թուին այստեղ մելիք* [2] *էր Մելիք Աստուածատուրը, իսկ Նադիր-շահի ժամանակ՝ Մելիք Բալումը, որ 1750 թուին «փայլէր հրեւլի իմն փառաւորութեամբ և ճոխութեամբ»: Սա ուրիշ հայ իշխանների հետ յիշեալ շահի հարկահաններից սաստիկ նեղութիւններ կրելով վախճանուել է և մելիքութիւնը թողել իւր Խաչատուր որդուն, որից անցել է թոռանը՝ Միքայէլին: 1815 թուին վերջինիս թոռները տեղափոխուել են Թիֆլիս:* [3]

*ԺԹ. դարի սկզբին գիւղը հետզհետէ աւերուելով, զրկուել է բնակիչներից, երբ վերջին հարուածը տուել է նրան Աբբաս-Միրզա թագաժառանգը, որ մնացած ժողովուրդներին տեղափոխել է փոքր ինչ հիւսիս, այժմեան Աստապատ կամ Թազաքենտ կոչուած տեղը և նրա տեղը շինել մի մեծ ամրոց, քառակուսի ընդարձակ պարսպներով և խրամով: Սակայն փոխանակ հիմքը հաստատուն անելու, վերի մասերը ծանրացրել էին մեծ քարերով, ուստի և շուտով սկսել էր քանդուել: Բերդը Աբբաս-Միրզի անունով վերակոչուել էր Աբբասապատ: 1827 թուի ռուս-պարսկական պատերազմին Ճիվանբուլաղի ճակատամարտից յետոյ յուլիսի 7-ին այս ամրոցն առանց պատերազմի անձնատուր եղաւ ռուսներին: Գլխաւորապէս բերդի դիրքը, և մասամբ նրա պարիսպների անկայունութիւնը պատճառ եղան, որ ռուսները անխնամ թողին բերդը. որ և շուտով աւերուեց:*

Աստապատ գիւղը *ընկնում է Նախիջևան չայի ձախ ափին, Զանգըլլու—սարի հարաւային կողմը և բռնում է 38 դ. 530 ք. ս. տարածութիւն: Ընդհանրապէս գիւղը զուրկ է կանոնաւոր փողոցներից, պատած է հողէ պարիսպներով, որոնց յետևում գտնւում են տները, որ բաղկացած են մի սնանի* տնից, խուցիկից *և* սրահից*: Մի քանիսն էլ ունեն մի մի կանոնաւոր սենեակ: Շատերի առաջ կան փոքրիկ պարտէզներ բարդի և պտղատու ծառերով: Գիւղը բաժանւում է երկու թաղի՝ արևմտեանը բնիկների թաղն է, իսկ արևելեանը՝ գաղթականներինը: Իւրաքանչիւր թաղում*

---

[1] Tavernier, I *47.*

[2] *Ս. Վարդանի եկեղ. արձանագրութիւն.*

[3] *Եփրեմ կաթուղիկոսի կոնդակից. Լումայ, 1900 գիրք Ա. եր. 293.*

կայ մի եկեղեցի, ընիկներինը համեմատաբար աւելի գեղեցիկ է։ Գիւղում կայ 9 աղբիւր, որոնց ջրով ոռոգւում են նաև այգիները։ Սրանց թիւը ոյժմ այնքան էլ մեծ չէ, մինչդեռ հին Աստապատն ամբողջովին պատած է եղել այգիներով։ Բնակիչները ընիկներ են և գաղթականներ՝ Սալմաստի Փայաջուկ, Սաւրի, Դրիշկ, Մահլամ, Խոյի Մահլազան, Սէյդավար, Հաֆթևան գիւղերից։ Կան նաև 60 տուն շիա պարսիկներ։ Բոլոր բնակիչները կազմում են 391 տուն 1792 ար. 1651 իգ. ի միասին՝ 2443 հոգի, որից 1531 ար. 1432 իգ. ի միասին 2963 հոգի հայեր, 261 ար. 219 իգ. ի միասին՝ 480 հոգի շիա պարսիկներ։ Պարապում են երկրագործութեամբ, բամբակի մշակութեամբ, մասամբ շերամապահութեամբ և այգեգործութեամբ։ Ունին 1420 դ. 1525 ք. ս. վարելահող, 23 դես. այգի, 27 դ. 1200 ք. ս. անտառ, 361 դ. 1350 ք. ս. արօտատեղի։

Այս գիւղը նշանաւոր է նաև կաւագործութեամբ. այստեղ կայ 60 բրդի գործարան, և 30 բրդի փուռ։ Ամբողջ շրջակայքին և դեռ հեռուն սա է կաւէ ամաններ մատակարարում։

Աբբասսապատ ամրոցի հիւսիսային կողմում կիսաւեր կանգնած է Ս. Վարդանի վանքը, որի մասին աւանդաբար պատմւում է, թէ Ս. Վարդանի անուան է նուիրուած, որովհետև Աւարայրի ճակատամարտից յետոյ ս. Վարդանի և նրա ընկեր նահատակների մարմինները բերել են այստեղ ամփոփելու և մինչև որ աստ պատել (պատանքել) են, Մակուի մեծամեծները եկել են և բռնութեամբ տարել իրանց գիւղը։ Եւ որովհետև «աստ պատեցաւ» այդ նահատակների մարմինները, ուստի և այստեղը կոչուել է Աստապատ։

Ս. Վարդանի վանքը բաղկացած է մի եկեղեցուց և մի պատից։ Եկեղեցու երկարութիւնն է 28 արշին, լայնութիւնը 20 արշին և բարձրութիւնը մօտ 35 արշին։ Շինուած է մի սաժէն բարձրութեամբ կարմիր քարերով, իսկ մնացած մասը թրծած աղիւսներով։ Քառանկիւնի չորս սիւների վրայ բոլորում են արաբական կամարներ, որոնց անկիւններում նկարուած են չորս աւետարանիչները։ Կամարների վրայ յանկում է մի մանեակ, որ կրում է մի գմբէթ, 12 պատուհաններով զարդարուած։ Եկեղեցու մէջ կայ չորս նեղ և երկար պատուհաններ և երեք դուռն։ Սեղանը զարդարուած է երկու շարք արաբական կամարակապ պտրհաններով [1])։ Եկեղեցու հիւսիսային և հարաւային պատերի

[1]) Պտրհան կոչւում է պատի մէջ թողնուած պատուհանանման խորշը։

մէջ ևս կան նոյնպիսի պտրհաններ: Ունի երկու կրկնայարկ խորաններ: Արևմտեան մասը, որ կանանց դասն է համարւում, թաղակապ է և երկյարկանի: Ներքուստ ամբողջովին սպիտակացրած է և պատերին կան խաղանկար պատկերներ: Երեք դռնից նշանաւոր է արևմտեանը, որ բացւում է գաւթի մէջ:—Ոլորապըտոյտ և կամարակապ երկու սիւների շուրջը ձգւում է շղթայաձև մի քանդակ, որ ներփակում է մի գեղեցկաքանդակ մարմարոնեայ խաչ, ներքևում մի բարձրաքանդակ՝ Աստուածածինը՝ Յիսուս գրկին, աջևում մինը՝ ծնրադիր, թերևս եկեղեցու շինողը: Հրեշտակներ, մի մի թագ բռնած Տիրամօր և ծնրադիր մարդու գլխների վերև: Այս քանդակի երկու կողմը կան մի մի մարմարոնեայ խաչ քար, ինչպէս և մի մի փոքրիկներ սրանցից փոքր ինչ ներքև:

Գաւիթը շինուած է սրբատաշ քարից. այժմ կանգուն են չորս սիւները և սրանց վրայ բոլորող ռոմանական կամարները, կրելով կիսաւեր ձեղունը: Կիսակործան պատերի մէջ բացւում են նեղ և երկար պատուհաններ, և երեք դուռն, որոնցից արևմտեանը նոյնպէս քանդակներով և երեք խաչով զարդարուած է:

Եկեղեցու և գաւթի վրայ կան հետևեալ արձանագրութիւնները:

Եկեղեցու արևմտեան դռան վերայ.

’Ի թուականիս Հայոց ՌՃԴ [1]) կանգնեցաւ սուրբ դուռնս այս հրաշազան յօրինմամբ, որ յանուն սուրբ Վարդան Զօրավարին ի վայելչութիւն աստուածապահ գիւղոյս Աղաքիս Աստապատու զոր ես կազմել խօջայ Սաֆարն ի հալալ ընչից ի փրկութիւն հոգո իւրոյ եւ ծնողաց իւրոց Միրիջանին եւ Նարինին. եւ կողակցին Հռոմին, եւ որդւոցն պարոն Յովանիսին եւ Մարգարին եւ քուերն Խանումին եւ...

Դռան վերև, աջ կողմի խաչի տակ.

Սբ. խաչս յիշկ. է Յովանիսին եւ ծնողացն ... Հռոմին. եւ իւր կողակցին թվին ՌՃ. եւ Ե.

Սրա ներքևի խաչի տակ. Եւ միւս որդւոցն Հայրապետն Պղոսն եւ ծնողացն Գաճֆարին Ոհանէսին.

Ձախակողմեան խաչի տակ.

Սբ. խաչս յիշկ է Խամբակուն եւ ծնողացն Թողաքին եւ Մամխաթունին, որդոցն Ասոմին, Բալասանին, մանավանդ յիշկ է Ամրգադէ որդի Հայրապետին եւ որդուն Դաւթին:

Սոյն խաչի մօտ ևս կայ մի ուրիշ փոքր խաչքար, որի տակ գրուած է.

[1]) ՌՃԴ=1655 թ. Քրիստ.

Սբ. խաչս յշտկ է դ(ա)րբին Գրիգորին, կողակցին Մարիամին, որդոցն Անդրէասին, Ով(ա)նէսին թվ. ՌՃԽ...

*Սրանից ներքեւ ձախ խաչի տակ.*

Սբ. խաչս յշտկ է մեղիք Ածտրին կնկցին Ուլլնա եւ որդոցն Թաքոսին, Նիկողայոսին դուստր Նանագիւլին եւ ծնողացն պապին, Սանդուխտին թւին ՌՃ եւ Ն:

*Մի քիչ ներքեւ.*

Ցս. Քս. Սբ. խաչս յշտկ է երեսփոխ(ա)ն բէխիմ. ծնողացն Ամիր խջն Գալուստին եւ կողակցին: Դստեր Ցուխսին Մարգարի... թվին ՌՃԾ:

*Եկեղեցու մէջ, սեղանի վերեւ, խաչի տակ.*

Սուրբ խաչս բարեխօս է Աղլնց Պետրոսին եւ ծնողացն Կիրակոսին, Խաքունջանին եւ կողակցոյն Նունումին, եւ դստերցն Շնորհ-Ֆորին Ղզեքարին, Հերիքնազին, թվին ՌՃ եւ Է:

*Աւագանի վրայ՝*

Յիշատակ է սուրբ Ուազ նս Բաքունենց Աստուածատրին եւ Վկլումենց Կարապետին որդի Աւետիքին թվին ՌՃԼ.

*Ձախ կողմի առաջին սեան վրայ.*

Աշակերտն տն Յովսէփայ մեծի Րաբունապետի սուրբ խաչս բրեխօս լիցի այսմ եկեղեցւոյս վերկցու Մարտիրոս վարդապետին, որ բզում երկամիք յուարտ հասոյց յիշեցէք եւ Ած ողորմի ասցէ. իւրն եւ ծնղցն տր Ներսէսին եւ Մարքային. ՌՃԾ. թվին ¹).

*Յետին կողմի աջ սնի վրայ:*

Սբ. խաչս յշտկ է Անտոնի եկղցոյս վրկցուի եւ ծնղցն Մարջանի Աննայի. ՌՃԾԲ թվին.

*Կանանց դասի թաղակապ կամարի վրայ.*

Աբրհամի որդի Աղբալէն, Ած ողորմի ասէք. ՌՃԽԸ թվին.

*Գաւթի արեւմտեան դրան խաչքարի վրայ.*

Սբ. խաչս բրեխօս է Հոռոմին եւ ծնողացն խուբլարին. Եղբօր Մարիամին որդի Յովհաննէսին, թվական ենին ՌՃԼ.

*Մի ուրիշի վրայ, նոյն տեղը:*

Սբ. խաչս բրխօս է Վարդխաքունենին եւ կողակցին Սահակին որդոցն Ածատրին Զաքարին, թվակ ենին ՌՃ. եւ Ն.

*Աբբասապատ ամրոցից դուրս, հաղիւ 5 ½ վերստ հեռու, դէպի արեւելահարաւ մնում են նախկին* Ս. Յովհ(ա)ննէս կուսաստանի *հիմնապատերը, որովհետեւ Աբբաս-Միրզան քանդել է տուել և քարերը իւր բերդի շինութեան վրայ գործածել: Այս մասին աւանդաբար պատմում են, թէ Աբբաս-Միրզան կամեցել է Կարմիր-*

---

¹) *ՌՃԾ=1701 թ. Քրիստ.*

*վանքը քանդել տալ և քարերը բերդի շինութեան համար գործածել, սակայն այս վանքի վանահայր Խաչատուր վարդապետը վիզը մի սուր ձգած գնացել չոքել է Աբբաս-Միրզի առաջ և ասել. Վերև Աստուած, ներքև դու, կամ վերցրու այս սուրը և կտրիր վիզս, և կամ մի քանդիր վանքս։ Թագաժառանգը խղճում է, և հրամայում է թողնել Կարմիր Վանքը և Ս. Յովհաննէսը քանդել։ Սակայն ոչ մի պարսիկ յանձն չի առնում առաջինը քանդելու Աստծու այդ տունը. միայն յետոյ մի ասորի բարձրանում է գըմբէթի վրայ և վայր գլորում խաչը։ Խաչատուր վարդապետը վրայ է հասնում և լալով հանում է խաչի միջից ս. Արիստակէսի աջը և տանում Կարմիր վանք։ Աբբաս-Միրզան իմանալով ասորու արարքը, և նրա ակնկալութիւնը մի մեծ նուէր ստանալու, կանչում է նրան իւր մօտ և յանդիմանելով նրան, թէ երբ ոչ մի մահմէդական չհամարձակուեց ձեռք տալ այդ վանքին, ինչպէս նա լինելով քրիստոնեայ, համարձակուեց քանդել նրան, երևի նրա համար ոչ մի սրբութիւն չկայ, հրամայում է գնդակահար անել։ Բայց և այնպէս՝ շարունակում է քանդել վանքը և քարերը տանել ամրոցի վրայ գործածելու։*

*Ինչպէս երևում է կոփածոյ քարերից, վանքը բաւական գեղեցիկ է եղել, և ունեցել է գաւիթ և պարիսպ։ Այժմ այդ եկեղեցու տեղը մի հասարակ մատուռ է կանգնեցրած, մօտն էլ մի սենեակ պահապանի համար։ Եկեղեցու մօտ կայ մի աւազան, ուր տենդոտները լողանում են բժշկուելու յուսով։ Սրա մօտ կայ մի ջրաղաց, մի քիչ հեռուն ընկած է նախկին ձիթահանքի ահագին քարը։*

*Եկեղեցու դրան առաջ մի մարմարոնեայ գերեզմանաքար կայ հետևեալ տապանագրով.*

ՌՃՀ [1])

Այս է տապան արձան յայտնի.
Խոջայ Վարդանայ բարեպաշտի.
Որ է ազգէն Կուսանենանցի.
Խոստմամբ սորա Գալիքս շինի,
Որ է եղբայր պարոն Արզմանեանի.
Եւ են որդիք մհտսի Պօղոսի.
Աստ տէր հանգեալ յոյսն բարի.
Որք հանդիպէք տուք ողորմիս,
Աստուած զձեզ ողորմեսցի։

*Սրա մօտ կայ նաև երկու հասարակ գերեզմանաքար, եղծուած տապանագրով։*

---

[1]) *ՌՃՀ=1721 թ.*

*Ս. Յովհաննիսի կուսաստանից հազիւ երեք վերստ դէպի հարաւ, Արաքսի անմիջապէս ձախ ափին, մօտ 60 մետր բարձրութեան մի քարաբլրի գագաթին բարձրանում է Ս. Ստեփանոսի վանքը, որ այլապէս կոչւում է Քարատակի կամ Կարմիր վանք, երբեմն էլ Խնդրակատար ս. Ստեփանոս։ Քարատակի է կոչւում, որովհետև տակը ամբողջովին քար է, Կարմիր է կոչւում, որովհետև նախ կարմիր քարով ու աղիւսով է շինուած և երկրորդ՝ աւանդութիւնն ասում է, թէ Աւարայրի ճակատամարտից վիրաւորներին բերել են այստեղ և նրանց արիւնով կարմիր է ներկուել վանքի գաւիթն ու սանդուղքները։ Խնդրակատար մակդիրն էլ ստացել է նա, որովհետև ժողովրդական՝ հաւատը մեծ զօրութիւն է վերագրում նրան, ամեն խնդիր կատարում է նա։ Մի չորրորդ անուն ևս ունի վանքը, որ սակայն, քիչ է գործ ածւում՝ Աստապատայ վանք, Աստապատ գիւղի մօտ գտնուելու պատճառով։ Թուրքերը և ռուսները նրան կոչում են Կըզըլ-վանք և այդ անունով է յայտնի նաև սրա անմիջապէս մօտը 40 տարի առաջ հիմնուած փոքրիկ հայաբնակ գիւղը։*

*Ս. Ստեփանոսի վանքը հաւանականօրէն հիմնուած է Զ. դարում. նա յիշւում է Խաչիկ Ա. կաթուղիկոսի կոնդակի մէջ 976 թուին, և այդ թուականը կրող մի խաչքար էլ կայ եկեղեցու դրան աջ կողմը։*

*Շահ-Աբբասի աւերածութիւններից յետոյ Պաւղոս վարդապետը, Թումայ եպիսկոպոս առաջնորդը և Աստապատի քահանաներն ու ժողովուրդը նորոգել են պարիսպը, ինչպէս երևում է պարսպի վրայի արձանագրութիւնից։*

*Մի առ ժամանակ յետոյ, ինչպէս վկայում է Զաքարիա Վաղարշապատցին, «Մերունի մաքուր աղաւնին կուսութեամբ պերճացեալն և հոգւով բարգաւաճեալն Յակոբ վարդապետ Աստապատեցի... զվանքն Աստապատու, որ ի վերայ Երասխայ կայ ի կատարս քարանձաւին, շինեալ պայծառացոյց զրովանդակն, զպարիսպն և զեկեղեցին և զամենայն զորս ի նմա կան շինուածք»։ *)*

*Ինքը, Յակոբ վարդապետը ամփոփուած է այս վանքի մէջ, հարաւային դասի մօտ. և ունի տապանագիր 1673 թուականով։*

*1697 թուին էլ Յովսէփ անունով մի վարդապետ վանքի արևմտեան կողմում շինել է տուել բաւականաչափ բնակարաններ, և ինքը թաղուած է զանգակատանը 1706 թուին։*

*ԺԹ. դարի սկզբին Աբբաս-Միրզան քանդել է տուել պարսպի մի մասը՝ քարերը Աբբասապատի վրայ գործածելու համար։*

---

**) Յիշ. Միսական. եր. 507։*

Ժողովրդական աւանդութիւնը յիշում է մի Բարսեղ անունով կաղ վարդապետի, որ գիւղից գիւղ ընկած ժողովարարութիւն է արել, որպէսզի այս վանքը վերանորոգէ։ Շահը կանչել է սրան իւր մօտ և յանդիմանել, թէ ինչի՞ է նեղում ժողովրդին, ժողովարարութիւն անելով։

Սկզբում սրա լեզուն կապ է ընկել, բայց յետոյ սիրտ է առել և ասել. «Ես կամենում եմ Աստծու տուն շինել, քո կեանքիդ համար արեւշատութիւն և տէրութեանդ յարատեւութիւն խնդրելու համար»։ Պատասխանը դիւր է եկել շահին և սա հրամայել է 300 թուման նուէր և Կարմիր վանքը վերանորոգելու հրաման տալ նրան։ Նա էլ եկել վերանորոգել է այս վանքը։

1736 թուին Աբրահամ կաթուղիկոսը տեսնելով տեղի վայելչութիւնը և միևնոյն ժամանակ ամայանալը՝ հառաչում է. «իջի յանապատն օրհնեալ գիւղաքաղաքն և ի վանքն Աստուապա-տու, գեղեցկաշէն և պատուական։ Աւաղ ժամանակիս նեղութեան և նուաղութեան ազգիս իմոյ Արամեան. զի գալարին աղիք իմ ի տեսանելն զաննման վանորայս և զսուրբ ուխտսն, վասն ոչ գոլոյ թեմ և վիճակ. և թէպէտ գոն՝ բայց ամայի անշէն և անմարդաբնակ»... [1])



## ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ

1831 թուին Նիկողայոս վարդապետը նորոգել է տուել եկեղեցու հիմնապատերը, որ ուրիշ շէնքերի հետ բաւական վնասուել է 1840 թուի երկրաշարժից։

Այժմ վանքը պահպանում է մի վանահայր վարդապետ, որ վանքի սենեակները երկաթուղու գիծը անցկացնող կապալառուին

[1]) Սիսական եր. 513.

տուել է օգտուելու այն պայմանով, որ նա վերանորոգէ եկեղեցու մի քանի խախտուած մասերը։

Վանքն այժմ կարող է վերանորոգուել և մասամբ ծաղկել, որովհետև նրա մօտն է գտնւում երկաթուղու մի կայարան։

Կարմիր վանքը շինուած է կարմիր, տաշած քարից մինչև մի սաժէն բարձրութեան, չհաշուած հիմքը, և թրծած աղիւսից՝ մնացած մասը և գմբէթը։ Վանքը բաղկացած է եկեղեցուց և գաւթից։ Եկեղեցու երկարութիւնն է 24 արշին, լայնութիւնը 19 արշին և բարձրութիւնը՝ մօտ 21 արշին։ Եկեղեցին արտաքուստ շատ պարզ է, երեքական արաբական կամարներ իւրաքանչիւր պատի վրայ և երկու բարձրաքանդակ հարաւային պատի մէջ, որ ներկայացնում են Քրիստոսի մկրտութիւնը՝ կազմում են ամբողջ



ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԻ ՑԱՏԱԿԱԳԻԾԸ

զարդարանքը։ Ներքուստ համեմատաբար շատ աւելի գեղեցիկ է, մանաւանդ, որ ամբողջովին ծածկուած է իւղանկար պատկերներով։ Երկու ամբողջական և վեց որմնասիւների վրայ բոլորւում են արաբական կամարներ, կրելով իրենց վրայ մի բաւական բարձր (8 արշին) գմբէթ։ Հինգ քառանկիւնի պատուհան, իւրաքանչիւրը 1 արշին բարձրութեան և 10 վ. լայնութեան աղօտ լոյս են սփռում եկեղեցու մէջ։ Ութ փոքրիկ պատուհաններ էլ բացւում են գմբէթի ներքին մասում, և սրանց միջև կան հետևեալ սրբերի պատկերները՝ իրենց մակագրութեամբ. Սեղբեստրոս հայրապետ, Թէոդոս թագաւոր (գայիսոնը ձեռին), Ս. Ներսէս, Աբգար թագաւոր (դաստառակը ձեռին), Ս. Սահակ Պարթև, Տրդատիոս թագաւոր, Ս. Գրիգոր Լուսաւորիչ և Կոստանդիանոս թագաւոր։ Սրանցից ներքև, կամարների անկիւններում էլ նկարուած են չորս աւետարանիչների պատկերները. Տպաւորութիւնը թուլացնում են ներքևում, պատերի մէջ բացուած պարս-

կական տգեղ պարհանները։ Սեղանը ևս զարդարուած է Տիրամօր պատկերով, Յիսուսը գրկին։ Ոչ մի պատկերի տակ չէ նշանակուած նկարողի անունը, կայ միայն նկարելու թուականը՝ 1859—1860. բոլորն էլ միջակ բաներ են և գեղարուեստական առանձին արժէք չունին։ Եկեղեցին ունի նաև երկու խորան և մի գաղտնի պահարան՝ եկեղեցու տակ, ուր կարելի է իջնել մի դըռնովի սանդուղի միջոցով։ Նրա խորութիւնն է 3½ արշին, երկարութիւնը 3 արշ. և լայնութիւնը 3½ արշին։ Այդ տեղ էին պահւում վանքի սրբութիւններն ու գանձերը՝ մահմեդականների յարձակումների ժամանակ։

Եկեղեցին ունի միայն մի դուռն, արևմտեան կողմը, որ բացւում է գաւթի կամ զանգակատան մէջ։ Սրա երկարութիւնն է 14 արշին 12 վ. լայնութիւնը 9 արշին 12 վ.։ Շինուած է տաշած քարից և թրծած աղիւսից։ Երկու ամբողջական և վեց որմնասիւներ այստեղ ևս կրելիս են եղել մի փոքրիկ գմբէթ, որ 1840 թ. երկրաշարժից քանդուել է։ Մի կերպ կախուած են երկու զանգակներ։ Գաւթի մէջ կան վեց տապանաքարեր, որոնցից միայն մինի վրայ մնացել է տապանագիրը կրող մարմարոնեայ քարը, որ ցոյց է տալիս, որ այդտեղ թաղուած է Յովսէփ արքեպիսկոպոսը (1666 թուին)։ Գաւթի հարաւային դրան ճակատին կայ մի բարձրաքանդակ, որ ներկայացնում է այս վանքը, ներքևում մի հոգևորական, (երևի Յովսէփ եպիսկոպոսը, որ նորոգել է այս վանքը) ձեռին բուրվառ։

Գաւթի գմբէթի քարերի մէջ եղել են երկու առիւծանման արձաններ, որոնք մի առժամանակ դրուած էին դարպասի առջև, սակայն վերջերս Նախիջևանի-խանը տարել է և իւր տան դարպասի առջև կանգնեցրել։

Եկեղեցու շուրջը կան բաւականաչափ մի և երկյարկանի սենեակներ, ընդարձակ գոմ, շտեմարան, խոհանոց և այլն։

Վանքը շրջապատուած է քառանկիւնի հաստ, բարձր և չորս աշտարակներով ամրացած պարսպով, շինուած տաշած քարից։ Արևելեան կողմում կան երեք դարպասներ, որոնցից ամենամեծի վերև, մի տաշած քարի վրայ դուրս է փորուած մի արծիւ՝ ճանկերի մէջ մի գառ, երկու կողմը մի մի խաչքար։

Կարմիր վանքում կան հետևեալ սրբութիւնները,

1. Աջ սրբոյն Ստեփանոսի նախավկայի. արծաթէ, որից կախուած է մի խաչ։

2. Աջ սրբոյն Արիստակէսի, արծաթէ, ոսկեզօծ, որից կախուած է նոյնպէս ակներով զարդարուած մի խաչ։

Վանքը ունի 750 դեսեատին հող և մի պարտէզ (1200 ք. ս.)

*Արձանագրութիւնները*

*Պարսպի վրայ.*

Ի ժամանակս պարոնց արքայից տան Աբբասի Պաւղոս վարդապետս, Թումայ եպիսկոպոս առաջնորդս, եւ մեք տոստապասեցի քննոյք եւ ժողովրդք նորոգեցաք զպարիսպս զայս եւ ընկերօք իմ շինեցաք զպարիսպս ի հիմանց կամաւ ամենակալին Աստուծոյ...

*Մի գերեզմանաքարի վրայ, 1060 թուին.*

Այս է տապան Զաքարիա վարդապետին. թվ. ՌՃԹ.

*Զանգակատան հարաւային կողմի մարմարիոնապատ գերեզմանաքարի տապանագիրը, 1666 թուից: Քանդակուած է եպիսկոպոսական գաւազան, վերեւում երկգլխանի օձ:*

Յայսմ տապանի կայ պահեսի
Յովսէփ քաջ եպիսկոպոսն արհի.
Որ է տեղեաւ Աստապասցի.
Նորոգող բազմաշխատ այսմ ուխտի,
Աշակերտն Յակոբայ մեծի,
Որ կայ ի դուռն խորանի,
Առ Տէր հանգեաւ ՌՃԺԵ.-ի
Յաւուր սրբոյ մեծի Զատկի:

*Եկեղեցու մէջ, հարաւային կողմի գերեզմանի տապանագիրը 1673 թուից.*

Այս է տապան դամբարանի,
Տեառն Յակոբայ վարդապետի.
Այս ռաբունոյս մեռոյ վեհի
Էին ազինք արք երեքի,
Աստուածատուր եւ Պալոն եւ Թեդոն
Որդի սոցին ծախիւք վիմս կազմի
եւ կափարիչն կլ շիրմի թվ. ՌՃԻԲ

*Գերեզմանաքարի կողքերին էլ գրուած է.*

Պալոնի հայր Հայրապետ Թեդոնի որդի Նուրիջան Աստուածատուրի որդի Ավաք:

*Պարսպի դռան վերև, արծուի մօտի խաչի տակ, 1707 թուին.*

Սբ խաչս բարեխօս է եւ յիշատակ է պարիսպս վերակացու Յովհաննէս վարդապետին եւ ծնող ացն Մալխասին եւ Ղզեթարին եւ քվերն Շահփարվարին. թվին ՌՃԾԶ-ին:

*Կարմիր-վանքի մօտը կայ մի փոքրիկ գիւղ միևնոյն անունով (63° 4'3"—39° 5'14") որ բռնում է 4 դես. 1350 ք. ս. տարածութիւն: Բնակիչները հայեր են, Դարաշամբից, 24 տուն, 85*

ար. 75 խդ. միասին 160 հոգի։ Ունին 137 դ. 870 ք. ս. վարելահող, 2000 ք. ս. այգի, 495 դ. 2285 ք. ս. արօտատեղի։

Կարմիր-վանքից հազիւ հինգ վերստ դէպի հարաւ, անմիջապէս Արաքսի ափին, այնտեղ, ուր այժմ գտնւում է Նեհրամ պահակատունը, մնում են նախկին Խրամ քաղաքի հետքերը՝ մի եկեղեցու հիմնապատեր և մի քանի գերեզման։

Ապացոյց, որ այդ տեղ է եղել Խրամ քաղաքը՝ կարող է ծառայել նախ այն, որ Թովմա Արծրունին որոշակի մատնացոյց է անում, ասելով. «Որ է ի ներքոյ Աստապատայ վանացն, յեզր Երասխայ»,*) և երկրորդ՝ դրա այժմեան անունը Նեհրամը արաբերէն խրամ է նշանակում։

Այս քաղաքին վերաբերեալ պատմական անցքերից ամենանշանաւորը այն է, որ արաբացիները 643—44 թուին առան նրան, տղամարդկանց սպանեցին, իսկ կանանց և երեխաներին գերի վարեցին։ **) Այս աւերածութիւնից գրեթէ կէս դար յետոյ (688 թուին) այս քաղաքը կրկին ենթարկուեց արաբացիների աւերածութեան։ Սակայն աւելի ողբալի եղաւ նրա վիճակը, երբ 705 թ. արաբացոց Կաշմ ոստիկանը հաւաքեց 400 հոգի հայ աւագանիներ Խրամի եկեղեցին հաւատարմութեան երդում առնելու և երդմնազանցութեամբ փակեց նրանց եկեղեցու մէջ և այրեց [1]) բնակիչներից շատերին էլ գերեց։ Սակայն այս դժոխային հարուածից յետոյ էլ քաղաքը երկու դար շարունակ պահպանեց իւր գոյութիւնը, երբ 972 թուին վերջնականապէս աւերուեց մի աւազակային մեծ խմբի յարձակմամբ[2])։

Խրամ քաղաքի տեղը ներկայացնում է մի նեղ հովիտ, անմիջապէս Արաքսի ափին։ Գետի աջ, այժմեան պարսկական, ափին անմիջապէս ձգւում են մերկ լեռներ, այնպէս որ քաղաքը այն կողմը տարածուելու բոլորովին տեղ չէ ունեցել, այլ միայն ամփոփուել է ձախ ափի վրայ, որից մօտ 1/4 վերստ հեռու ձգւում է Ղըզըլ-գեադուկ փոքրիկ լեռը։ Մի փոքրիկ հովիտ էլ բացւում է արևելեան կողմը, այս և Կիւրհինուր լեռների մէջ, ուր նոյնպէս նկատելի են շինութեան հետքեր, բայց ոչ այնպէս խիտ, ինչպէս Արաքսի անմիջապէս ափին։ Եկեղեցին գտնւում է մի փոքրիկ հողաբլրի վրայ։ Տնատեղերում գտնւում են թաղուած կարասներ, որոնք հաւանականօրէն գինի պահելու համար են յատկացրուած

---

*) Թովմա Արծրունի 116.

**) Ղևոնդ պատմ. եր. 18,

[1]) Ասողիկ. եր. 124, Թովմա Արծրունի եր. 116. Ղևոնդ Պատմ. եր. 33.

[2]) Զամչեան Հայոց պտմ. II. եր 842.

եղել։ Գերեզմանաքարեր տապանագրերով և առանց նրանց՝ ոչ մի հատ չեն նկատուած։

Ծրամ քաղաքից 2 վերստ հեռու, Արաքսի աջ ափին գըտընւում է Դարաշամբ փոքրիկ գիւղը և նրա մօտ՝ Մաղարդայ հռչակաւոր վանքը, երկուսն էլ պարսից պետութեան սահմանում։

## Նախիջեւանից դէպի հիւսիս գտնուող գիւղերը

Նախիջևանից դէպի արևմտահիւսիս գտնւում է Բաղաշխան գիւղը (63°6′17″—39°12′54″), որ բռնում է 2 դես. 1604 ք. ս. տարածութիւն և իւր մօտ ունի 2 դ. 880 ք. ս. տարածութեան անտառ։ Գիւղում ուշադրութեան արժանի ոչինչ չկայ. բնակիչները շիա թուրքեր են, 28 տուն, 137 ար. 83 իգ. իմիասին 220 հոգի։ Ունին 140 դ. 1298 ք. ս. վարելահող և միայն 2110 ք. սաժէն արօտատեղի։

Բաղաշխանից ½ վերստ դէպի հիւսիս, իսկ Նախիջևանից 12 վերստ դէպի հիւսիս-արևելք գտնւում է այգիներով շրջապատուած և պարտէզներով հովանաւորուած Եարմջա գիւղը, (63°6′42″—39°13′54″) որ բռնում է 14 դ. 2234 ք. ս. տարածութիւն։ Գիւղի անունը տեղացիների սրախօսութեամբ յառաջացել է Եարմ-ջան, կէս մարդ խօսքից, որպէս թէ քաղաքին մօտիկ գտնուելով միշտ կեղեքուել են Նախիջևանի խաներից։

Գիւղը շատ լաւ տպաւորութիւն է գործում։ Թէպէտ ոչ բոլորը, սակայն կան բաւականաչափ գեղեցիկ, և նոյն իսկ երկյարկանի, եւրոպական ձևով կահաւորուած բնակարաններ, մի քանի լայն փողոցներ, ուռենիներով զարդարուած. բաւական գեղեցիկ եկեղեցի գմբէթով, որ շինուած է 1860 թուին։ Սակայն պարսկական ազդեցութիւնը դեռ ևս չէ անհետացել, ցեխէ պարիսպները ձգւում են ծուռն ու մուռ փողոցների երկու կողմում, պաշտպանելով իրենց յետևում շինուած հասարակ տները։ Գիւղը զուրկ է աղբիւրներից, բայց ունի բաւականաչափ ջրհորներ, որոնց ջուրը կարելի է խմելու համար էլ գործածել։

Մի մեծ առու Նախիջևանի գետից սրանց համար ջուր է բերում, սակայն յաճախակի պատահող հեղեղները շատ շատ փչացնում են և մեծ վնասներ պատճառում գիւղացիներին, իսկ Նախիջևան-գետը բարձրացած միջոցին քաղաքի հետ յարաբերութիւնը կամ կտրւում և կամ շատ վտանգաւոր է դառնում, որովհետև կամուրջներ չկան։ Գիւղի հողերի մի մասը իրենց գիւղացիների սեփականութիւնն է դարձել, մի մասը դեռ պատկանում է Զիլֆիղար-խանովին. մի մասն էլ արքունական է։ Գիւղի բը-



ԵԱՐՄՋԱ ԳԻՒՂ

նակիչները կազմում են բնիկները և գաղթականներ։ Բնիկները պարսկահայոց գաղթականութեան միջոցին 8 տուն են եղել, իսկ այժմ դարձել են 40 տուն, սրանք առանձնացած են հարաւային թաղում և պահել են թէ իրենց բարբառը և թէ սովորութիւնները։ Գաղթականներն երեք խմբի են բաժանւում, Սալմաստեցիներ, Խոսրովեցիներ և Խոյեցիներ։ Ո՛չ բնիկները և ոչ էլ գաղթականները միմեանց հետ չեն ձուլուել և այժմ էլ նկատւում են որպէս առանձին միութիւններ. այսպէս՝ թէ գիւղապատկան հողը, թէ ջուրը և թէ հարկը գիւղացիների վրայ բաժանելիս՝ նախ չորս հաւասար մաս անելով, յանձնում են այս չորս «թայֆաներին», չնայելով, որ սրանք հաւասարաչափ տներից կամ անձերից չեն բաղկացած։ Յետոյ արդէն իւրաքանչիւր թայֆան ինքնուրոյնօրէն բաժանում է իւր անդամների մէջ։

Գրեթէ բոլորն էլ պարապում են երկրագործութեամբ, այգեպանութեամբ, գինեգործութեամբ, բամբակի մշակութեամբ և շերամապահութեամբ։ Սալմաստեցիներից շատերն էլ զանազան քաղաքներում առևտուր են անում, մանաւանդ պատրաստի հանդերձեղէնի։ Առաջները մշակում էին նաև ծխախոտ և պատրաստում էին քթախոտ, որ այս կողմերում ամենալաւն էր համարւում։

Ունին 715 դ. 2081 ք. ս. վարելահող, 100 դ. 115 ք. ս. այգիներ, 68 դ. 1080 ք. ս. արօտատեղի։

Բնակիչները 176 տուն են. 623 ար. 602 իգ. իմիասին 1225 հոգի։

Նարմջայից դէպի հիւսիս գտնւում է Ղուլի-բէկ-դիզա (63°7′2″—39°15′19″) և Քեարիմ-բէկ-դիզա (63°7′7″—39°15′33″) փոքրիկ, հայաբնակ գիւղերը, որոնք իրենց անուններն ստացել են գիւղատէր Ղուլի-բէկ և Քեարիմ-բէկ եղբայրներից։ Առաջնի մէջ կայ մի նորակառոյց եկեղեցի և միդասեան պետական դպրոց. բնակիչները Սալմաստի Մահլամ գիւղից են. ընդամէնը 66 տուն, 191 ար, 183 իգ. իմիասին 374 հոգի։

Երկրորդ գիւղը, որ միայն 1 դ. 1000 ք. ս. տարածութիւն է բռնում, յիշատակութեան արժանի բան չունի, բնակիչները 31 տուն են, 51 ար. 50 իգ. իմիասին 104 հոգի։

Առաջին գիւղը ունի 113 դ. 600 ք. ս. վարելահող և 236 դ. 600 ք. ս. արօտատեղի, իսկ երկրորդը՝ 67 դ. 550 ք. սաժէն վարելահող, 13 դ. 1700 ք. ս. այգի և 1 դես. արօտատեղի։

Քեարիմբէկ-դիզայից դէպի հիւսիս, հազիւ երկու վերստ հեռու մի բլրակի շուրջ տարածւում է Քիւլ-թափա գիւղը (63°7′4″—39°16′43″)։ Բլուրը, որ ներկայացնում է եօթը յարկանի մի գերեզ-

մանաստան *) և մեծ մասամբ մարդկանց աճիւնից է բաղկացած՝ կոչւում է Բիւլ-Թափա, այսինքն Մոխրա-գագաթ, և իւր անունն էլ տուել է գիւղին։ Այս բլրի գագաթին մի ժամանակ մի փոքրիկ ամրոց եա շինուած է եղել, իսկ այժմ բարձրանում է մի հասարակ մատուռ, որ շինել են պարսկահայ գաղթականները, կարծելով, որ այս գիւղում պահուած ս. Հռիփսիմէի մասունքը այս բլրի մէջ ծածկուած պիտի լինի։ Սակայն յետոյ այդ մասունքը գտել են բլրից փոքր ինչ հարաւ-արևելք, դաշտում կանգնած մի կիսաւեր մատրան մէջ, քարէ սարկոֆաժի մէջ ամփոփուած։ Մասամբ վերանորոգել են այդ հին, հասարակ մատուռը, մասունքը ամփոփել են մի արծաթեայ աջի մէջ և դրել իրենց նորաշէն եկեղեցու մէջ, սարկոֆաժն էլ պահել նոյն եկեղեցու խորանում։

Բնակիչները հայ գաղթականներ են Սալմաստի Փայաջուկ գիւղից։ Պարապմունքը միևնոյնն է, միայն սրանք բամբակ չեն մշակում, որովհետև բաւականաչափ ջուր չունեն։ Ընդամէնը՝ 126 տուն են. 191 ար. 183 իգ. իմիասին՝ 374 հոգի։

Բիւլ-Թափայից փոքր ինչ հիւսիս ընկած է Մամարզա դիզա փոքրիկ, աննշան գիւղը 58 տուն, 119 ար. 94 իգ. իմիասին՝ 213 հոգի բնակչով, որից 39 տունը, 40 ար. 33 իգ. իմիասին՝ 73 հոգի, հայեր են և 19 տունը, 79 ար. 61 իգ. իմիասին 140 հոգի թուրքեր։

Սրանից էլ փոքր ինչ հիւսիս գտնւում է Ալագեազ Մազրան (63°7'22"—39°18'36") որ տեղաւորուած է մի դաշտի վրայ, որի հիւսիս-արևելեան կողմում բարձրանում է Սարի-դաղ լեռը, իւր առջև ունենալով երկու շարք բլուրների, որոնցից հիւսիսայինը կոչւում է Ղույլի-դաղ (հորի-սար), որովհետև սրա գագաթին կայ 2 հոր 20 սաժէն խորութեամբ և մօտ մի արշին տրամագծով։ Հարաւային շարքի բլուրներն էլ Միս-սար (պղնձի-սար) անունն են կրում, որովհետև պղնձագոյն են, այստեղ գտնւում է հասարակ մարմարիոն։

Գիւղը բռնում է 7 դ. 1200 ք. ս. տարածութիւն, ջրառատ է, ունի երեք առու և մի աղբիւր։ Բոլոր հողը արքունական է. 192 դ. վարելահող 39 դ. 1200 ք. ս. այգի, 14 դեսեատին, 600 ք. ս. արօտատեղի։ Բնակիչները հայ գաղթականներ են Սալմաստի Սոմ, Մահլամ, Կալասար, Հաֆթվան գիւղերից և Խոյից։ Ընդամէնը՝ 98 տուն են, 298 ար. 278 իգ. իմիասին՝ 576 հոգի։ Պարապմուն-

---

*) Տես «Նախապատմական շրջան»։

քը նոյնն է. այստեղ համեմատաբար բամբակի մշակութիւնը աւելի յառաջացած է, որովհետև ջուր շատ ունին։

Ալագեազ-Մազրից հազիւ 3 վերստ դէպի հիւսիս գտնւում է Խալխալ հայաբնակ գիւղը. (63°7'17''—39°20'15''), որ բռնում է 2 դես. 2110 ք. ս. տարածութիւն. Այս գիւղն ունի 128 դ. 190 ք. ս. վարելահող, 40 դ. 2060 ք. ս. այգիներ, 5 դես, 120 ք. ս. անտառներ. 9 դես. 1160 ք. ս. արօտատեղի։ Բնակիչները 99 տուն են. 162 ար. 133 իգ. իմիասին 295 հոգի։

Խալխալը այս ոստիկանական շրջանի վերջին գիւղն է, որ գտնւում է Ջահրի գետակի ձախ ափին։ Այստեղից անցնելով գետը պատահում ենք Նազարապատ և Դիտուվար գիւղերին, որոնք Բ. ոստիկանական շրջանի մէջ են անցկացրած, և յետոյ արդէն գալիս ենք Վերին-Ուզուն-Օբան (63°6'32''—39°17'30'')։

Սա բռնում է 4 դես. 1840 ք. ս. տարածութիւն, կալուածատիրական է և պատկանում է մի Թուրքի. գիւղի ստորոտում կայ բարդի ծառերի անտառ 10 դ. 1064 ք. ս. տարածութեամբ։ Գիւղում կայ մի աղբիւր և մօտից անցնում է Դալմա-առխը, որի ջուրը իւրաքանչիւր 18 օրից յետոյ չորս օր գործ է ածւում այս գիւղի այգիներն (43 դ. 1064 ք. ս.) և վարելահողերը (251 դ. 1366 ք. ս.) ջրելու. ունին միայն 4 դես. ձ40 ք. ս. արօտատեղի։ Գիւղում կայ մի հասարակ եկեղեցի։ Բնակիչները 66 տուն են. 256 ար. 209 իգ. իմիասին 465 հոգի, որից 39 տուն, 118 ար. 107 իգ. իմիասին 225 հոգի Խոյեցի հայեր են, 27 տուն, 138 ար. 102 իգ. իմիասին 240 հոգի Թուրքեր։ Պարապմունքը նոյնն է։ Գիւղից փոքր ինչ հիւսիս գտնւում է Ներքին կամ Աշաղա Ուզուն-Օբան, որի բնակիչները բոլորն էլ Թուրքեր են, 84 տուն, 340 ար. 330 իգ. իմիասին 670 հոգի.

Ուզուն-օբա-աշաղայից փոքր ինչ հարաւ բարձրանում է Քիւլ-Թափա-բլուրը, որ գերեզմանատուն է եղել *)։ Սրա մօտ է Խալիլու փոքրիկ հայաբնակ գիւղը, որ բռնում է 1150 ք. սաժէն տարածութիւն, 39 տուն բնակչով՝ 148 ար. 139 իգ. իմիասին՝ 287 հոգի։ Ունին 73 դ. 1200 ք. ս. վարելահող, 3 դ. 1990 ք. ս. այգի, և 648 դ. 1320 ք. ս. արօտատեղի։

Ապա գալիս է Շիմահմուտ գիւղը, (63°5'47''—39°15'14'') որ բռնում է 5 դ. 2230 ք. ս. տարածութիւն։ Շրջապատուած բազմաթիւ այգիներով և պարտէզներով, գիւղը բաւական լաւ տպաւորութիւն է թողնում։ Գիւղի ծայրին շինուած է շինական դատարանը մի քանի գեղեցիկ սենեակներից բաղկացած։ Գիւղի մէջ

---

*) Տես «Նախապատմական շրջան»։

կան բաւականաչափ գեղեցիկ, մի և երկյարկանի տներ, շրջապատուած պարտէզներով։ Մի քանի լայն և կանոնաւոր փողոցներ էլ աւելացնում են գիւղի վայելչութիւնը։ Միակ, պարզ եկեղեցու գաւթում եօթանասնական թւականներում բացուած է եղել ուսումնարան, որի եկամտի մի աղբիւրն էլ նոյն եկեղեցում պահուող Ս. Նշան մասունքի խաչհամբոյրն է կազմել։ Շնորհիւ այն հանգամանքի, որ այս գիւղը միայն չորս վերստով հեռու է գտնւում քաղաքից և վաղուց ի վեր դպրոց ունի, բնակիչները մտաւորապէս համեմատաբար աւելի բարձր են, քան միւս գիւղացիները։ Բնակիչները բնիկներ և գաղթականներ են Սալմաստի գիւղերից. ընդամէնը 184 տուն են, 683 ար. 654 իգ. ի միասին 1337 հոգի։ Ունին 938 դ. 920 ք. ս. վարելահող, 22 դ. 1345 ք. ս. այգի. 18 դ. 485 ք. ս. անտառ. և 1407 դ. 1575 ք. ս. արօտատեղի։

**Կըվրաղի հասարակութեան գիւղերը.**—Նախիջևան քաղաքից դէպի հիւսիս-արևմուտք, ընդարձակ տարածութեան վրայ ընկած են ութ թրքաբնակ գիւղեր, որոնք կազմում են Կըվրաղի գիւղական հասարակութիւնը։

Սրանք են.

**Ղարաբաղլար.**—(62°51'32"—39°25'49")։ Բռնում է 9 դեսեատին 1800 ք. ս. տարածութիւն, և շրջապատուած է այգիներով։ Երևում է, որ հնումը բաւական նշանաւոր տեղ է եղել. այժմ մնում են մի գիւմբազի, մի մինարէի և մի կարաւանատան աւերակները։ Շոպէնը ենթադրում է, թէ կարող էր այստեղ գտնուել Տիգրան Ա. հիմնած Տիգրանակերտ քաղաքը, սակայն դեռ ևս ոչ մի հիմք չկայ այդ ենթադրելու։

ԺԷ. դարում Ճեմելլի իտալացի ճանապարհորդը այցելել է այս գիւղը, նրան Գարապա է կոչում և աւելացնում, թէ այստեղ կայ քառակուսի ձևով շինուած մի մեծ, գեղեցիկ կարաւանատուն և մօտը մի աղբիւր, որի մասին հայերը աւանդում էին, թէ Նոյի Սեմ որդին է հանել՝ վէմը ճեղքելով։ Դաւերնիէն էլ է եղել այստեղ և նրան Կարաբակլեր է անուանել [1])։

Բնակիչները բոլորն էլ թուրքեր են. 192 տուն, 903 ար. 887 իգ. ի միասին 1790 հոգի։

Ունին 2995 դ. 1500 ք. ս. վարելահող, 13 դ. 1200 ք. ս. այգի, 116 դ. 600 ք. ս. մարգագետին և 12062 դ. 600 ք. սաժ. արօտատեղի։

**Խինճաւ** կամ **Խանճաւ** և կամ **Խանճախ** (62° 56'36"—39° 24'

[1]) Ալիշան, Սիսական. եր 505.

2") Մի աննշան գիւղ է, Ջնաբերդից մօտ երեք վերստ դէպի արևելահարաւ և բռնում է 7 դես. 1200 ք. ս. տարածութիւն։ Բնակիչները Թուրքեր են 39 տուն. 174 ար. 146 իգ. իմիասին՝ 320 հոգի։ Ունին 1090 դ. 1335 ք. ս. վարելահող, 3. դ. այգի 1495 դ. 1340 ք. ս. արօտատեղի։

Իւրչի—Գերդասար. (62°48'56"—39°24'46"). Մի փոքրիկ, աննշան գիւղ է, 3 դես. 1800 ք. ս. տարածութեամբ և 56 տուն Թուրք բնակչով, 273 ար. 217 իգ. ի միասին 490 հոգի։ Ունին 462 դ. 1730 ք. ս. վարելահող, 4 դ. 1200 ք. ս. այգի, 78 դ. 1800 ք. ս։ արօտատեղի։

Կըվրաղ (6:°46'41"—39°24'18"). Տեղաւորուած է Շարուր-Դարալագեազի և Նախիջևանի գաւառների սահմանագլխում, բռնում է 10 դես. տարածութիւն։ Ուշադրութեան արժանի ոչինչ չունի. բնակիչները Թուրքեր են, 176 տուն. 819 ար. 771 իգ. ի միասին՝ 1590 հոգի։ Ունին 2038 դ. 1675 ք. սաժէն վարելահող, 8 դես. 1200 ք. ս. այգի և 1362 դ. արօտատեղի։

Այստեղ է գտնւում այս հասարակութեան շինական դատարանը։

Խոկ հնումը Կող. (62° 50' 10"—39° 22' 37") Տարածուած է մի առուակի ափին, և բռնում է 12 դես. 1440 ք. ս. տարածութիւն։ Շրջակայքում կան բաւականաչափ շինութիւնների և 2 կարաւանատան հետքեր, հիւսիսային կողմում մի փոքրիկ ամրոցի աւերակ։ Այս բոլորն ապացուցանում են, որ սա հնումը բաւական նշանաւոր աւան է եղել և իւր անունը տւել է այս գաւառակին, որ մինչև այժմ էլ կրում է, թէպէտև՝ ռուսական արդի բաժանմամբ՝ վերակոչուած է Կըվրաղի հասարակութիւն։

Բնակիչները բոլորն էլ Թուրքեր են. 127 տուն, 593 ար. 507 իգ. ի միասին՝ 1100 հոգի, պարապմունքը նոյնն է. ունին 3145 դ. հող, 3 դ. այգի և 11024 դ. 1750 ք. ս. արօտատեղի։

Խոկից մինչև Նախիջևան, 28 վերստ երկարութեամբ տարածւում է մի անջրդի, ամայի դաշտ, որ կոչւում է Բոյիւկ-դուզ։ Այժմ մի ընկերակցութիւն է կազմւում ոռոգելու այս դաշտը։

Սուաս. (62° 58' 10"—39° 21' 54"). Համանուն աղահանքից 3 վերստ հեռաւորութեան վրայ ընկած մի փոքրիկ գիւղ է և բռնում է 2 դես. 298 ք. ս. տարածութիւն։ Բնակիչները բոլորն էլ Թուրքեր և քրդեր են, 97 տուն, 465 ար. 365 իգ. ի միասին՝ 830 հոգի, որից 118 ար. 92 իգ. ի միասին 210 հոգի Թուրքեր են, 347 ար. 273 իգ. ի միասին՝ 620 հոգի քրդեր։ Բացի սովորական պարապմունքից, աշխատում են նաև աղահանքում։ Ունին 526 դ. 600 ք. ս. վարելահող և 2724 դ. 1527 ք. ս. արօտատեղի։

Ղաբուլլու. (6-°46′38″—39°25′52″). Մի աննշան, փոքրիկ գիւղ է, 2 դ. 1000 ք. ս. տարածութեամբ. ունի մի սառնորակ, յորդ աղբիւր։ Բնակիչները բոլորն էլ Թուրքեր են 32 տուն, 158 ար. 142 իգ. ի միասին՝ 300 հոգի։ Ունին 360 դ. վարելահող, 1022 դ. 650 ք. ս. քարքարոտ արօտատեղի։

Շահբախտի. (62°45′28″—39°25′15″).—Բռնում է 6 դ. 2360 ք. սաժէն տեղ, բաւական գեղեցիկ տեսք ունի, և շրջապատուած է այգիներով (1440 ք. սաժէն տարածութեամբ)։ Սրա մօտ գըտնըւում է համանուն պահակատունը, և մի քիչ էլ հեռու երկաթուղու կայարանը։ Գիւղի մէջ ուշադրութեան արժանի ոչինչ չկայ, բնակիչները շիա պարսիկներ են, 119 տուն, 541 ար. 459 իգ. ի միասին 1000 հոգի։ Պարապմունքը նոյնն է։ Ունին 1329 դ. 200 ք. սաժէն վարելահող, 8 դ. 2180 ք. ս. մարգագետին և 579 դ. 990 ք. ս. արօտատեղի։ Գիւղում կայ պետական երկդասեան մի դպրոց։

---